# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

7 ՀՈՒԼԻՍ 1974

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов» — теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

### ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՔԱՂԲՅՈՒՐՈՅՈՒՄ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆՈՒՄ, ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏՈՒՄ

# ՍՈՎԵՏԱ-ԱՄԵՐԻԿՅԱՆ ԲԱՐՁՐ ՄԱԿԱՐԴԱԿԻ ԵՐՐՈՐԴ ՀԱՆԴԻՊՄԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների սովետը քննության առան ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի հաղորդումը սովետա-ամերիկյան բարձր մակարդակի երրորդ հանդիպման արդյունքների մասին, լիովին հավանություն տվեցին Սովետական Միության պատվիրակության գործունեությանը և անցած բանակցությունների քաղաքական արդյունքներին, որոնք կարևոր նշանակություն ունեն ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի փոխհարաբերությունների ամրապնդման համար, խաղաղության ու միջազգային անվտանգության գործերի համար:

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Ն. Վ. Պոդգոռնու, ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահ ընկ. Ա. Ն. Կոսիգինի, ՍՍՀՄ արտաքին գործերի մինիստր ընկ. Ա. Ա. Գրոմիկոյի և ԱՄՆ-ի պրեզիդենտ Ռ. Նիքսոնի բանակցությունները, որոնք անցկացվեցին Սովետական Միությունում 1974 թվականի հունիսի 27-ից մինչև հուլիսի 3-ը ընկած ժամանակամիջոցում, նոր խոշոր ավանդ են սովետա-ամերիկյան հարաբերությունների բարելավման մեջ, նպաստում են միջազգային լարվածության հետագա թուլացմանը, միջազգային հարաբերություններում հաստատում տարբեր սոցիալական սիստեմներ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքները, ինչը համապատասխանում է ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի ժողովուրդների շահերին, ամբողջ աշխարհի խաղաղության ամրապնդման շահերին:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը գոհունակությամբ նշում են, որ կուսակցության ու սովետական պետության կողմից խաղաղության ծրագրի հետևողական կենսագործման շնորհիվ վերջին երկու տարում արմատական դրական շրջադարձ կատարվեց սովետա-ամերիկյան հարաբերություններում:

1972 թվականի մայիսին Մոսկվայում և 1973 թվականի հունիսին ԱՄՆ-ում տեղի ունեցած առաջին երկու հանդիպումների շնորհիվ ստորագրվեցին հսկայական նշանակություն ունեցող այնպիսի փաստաթղթեր, ինչպիսիք են ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի փոխհարաբերությունների հիմունքները, միջուկային պատերազմը կանխելու համաձայնագիրը, հակահրթիռային պաշտպանության սիստեմները սահմանափակելու պայմանագիրը և ստրատեգիական հարձակողական սպառազինությունների սահմանափակման բնագավառի որոշ միջոցառումների վերաբերյալ ժամանակավոր համաձայնագիրը, ինչպես նաև մյուս քաղաքական փաստաթղթերը, որոնք կանխորոշում են երկու տերությունների փոխհարաբերությունները խաղաղ գոյակցության սկզբունքների հիման վրա:

Սովետական և ամերիկյան ղեկավարների երրորդ հանդիպման ընթացքում երկու կողմերը հանգեցին այն եզրակացության, որ անհրաժեշտ է ամուր պահել և կենսագործել 1972—1973 թվականներին ստորագրված փաստաթղթերում նախանշված գլխավոր գիծը: ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև կնքված համաձայնագրերը, ամբողջությամբ վերցված, լայն հիմք են սովետա-ամերիկյան հարաբերությունների հետագա զարգացման և փոխշահավետ համագործակցության համար:

Բանակցությունների ժամանակ առաջնահերթ ուշադրությունը նվիրվեց պատերազ-
մական վտանգի հետագա նվազեցման և ստրատեգիական սպառազինությունների սահ-
մանափակման հարցերին: Հաշվի առնելով նախորդ հանդիպումներում այդ բնագավառի
վերաբերյալ կնքված հիմնարար փաստաթղթերը, պայմանավորվածություն ձեռք բերվեց
երկու երկրների հակահրթիռային պաշտպանության սիստեմների սահմանափակման,
միջուկային զենքի ստորերկրյա փորձարկումների համաձայնեցված սահմանափակման,
ստրատեգիական հարձակողական սպառազինությունները սահմանափակելու հետագա
ջանքերի, պետությունների զինանոցներից քիմիական զենքը վերացնելուն հետամուտ
միջոցների ձեռնարկման շուրջը: Այդ ամենը էական առաջընթաց է խաղաղության և
փոխադարձ վստահության ամրապնդման ուղիով, ամրապնդում ու խորացնում է միջազ-
գային լարվածության թուլացումը:

Սկզբունքային նշանակություն ունի փաստաթղթերում գրանցված ԱՄՆ-ի և ՍՍՀՄ-ի
վճռականությունը՝ համատեղ ջանքեր գործադրել վերացնելու պատերազմի և առանձ-
նապես միջուկային ու մասսայական ոչնչացման մյուս զինատեսակների կիրառման
հանգեցնող պատերազմի վտանգը, սահմանափակելու և վերջին հաշվով դադարեցնելու
սպառազինությունների, հատկապես ստրատեգիական սպառազինությունների մրցա-
վազքը, ամրապնդելու լարվածության թուլացման պրոցեսն ու այն տարածելու ամբողջ
աշխարհի վրա: Երկու կողմերի ստանձնած պարտավորությունների կատարումը կծառա-
յի միջազգային անվտանգության գործուն ապահովմանը:

Առողջապահության, էներգետիկայի, բնակարանային և շինարարության մյուս տե-
սակների բնագավառում համագործակցելու վերաբերյալ նոր համաձայնագրերը և
հատկապես տնտեսական, արդյունաբերական ու տեխնիկական համագործակցությանը
նպաստելու երկարաժամկետ համաձայնագիրը հետագա խոշոր առաջընթաց են երկկողմ
համագործակցության ընդլայնման ասպարեզում: Լիակատար իրավահավասարության
ու փոխշահավետության սկզբունքների հիման վրա երկու երկրների հարաբերություն-
ների զարգացումը, բոլոր պետությունների իրավունքներն ու շահերը հարգելու նրանց
ստանձնած պարտավորությունները միջազգային իրադրության հետագա բարելավման
և միջազգային համագործակցության ընդլայնման կարևոր գործոն են:

Եվրոպայում կայուն խաղաղություն ստեղծելու համար կարևոր նշանակություն
կունենա այդ մայրցամաքում անվտանգության ու համագործակցության խորհրդակցու-
թյան հաջող ավարտումը: Երկու կողմերը ելնում են այն բանից, որ բանակցությունների
արդյունքները կնպաստեն մոտ ժամանակներս բարձր մակարդակով խորհրդակցության
ավարտմանը, ինչը կհամապատասխաներ Եվրոպայի և ողջ աշխարհի ժողովուրդների
շահերին:

Մեծ նշանակություն ունի այն, որ երկու կողմերը հավատում են իրենց դիրքորո-
շումը ՄԱԿ-ի անվտանգության խորհրդի հայտնի բանաձևերի հիման վրա Մերձավոր
Արևելքում խաղաղ կարգավորման առնչությամբ, որի դեպքում հաշվի են առնվելու
Մերձավոր Արևելքի բոլոր ժողովուրդների, ներառյալ Պաղեստինի ժողովրդի, օրինական
շահերը և այդ շրջանի բոլոր պետությունների գոյության իրավունքը:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ
Մինիստրների սովետը գոհունակությամբ նշում են, որ սովետա-ամերիկյան նոր հան-
դիպումը խոշոր ուղենիշ դարձավ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի փոխհարաբերությունների պատ-
մության մեջ, հանգեցրեց արդիականության կարևոր խնդիրների վերաբերյալ մի ամբողջ
շարք սկզբունքային պայմանավորվածությունների ձեռքբերմանը: Սովետական ժողո-
վուրդը միահամուռ պաշտպանում է տեղի ունեցած բանակցությունների արդյունքները:
ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ
Մինիստրների սովետը հայտարարում են, որ իրենք լի են վճռականությամբ՝ հետևողա-
կան աշխատանք տանելու ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների, նրա ընդունած խա-
ղաղության ծրագրի, միջազգային գործերում եղբայրական-սոցիալիստական երկրների
համատեղ համաձայնեցված գծի կենսագործման ուղղությամբ, հակահարված տալու
իմպերիալիստական ագրեսիվ ուժերի նկրտումներին, ամրապնդելու սոցիալիստական
համագործակցությունը, ապահովելու ՍՍՀՄ-ի տնտեսական ու քաղաքական հզորու-
թյան հետագա աճը, բարձրացնելու սովետական ժողովրդի բարեկեցությունը, ըստ ամե-
նայնի նպաստելու երկրագնդի կայուն խաղաղության և ժողովուրդների սոցիալական
առաջադիմության ապահովմանը:

# ԱՄԵՆ ԻՆՉ ԺՈՂՈՎՐԴԻ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴՈՒ ԲԱՐՕՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

## ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ

## ՄՈՍԿՎԱՅԻ ԲԱՈՒՄԱՆՅԱՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳԻ ԸՆՏՐՈՂՆԵՐԻ ԺՈՂՈՎՈՒՄ, 1974 Թ. ՀՈՒՆԻՍԻ 14-ԻՆ

Հարգելի ընկերնե՛ր:

Թանկագին մոսկվացինե՛ր:

Նախընտրական կամպանիան մոտ է ավարտին: Միլիոնավոր ընտրողներ հանդիպումներ ունեցան իրենց թեկնածուների հետ, նրանց հետ խոսեցին այն մասին, ինչ ուրախացնում և մտահոգում է մարդկանց: Այդ հանդիպումները վերածվեցին կուսակցության և ժողովրդի միաձույլ միասնության, մեր հասարակության բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի, մեր մեծ երկրում բնակվող բոլոր ազգերի և ազգությունների միասնության հուժկու ցույցի: Դա ոգևորում է, ընկերներ, դա վստահություն է ներշնչում նոր հաղթանակների հասնելու կոմունիզմի կառուցման նախատեսված բնագծերի ճանապարհին: **(Ծափահարություններ):**

Թույլ տվեք ձեզ, մայրաքաղաքի Բաումանյան և Սոկոլնիկիի շրջանների բոլոր աշխատավորներին, ամբողջ սրտով շնորհակալություն հայտնել՝ ինձ ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատության թեկնածու առաջադրելու համար: **(Ծափահարություններ):**

Ահա արդեն գրեթե քառորդ դար է, ինչ ինձ վստահված է ներկայացնելու աշխատավորների շահերը երկրի պետական իշխանության բարձրագույն օրգանում: Եվ այսպիսի նախընտրական հանդիպման ժամանակ, ինչպես որ մեր այսօրվա հանդիպումն է, ես հանդես եմ գալիս յոթերորդ անգամ:

Անկեղծ ասած, անհնար է հաղթահարել այն հուզմունքը, որ զգում ես ելույթից առաջ: Դա բխում է պատասխանատվության զգացումից, վստահության, ցույց տրված պատվի համար խորին, անկեղծ երախտագիտությունից: **(Ծափահարություններ):**

Այստեղ իմ հասցեին բարի շատ խոսքեր ասվեցին: Եկեք այդ խոսքերը վերագրենք նախ և առաջ ինձ անեցրած ու դաստիարակած կոմունիստական կուսակցությանը, որի շարքերը ես ընդունվել եմ 45 տարի առաջ, այդ խոսքերը վերագրենք ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեին, որը լենինյան կուրսով երկիրը տանում է դեպի կոմունիզմ: **(Երկարատև ծափահարություններ):**

Վաղուց հաստատված լավ ավանդույթի համաձայն, նախընտրական հանդիպումները մեզանում գործնական բնույթ ունեն: Դա միշտ լուրջ խոսակցություն է ընտրողների նակազների կատարման մասին, քաղաքական այն պլատֆորմի բովանդակության մասին, որով կուսակցությունը գնում է դեպի ընտրությունները:

Անցած ընտրությունների նախօրյակին, դիմելով սովետական ժողովրդին, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն ընդգծում էր, որ կուսակցությունը կպայքարի ամրապնդելու մեր հայրենիքի հզորությունը հանուն կոմունիզմի հետագա հաղթանակների, հանուն աշխարհի խաղաղության, հանուն յուրաքանչյուր

բում է մասնավորապես ակնդի, թեթև արդյունաբերությանը և «Բ» խմբի մյուս ճյուղերին, որոնց աճի տեմպերը առայժմ մեզ չեն բավարարում:

Պլենումում ընդգծվեց, որ 1974 և 1975 թվականների առաջադրանքները միանգամայն լարված են, բայց դրանք պետք է կատարվեն: Դրա ուղին բոլոր ուժերի մոբիլիզացումն է, տնտեսության ղեկավարման բարելավումը, բարձր արտադրողական աշխատանքը, կարգապահության և կազմակերպվածության բարձրացումը: Ո՛չ մի աշխատանքային օր, ո՛չ մի աշխատանքային ժամ դատարկ չպետք է կորչի: **(Ծափահարություններ):**

Կենտրոնական կոմիտեն գոհունակությամբ նշում է, որ դեկտեմբերյան պլենումի որոշումները շատ լայն արձագանք և պաշտպանություն գտան կուսակցության ու ժողովրդի մեջ: Ամբողջ երկրում սոցիալիստական մրցության նոր ալիք բարձրացավ: Ավելի քան 5 միլիարդ ռուբլի. այսպիսին է 1974 թվականի գերպլանային պարտավորությունների գումարը: Ընդ որում, անցել է ընդամենը հինգ ամիս, իսկ մեր արդյունաբերությունը թողարկել է ավելի քան երեք միլիարդ ռուբլու արտապլանային արտադրանք: Հենց սա էլ, ընկերներ, մեր ժողովրդի հարվածային աշխատանքն է: **(Ծափահարություններ):**

Այժմ մնում է արժանավայել եզրափակել 1974 թվականը և ամբողջությամբ վերցրած հնգամյակը: Թույլ տվեք ձեզ հետ միասին, թանկագին մոսկվացիներ, ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին հաստատ վստահություն հայտնել, որ մենք կարող ենք այդ անել, և մենք այդ կանենք: **(Երկարատև ծափահարություններ):**

Ընկերնե՛ր: Նախատեսելով հասարակության զարգացման ուղիները, կուսակցությունը ելնում է ինչպես ընթացիկ կարիքներից ու պահանջմունքներից, այնպես էլ առավել հեռավոր նպատակների հաշվառումից, այն բանից, ինչպիսին մենք ուզում ենք տեսնել մեր երկիրը դարավերջին:

Յուրաքանչյուր հնգամյակ նկատելի քայլ է մեր հասարակության զարգացման մեջ: Բայց տասներորդ, կարելի է ասել, հոբելյանական հնգամյակը առանձնահատուկ տեղ կգրավի: Եվ ոչ միայն պլանավորվող մեծագործությունների թափով, որը, բնականաբար, անում է: Բանը նաև այն է, որ կուսակցության XXIV համագումարի ցուցումներին համապատասխան, նոր հընգամյա պլանը մշակվում է ժողովրդական տնտեսության 1976—1990 թվականների հեռանկարային պլանների հետ մեկտեղ և դառնալու է նրա բաղկացուցիչ մասը: **(Ծափահարություններ):**

Դա նշանակում է, որ ՍՄԿԿ հաջորդ՝ XXV համագումարը և ՍՍՀՄ նոր գումարման Գերագույն սովետը քննարկելու և ընդունելու են ոչ թե պարզապես հերթական հնգամյա պլանը, այլ, հիրավի, ծրագրային նշանակություն ունեցող փաստաթղթեր, որոնք կարևոր ուղենիշներ կդառնան կոմունիստական շինարարության ճանապարհին: **(Բուռն, երկարատև ծափահարություններ):**

Այժմ, երբ այդ պլանները մշակման պրոցեսում են, դեռ վաղ է բերել ազգային եկամտի, արտադրանքի այս կամ այն տեսակի արտադրության աճի կոնկրետ թվեր: Բայց քանի որ դրանք կազմվում են կուսակցական քաղաքականության, կուսակցական որոշումների ամուր հիմքի վրա, դրանց նպատակալացությունն ակնբախ է: Այդ մասին կարելի է ասել ամենայն որոշակիությամբ:

Կուսակցության XXIV համագումարն ընդգծեց, որ երկրի տնտեսական զարգացման երկարաժամկետ կողմնորոշումը կբնութագրվի աշխատավորների բարեկեցության հետագա էական բարձրացման կուրսով: Կուսակցության Կենտրոնական կոմիտեի անունից ձեզ, ընկերներ, և հանձինս ձեր բոլոր սովետական մարդկանց կարող եմ հավաստիացնել, որ կուսակցության այդ սկզբունքային դիրքորոշումը խստորեն կպահպանվի: **(Երկարատև ծափահարություններ):**

Հեռանկարային պլանների հիմքում կդրվի կոմունիստական շինարարության բազմաթիվ խոշոր պրոբլեմների լուծումը, որը թույլ կտա շատ առաջ



գնալ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ուղիով և ժողովրդի կյանքը բարձրացնել որակապես նոր մակարդակի:

Խոսքը վերաբերում է արտադրաուժերի համակողմանի զարգացմանը, գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը և դրանց հիման վրա ամբողջ էկոնոմիկայի արդյունավետության բարձրացմանը: Աշխատանքներ կծավալվեն նոր խոշորագույն ժողովրդատնտեսական կոմպլեքսներ ստեղծելու ուղղությամբ:

Մենք արդեն թևակոխել ենք այդ ուղին: Յուրացվում են Արևմտյան Սիբիրի նավթի ու գազի բազմահարուստ հանքավայրերը: Կառուցվում է Կամայի ավտոմոբիլային հսկան: Սկսված է Բայկալ—Ամուր մագիստրալի կառուցումը, որի հետ կապված է Անդրբայկալի և Հեռավոր Արևելքի ընդարձակ շրջանների վերափոխումը: Գալիք հնգամյակների մեծ սխրագործությունը կլինի Ռուսաստանի ոչ սևահողային գոտու էկոնոմիկայի վերելքը, որտեղ ապրում է մոտավորապես 60 միլիոն մարդ: Կարելի է վստահությամբ ասել, որ այսպիսի թափի վերափոխություններ, իսկ չէ որ ես հիշատակեցի դրանցից միայն մի քանիսը, դեռևս չի իմացել պատմությունը: Դրանք կոչված են մեծապես վերափոխելու և հարստացնելու մեր հայրենիքը: **(Ծափահարություններ):**

Ժողովրդական տնտեսության արագ աճը նոր հնարավորություններ կըստեղծի սոցիալ-տնտեսական կարևորագույն խնդիրների լուծման համար:

Առաջիկա երեք հնգամյակների ընթացքում մենք պետք է հասնենք բարձրորակ սննդամթերքների, ժողովրդական սպառման ապրանքների լիառատության, սպասարկումների ոլորտի լայն զարգացման և բնակչության ռեալ եկամուտների համապատասխան աճի:

Երկարաժամկետ պլաններում մենք կարող ենք նախատեսել մեր անծայրածիր երկրի քաղաքների ու գյուղերի մեծամասնության վերակառուցումը: Միաժամանակ կլուծվի նաև այնպիսի շատ բարդ խնդիր, ինչպիսին է յուրաքանչյուր ընտանիքի ապահովումը բարեկարգ բնակարանով: Այսպիսի խնդիր մինչև օրս չի կարողացել լուծել աշխարհի ոչ մի երկիր: Իսկ մենք հանձն ենք առնում այն և մենք այն կլուծենք: **(Երկարատև ծափահարություններ):**

Իհարկե, այս ամենը հեշտ պրոբլեմներ չեն: Առաջընթացի տեմպերը ուղղակի կախված կլինեն այն բանից, թե մենք ինչպես կաշխատենք, կախված կլինեն արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության ու տեխնիկայի հաջողություններից: Մեր բարեկեցության միակ աղբյուրը եղել և մնում են նրանց աշխատանքը, խելքն ու ձեռքերը, ովքեր պողպատ են ձուլում, նավթ արդյունահանում, մեքենաներ ստեղծում, ովքեր կառուցում են գործարաններ և էլեկտրակայաններ, ցանում և հնձում հացահատիկ: Եվ այն ամենը, ինչ մենք պլանավորում ենք, այն ամենը, ինչի վրա հույս ենք դնում՝ նայելով վաղվա օրվան, իրողություն կարող եք դարձնել միայն դուք, ընկերներ, միայն աշխատավոր մարդիկ: **(Երկարատև ծափահարություններ):**

Աշխատանքի բարձր արտադրողականություն, էկոնոմիկայի արդյունավետություն. ահա թե ինչն է ամենաանմիջական ձևով որոշում ազգային հարստության այն բաժնի չափը, որ հասարակությունը կկարողանա հատկացնել մարդկանց կյանքի բարելավմանը: Հենց դրա համար էլ կուսակցությունը հետևողություն արեց, որ հսկայական նշանակություն է ստանում տնտեսավարման ինտենսիվ մեթոդներին անցնելը, շեշտը աճի որակական գործոնների վրա դնելը: Երկարաժամկետ հեռանկարի նախապատրաստման առնչությամբ առաջին հաշվարկումները հաստատեցին, որ դա դառնում է տնտեսական հաջող զարգացման անհրաժեշտ պայմանը:

Արդեն այժմյան ժողովրդական տնտեսությունը, որի զարգացման տեմպերը զգալիորեն առաջ են անցնում աշխատանքային ռեսուրսների աճի տեմպերից, պահանջում է կենդանի աշխատանքի հնարավոր առավելագույն խնայողություն: Իսկ հետագայում այդ պահանջն է՛լ ավելի սուր կդառնա: Ե՛վ այն պատճառով, որ է՛լ ավելի մեծ մասշտաբներ կընդունի էկոնոմիկայի զարգացումը: Ե՛վ այն պատճառով, որ կաճի գիտության, լուսավորության, առողջա-

պահության, կենցաղային սպասարկման ոլորտներում զբաղված մարդկանց թիվը: Դա նշանակում է, որ ժողովրդական տնտեսության արագ աճը պետք է տեղի ունենա առանց նյութական արտադրության մեջ զբաղված աշխատողների թվի զգալի ավելացման, այսինքն՝ ի հաշիվ աշխատանքի արտադրողականության բարձրացման: Հետևաբար, մեր պլանները կատարելու համար բանվորները ու կոլտնտեսականները պետք է զինվեն առավել արտադրողական մեքենաներով, նոր ավտոմատ գծերով, հզոր տրակտորներով, կոմբայններով, գյուղատնտեսական այլ տեխնիկայով, ամենաժամանակակից տեխնոլոգիայով:

Կուսակցությունը գիտատեխնիկական առաջընթացը համարում է իր ամբողջ տնտեսական քաղաքականության առանցքը: Այդ առաջընթացը պետք է թափանցի արտադրության բոլոր ոլորտները, ընդգրկելով ինչպես գիտական համարձակ հայտնագործությունները, այնպես էլ տեխնոլոգիայի հարյուրավոր ու հազարավոր կատարելագործումները, նոր մեխանիզմները, գործիքները, այն ամենը, ինչ խնայում և հեշտացնում է մարդու աշխատանքը, այն դարձնում ավելի արտադրողական ու հետաքրքիր:

Աշխատանքի արտադրողականությունը, ասել է Վ. Ի. Լենինը, դա, վերջին հաշվով, ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար: Լենինյան այս ցուցումը առանձնահատուկ նշանակություն է ստացել արդի դարաշրջանում՝ գիտատեխնիկական հեղափոխության դարաշրջանում: Եվ մեր կուսակցությունը երբեք այդ չի մոռանում: **(Ծափահարություններ):**

Դեպի էկոնոմիկայի զարգացման ինտենսիվ մեթոդները կատարվող շրջադարձը ոչ քիչ թվով կարևոր ու բարդ խնդիրներ է առաջադրում տնտեսության կառավարման ոլորտում, պահանջում է բարելավել պլանավորումը, ավելի հմտորեն կիրառել տնտեսական լծակները, տնտեսական խիստ հաշվարկը: Կուսակցությունը աշխատել է և կաշխատի այդ բոլոր հարցերի լուծման վրա:

Մի խոսքով, առջևում հսկայական խնդիրներ ունենք էկոնոմիկայի և ժողովրդի բարեկեցության բարձրացման բնագավառում: Դրանք լուծելու համար անհրաժեշտ է տնտեսական ղեկավարման բոլոր օղակների գործունեության կատարելագործումը միլիոնավոր ու միլիոնավոր աշխատավորների լայն շարժման, նրանց ակտիվության բարձրացման, գործի նկատմամբ նրանց խելական սրտացավ վերաբերմունքի հետ զուգորդելու ամենօրյա հոգատարություն: Դրանում է էկոնոմիկայի ղեկավարման նկատմամբ կուսակցական մոտեցման էությունը: Դրա ճշտությունը հաստատված է սոցիալիստական շինարարության ամբողջ պատմությամբ: Մենք վստահ ենք, որ սա նաև մեր ապագա հաջողությունների բանալին է: **(Ծափահարություններ):**

Ընկերնե՛ր: Էկոնոմիկայի հետ մեկտեղ հեռանկարային պլանավորումը ընդգրկում է հասարակության զարգացման նաև մյուս կողմերը: Չէ որ սոցիալիզմի նպատակն է բավարարել մարդկանց նաև սոցիալական, հոգևոր, բարոյական պահանջմունքները:

Յուրաքանչյուր մարդու համար կարևոր է այն բանի գիտակցումը, որ իր իրավունքներով ինքը հավասար է հասարակության մյուս անդամներին, միշտ կարող է ակնկալել արդարացի, հարգալիր վերաբերմունք իր նկատմամբ, կարող է ակնկալել պետության հոգատարությունը, կոլեկտիվի օգնությունն ու աջակցությունը: Յուրաքանչյուր մարդ շահագրգռված է ակտիվորեն մասնակցելու իր ձեռնարկության և հիմնարկության գործերին, իր պետության գործերին: Յուրաքանչյուր մարդ ուզում է վստահ լինել իր վաղվա օրվա նկատմամբ, իր երեխաների լավ ապագայի նկատմամբ: Մեզանում պայմաններ են ստեղծված սոցիալական այդ պահանջմունքների բավարարման համար: Դա սոցիալիզմի հսկայական նվաճումն է: **(Ծափահարություններ):** Մենք պետք է պահպանենք ու բազմապատկենք այդ նվաճումը նույնպես, ինչպես որ մյուս բոլոր հասարակական հարստությունները: **(Երկարատև ծափահարություններ):**



Սոցիալական զարգացման արդյունքների ամփոփումը, այն էլ մի կարճ ժամանակամիջոցի համար, ավելի բարդ է, քան էկոնոմիկայում. սոցիալական պրոցեսների դինամիկան միշտ չէ, որ կարելի է արտահայտել թվերով: Բայց եթե խոսելու լինենք տենդենցների մասին, ապա դրանք բավական պարզ երևում են:

Դրանցից գլխավորն այն է, որ սովետական հասարակությունն ավելի ու ավելի միասնական ու համախմբված է դառնում: Մեր երկրում, պատմության մեջ առաջին անգամ, լուծվում են հասարակական հարաբերությունների կառուցվածքի խոր փոփոխությունների՝ իրենց մասշտաբներով ու նշանակությամբ չտեսնված պրոբլեմներ: Ավելի ու ավելի է խորանում սովետական հասարակությունը կազմող դասակարգերի և սոցիալական խմբերի մերձեցումը: Եվ դա, ընկերներ, շատ լավ է. մենք ավելի ու ավելի ենք առաջ շարժվում կոմունիզմի ուղիով: **(Երկարատև ծափահարություններ):**

Մեզանում ձևավորվել է մարդկանց պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդը: Իսկ դա նշանակում է, որ ավելի ու ավելի նկատելի են դառնում սովետական մարդկանց վարքագծի, բնավորության, աշխարհայացքի ընդհանուր, սոցիալական ու ազգային տարբերություններից կախում չունեցող գծերը: Դա նշանակում է, որ բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը, որը միշտ կազմել է սոցիալիստական հասարակարգի հիմքը, իր զարգացումն է գտել այդ դասակարգերի քաղաքական և գաղափարական անխախտ միասնության մեջ՝ մտավորականության հետ, որը վաղուց և հաստատորեն կանգնած է սոցիալիզմի դիրքերում: Եվ այսօր մենք իրավունք ունենք բոլոր աշխատավորների, ֆիզիկական և մտավոր աշխատանք կատարողների, բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ժողովրդական մտավորականության ամուր դաշինքի մասին խոսելու որպես մեր իրականության ռեալ փաստի մասին: Այդ դաշինքը, որտեղ առաջատար դերը պատկանում է բանվոր դասակարգին, ամո՛ւր է և անխորտակելի: **(Երկարատև ծափահարություններ):**

Հասարակության սոցիալական միատարրության ամրապնդումը սոցիալիստական դեմոկրատիայի, հասուն սոցիալիզմի քաղաքական սիստեմի հետագա զարգացման հուսալի հիմքն է:

Մեր ճշմարտացիության լիակատար համոզմունքով մենք պնդում ենք, որ հենց սոցիալիզմը և միայն սոցիալիզմն է իրականում ապահովում դեմոկրատական ազատությունների իրականացումը: **(Ծափահարություններ):** Մեր հասարակության բոլոր ոլորտները ներթափանցված են իսկական դեմոկրատիզմով, այն արդյունավետ կերպով ապահովում է ինչպես ամբողջ ժողովրդի շահերն ու իրավունքները, այնպես էլ յուրաքանչյուր քաղաքացու շահերն ու իրավունքները: Եվ որպես սոցիալիստական դեմոկրատիայի սկզբունքների գլխավոր կրող, որպես նրա հաջող առաջընթաց զարգացման երաշխավոր հանդես է գալիս մեր լենինյան կուսակցությունը: **(Երկարատև ծափահարություններ):**

Չորս տարի առաջ մենք խոսում էինք բոլոր աստիճանների սովետների ակտիվության բարձրացմանն ուղղված նոր կոնկրետ միջոցառումների անհրաժեշտության մասին: Այդ պահից ի վեր ընդունվեցին օրենքներ, որոնք մեծացրին սովետների իրավունքներն ու նյութական հնարավորությունները: Դեպուտատների ստատուսի մասին օրենքը էապես ընդլայնեց նրանց գործունեության շրջանակները: Սովետներն սկսել են ավելի ակտիվորեն աշխատել: Աճում է դեպուտատների պահանջկոտությունը, ընդլայնվում նրանց պետական մտահորիզոնը: Եվ դա շատ կարևոր է, դա այն բանի ցուցանիշն է, որ կուսակցության աշխատանքը տալիս է իր պտուղները: **(Ծափահարություններ):**

Դեմոկրատիան դատարկ հնչյուն է, եթե չի ընդգրկում այն միջավայրը, որտեղ մարդն ամեն օր աշխատում է, կիրառում իր ստեղծագործական ուժերը: Ուստի, սկզբունքային նշանակություն ունի դեմոկրատական հիմունքների ամրապնդումը անմիջականորեն արտադրության մեջ:

Այստեղ ևս մենք խիստ հետևողական ենք: Կուսակցությունը պահանջում է, որ ձեռնարկությունների աշխատանքի սկզբունքներին ու մեթոդներին վերաբերող մեր ամեն մի օրենքում, ամեն մի որոշման մեջ անպայման նախատեսվի աշխատավորների մասնակցությունը արտադրության կառավարմանը: Օրինակ, վերջերս հաստատվեց արտադրական միավորումների կանոնադրությունը: Ամբողջ փաստաթղթի միջով կարմիր թելի պես անցնում է պլանների նախապատրաստման ու կատարման, աշխատանքի և կենցաղի պայմանների բարելավման գործում, միավորման ամբողջ գործունեության կատարելագործման ասպարեզում աշխատավորների, հասարակական կազմակերպությունների և կոլեկտիվների դերի բարձրացման միտքը: Տարակույս չկա, որ կուսակցական կազմակերպությունները, արհմիությունները, կոմերիտմիությունը կկարողանան օգտագործել իրենց մեծ իրավունքները՝ ի շահ յուրաքանչյուր կոլեկտիվի և ամբողջ հասարակության:

Սովետների աշխատանքին, արտադրության կառավարմանը աշխատավորների մասնակցության ընդլայնումը, արհմիությունների, կոմերիտմիության և մյուս հասարակական կազմակերպությունների ակտիվության աճը առանձնապես հրատապ են դարձնում աշխատավորների քաղաքական կուլտուրայի բարձրացումը, կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների աշխատանքում հրապարակայնության ընդլայնումը: Այս առումով արդեն քիչ բան չի արված: Մենք այսուհետև ևս կգնանք այդ ուղիով: **(Ծափահարություններ):**

Վերջին տարիներս Գերագույն սովետի կողմից ընդունված աշխատանքային օրենսդրության հիմունքները, կրթության և առողջապահության, բնական միջավայրի պաշտպանության մասին օրենսդրությունները շարունակում են մեր սկզբունքային գիծը, այն գիծը, որ մշտապես ընդլայնվեն և հարստացվեն անհատի իրավունքները, աշխատավոր մարդու իրավունքները: Ընդհանուր առմամբ կարելի է ասել, որ մեր օրենսդրությունը վերջին տարիներս լրջորեն նորացվել է, դարձել ավելի կայուն ու դեմոկրատական:

Խոսելով սոցիալիստական օրինականության ամրապնդման մասին, մենք նկատի ունենք գործի երկու կողմ: Նախ, քաղաքացիների իրավունքների խստագույն պաշտպանությունը, կամայականության որևէ դրսևորում թույլ չտալը, այդ թվում՝ պաշտոնատար անձանց կողմից: Երկրորդ, մենք նկատի ունենք սովետական օրենքների, հասարակական կարգի կանոնների խստիվ պահպանումը բոլոր քաղաքացիների կողմից: Հանցագործությունները, հակահասարակական վարքագծի բոլոր ձևերը սոցիալական չարիք են, և դրանց դեմ պետք է պայքարել ամեն օր, պայքարել հաստատ ու վճռականորեն: Համոզված եմ, որ սովետական մարդիկ համամիտ են ու պաշտպանում են նման հարցադրումը: **(Երկարատև ծափահարություններ):**

Կուզենայի մի քանի խոսք ասել տնտեսական գործունեության իրավական կարգավորման մասին: Դժբախտաբար, երկար ժամանակ այդ հարցերին պատշաճ ուշադրություն չի նվիրվել և դրա հետևանքով այս բնագավառում կուտակվել են չլուծված շատ պրոբլեմներ: Ժողովրդական տնտեսության յուրաքանչյուր ճյուղում գործում են հազարավոր տարբեր կարգադրություններ և հրահանգներ: Փորձիր դրանցից բան հասկանալ: Մանավանդ որ այդ հրահանգներից շատերը հնացել են, բովանդակում են չարդարացված սահմանափակումներ, մանրախնդիր կանոնարկում: Դա նեղացնում է նախաձեռնությունը, հակասում այն նոր պահանջներին, որոնք այժմ ներկայացվում են էկոնոմիկային:

Կարծում եմ, որ նոր գումարման Գերագույն սովետը, կառավարությունը, մինիստրություններն ու գերատեսչությունները լրջորեն կզբաղվեն այդ գործով:

Սոցիալիստական դեմոկրատիայի զարգացումը ենթադրում է պետական ապարատի մշտական կատարելագործում: Կարևոր է ամենուրեք բարձրացնել պաշտոնատար անձանց պատասխանատվությունը, իսկ այնտեղ, որտեղ դա հարկավոր է, նաև բարելավել կազմակերպական կառուցվածքը:

Մենք այսուհետև ևս պետական մարմինների աշխատանքում վճռականորեն ու հետևողականորեն կհաստատենք լենինյան, կուսակցական ոճը: **(Երկարատև ծափահարություններ):** Այդ խնդրի մասին լուրջ խոսակցություն տեղի ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի վերջին պլենումում: Խոսվեց այն մասին, որ ձգտելով հաստատել աշխատանքի կուսակցական ոճը, մենք պետք է ուժեղացնենք պայքարը բյուրոկրատիզմի բոլոր դրսևորումների դեմ:

Բացարձակ կոպտաբարո և քաշքշուկ սիրող մարդու համար այժմ արդեն հեշտ չէ ուզածին պես ծավալվել: Բայց որքան բյուրոկրատի համար դժվար է լինում մեր հասարակության մեջ ապրելը, այնքան նա վարպետորեն է հարմարվում, նոր կերպարանք ընդունում: Այնինչ էությունը մնում է նույնը՝ գործի էությունը ձևին զոհաբերելը, պետության, հասարակության, մարդկանց շահերի մոռացումը ի սեր գերատեսչական և տեղայնական շահերի: Որոշ աշխատողներ ձգտում են խույս տալ լուծումներից, յուրաքանչյուր գործում անհրաժեշտ խելացի ռիսկից, անձնական պատասխանատվությունից: Հենց սկզբից նրանք մտածում են ոչ այնքան այն մասին, որ ավելի լավ կազմակերպեն աշխատանքը, որքան այն մասին, որ իրենց բոլոր կողմերից պարսպեն թղթերով՝ ի դեմս հնարավոր ձախողման: Մեր ապարատում, իհարկե, այդպիսի մարդիկ այնքան էլ շատ չեն: Բայց փոքր թվով ևս նրանք կարող են մեծ վնաս հասցնել:

Մեր հասարակությունը կենսականորեն շահագրգռված է, որպեսզի կառավարչական պաշտոններում՝ խոսքը վերաբերի սովետական, թե տնտեսական մարմիններին, կուլտուրայի հաստատություններին, հասարակական կազմակերպություններին, գտնվեն սոցիալիզմի գործին նվիրված, իրազեկ և ընդունակ մարդիկ, լավ կազմակերպիչներ, որոնք ունեն նորի զգացում, պարզ են ու մատչելի, կարողանում են իրենց ետևից տանել կոլեկտիվին և միաժամանակ սովորել նրանից: **(Ծափահարություններ):**

Վ. Ի. Լենինն ասել է, որ սոցիալիզմի օրոք, քաղաքակիրթ հասարակությունների պատմության մեջ առաջին անգամ բնակչության մասսան կբարձրանա ու կհասնի ամենօրյա կառավարմանը ինքնուրույնաբար մասնակցելու աստիճանին: Մեր երկրում այդ բանն իրականացված է: Գործնականում, կյանքում մեր պետությունը վերից վար կառավարվում է մասսաների անմիջական մասնակցությամբ: Եվ դա է մեր հասարակության դինամիզմի, սոցիալիզմի քաղաքական սիստեմի կայունության կարևոր աղբյուրը: **(Ծափահարություններ):**

Ընկերնե՛ր: Տարեցտարի ավելի ու ավելի բովանդակալից և բազմազան է դառնում սովետական ժողովրդի հոգևոր կյանքը, նրա կուլտուրան: Դա օրինաչափ է: Այժմ հասարակական առաջադիմության տեմպերը, դեպի կոմունիզմ մեր առաջընթացի տեմպերը ավելի ու ավելի նկատելիորեն են կախված հասարակության մտավոր պոտենցիալից, կուլտուրայի, գիտության, կրթության զարգացումից: Այս բոլոր ոլորտներում մենք շատ բանի ենք հասել, կենսագործելով կուսակցության XXIV համագումարի պատմական որոշումները:

Լուսավորության հաջողությունների շնորհիվ արդեն այսօր սովետական ժողովուրդը համարձակորեն կարող է կոչվել աշխարհի ամենակրթված ժողովուրդներից մեկը: **(Ծափահարություններ):** Այս հնգամյակի վերջում ընդհանուր միջնակարգ կրթության անցնելն ավարտելը ընդլայնում է հասարակական կյանքի բոլոր ոլորտներում նոր նվաճումների մասսայական բազան: Այդ նույն նպատակն է հետապնդում կուսակցության գիծը՝ բարձրագույն ուսումնական հաստատությունները դարձնելու գիտության և կուլտուրայի ակտիվ կենտրոններ:

Կոմունիստական շինարարության բոլոր ճակատներում սովետական գիտությունը մեծ գործեր է կատարում: Նա ավելի ու ավելի ակտիվորեն է ներխուժում արտադրության, կենցաղի մեջ, փոխում է տասնյակ միլիոնավոր մարդկանց ապրելակերպը: Այս տարի սովետական գիտնականները, իսկ նրանց հետ նաև ամբողջ երկիրը, ամբողջ ժողովուրդը, հպարտությամբ նշում են մեր գիտության գլխավոր շտաբի՝ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի 250-ամյակը, որն արդեն երկար տարիներ գլխավորում է մեր երկրի ականավոր

գիտնական Մստիսլավ Վսեվոլոդովիչ Կելդիշը: (**Ծափահարություններ**): Մենք հաստատ համոզված ենք, որ սովետական գիտնականներն այսուհետև ևս մեծ ավանդ կմուծեն մեր մեծ հայրենիքի նյութական ու հոգևոր առաջընթացի գործում: (**Ծափահարություններ**):

Գիտական որոնումը և մարդու ամենօրյա կյանքում նրա բարօրության նկատմամբ ցուցաբերվող անմիջական հոգատարությունն ամենից ավելի սերտորեն են միաձուլվում, թերևս, բժշկության, առողջապահության ասպարեզում: Ժողովուրդը բարձր է գնահատում ուսուցիչների, գիտնականների, բժշկական աշխատողների հինգմիլիոնանոց բանակի աշխատանքը, որը կանգնած է սովետական մարդկանց առողջության պահպանության դիրքերում: (**Ծափահարություններ**):

Սոցիալիստական կուլտուրան իր մեջ ներառնելով ամեն լավագույնը, առաջադիմականը այն ամենից, ինչ ստեղծել կամ ստեղծում է մարդկությունը, հարստացնում է մարդկանց ներաշխարհը, նրանց կյանքը դարձնում ավելի վառ ու հետաքրքիր: Նա օգնում է ավելի լավ հասկանալու մեր աշխատանքի, մեր պայքարի իմաստը, մեր նպատակների վեհությունը:

Խոսելով գեղարվեստական ստեղծագործության մասին, չի կարելի չնշել, որ վերջին ժամանակներս սովետական գրականության շատ ստեղծագործություններում, կինոյում և թատրոնում խոր, ճշմարտացի, հուզիչ կերպով ցույց տրվեց սովետական ժողովրդի անմահ սխրանքը Հայրենական մեծ պատերազմում: Կուսակցությունը բարձր է գնահատում այդպիսի ստեղծագործությունները: Համաշխարհային քաղաքակրթությունը փրկած ժողովրդի հերոսությունը միշտ հայրենասիրական օրինակ, արիության և ազնվության օրինակ կլինի սովետական մարդկանց նորանոր սերունդների համար: (**Ծափահարություններ**):

Սովետական հանդիսատեսները, ընթերցողները, ունկնդիրները ավելի ու ավելի խստապահանջ են դառնում: Երկիրը գրողներից և սովետական արվեստի բոլոր աշխատողներից սպասում է բարձրարվեստ, բովանդակությամբ մեծարժեք նոր ստեղծագործություններ մեր ժամանակակիցների մասին:

Կուսակցությունն իր խնդիրն է համարում ամենաբարենպաստ պայմաններն ապահովել սոցիալիստական կուլտուրայի և գիտության զարգացման համար: Մենք ուզում ենք, որ այսուհետև ևս ամրապնդվի ստեղծագործական մտավորականության կապը ժողովրդի կյանքի, բանվոր դասակարգի և գյուղի աշխատավորների հետ: Մենք ուզում ենք, որ դեմոկրատական, խստապահանջ, ընկերական մթնոլորտում բազմապատկվեն հոգևոր արժեքները, որոնք այնքան հարկավոր են կոմունիզմ կառուցող ժողովրդին: (**Ծափահարություններ**):

Վստահ եմ, որ սովետական կուլտուրայի, սովետական գիտության գործիչները միշտ կգտնվեն իրենց պատմական կոչման բարձրության վրա: (**Ծափահարություններ**):

Սրանք են, ընկերներ, կուսակցության ներքին քաղաքականության, մեր հասարակական զարգացման մի քանի հարցերը, որոնք ես հարկ համարեցի արծարծել: Կարծում եմ, մենք կարող ենք հետևություն անել՝ այն պլատֆորմը, որով կուսակցությունը գնում էր դեպի անցյալ ընտրությունները, հաջողությամբ իրագործվում է: (**Ծափահարություններ**): Դա ևս մի համոզիչ ապացույցն է այն բանի, որ լենինյան կուսակցության խոսքը գործից չի տարբերվում: (**Երկարատև ծափահարություններ**): Սովետական ժողովուրդը այդ լավ գիտե: Նա հավատում է իր կուսակցությանը և ամենօրյա գործերով պաշտպանում նրա քաղաքականությունը: Դա է մեր բոլոր հաջողությունների հիմքը, մեր լավատեսության, կոմունիզմի հաղթանակի նկատմամբ մեր անհողդողդ համոզվածության հիմքը: (**Երկարատև ծափահարություններ**):

Ընկերնե՛ր: Վերջին տարիները հագեցած են արտաքին քաղաքական ասպարեզում կուսակցության բացառիկ ինտենսիվ և լարված գործունեությամբ: Եվ դուք հասկանում եք, թե ինչի հետ էր դա կապված: Միջազգային սուր պրոբլեմների լուծման վրա ջանքերը կենտրոնացնել մեզ ստիպեցին աշխար-



հում տիրող իրադրությունը, հոգատարությունը սովետական ժողովրդի արմատական շահերի, աշխարհի խաղաղության պահպանման նկատմամբ:

Վերհիշեցեք, թե միջազգային ասպարեզում ինչի հետ մեզ վիճակվեց բախվել համեմատաբար ոչ հեռու անցյալում: Վիետնամում կատաղի կռիվներ էին մղվում: Վտանգավոր պայթյուններով հղի էր Մերձավոր Արևելքի իրադրությունը: «Սառը պատերազմը» խռովում էր ժողովուրդների գիտակցությունն ու կյանքը: Միացյալ Նահանգների, ԳՖՀ-ի և կապիտալիստական աշխարհի բազմաթիվ այլ խոշոր պետությունների հետ հարաբերությունները մնում էին լարված:

Մեր կուսակցությունը երբեք այդպիսի դրությունը անխուսափելի և առավել ևս նորմալ չէր համարում: Գնահատելով աշխարհում ուժերի ընդհանուր հարաբերակցությունը, մենք դեռ մի քանի տարի առաջ այսպիսի հետևության հանգեցինք՝ գոյություն ունի միջազգային իրավիճակում արմատական բեկման հասնելու ռեալ հնարավորություն: Խոսքն այն մասին էր, որ հարկավոր էր դուրս գալ կուտակված պրոբլեմների կոնստրուկտիվ քննարկման և լուծման լայն ասպարեզ: Այդ մտադրությունները, մեր այդ քաղաքականությունը ընդհանրացված արտահայտություն գտան ՍՄԿԿ XXIV համագումարի հռչակած խաղաղության ծրագրում:

Չկա ոչ մի սովետական մարդ, որը այդ ծրագրի մեջ չտեսներ երկրի բախտի, նրա ներկայի և ապագայի մասին իր խոհերի մարմնացումը: Չկա ոչ մի սովետական մարդ, որի համար ատելի չլիներ պատերազմը: Խաղաղության պահպանման հետ են առնչված մեր բոլոր մտահղացումները, մեր պլանները: (**Ծափահարություններ**):

Այժմ ծաղկման, հասունության շրջան է թևակոխել սովետական մարդկանց այն առաջին սերունդը, որին չվիճակվեց քայլել պատերազմի ճանապարհներով, ապրել պատերազմական ժամանակի զրկանքներն ու դժբախտությունները: Եվ եթե պարզ ասելու լինենք, ապա շատ ցանկալի է, ընկերներ, որ մեր երեխաներն ու թոռները երբեք չիմանան, թե ինչ է պատերազմը: (**Բուռն, երկարատև ծափահարություններ**): Հանուն դրա կուսակցությունն առաջ քաշեց խաղաղության ծրագիրը և պայքար ծավալեց միջազգային հարաբերությունների ամբողջ սիստեմի վճռական առողջացման համար:

Մեր ջանքերի արդյունքները հայտնի են բոլորին: Գլխավորն այն է, որ հաջողվեց լրջորեն ամրապնդել խաղաղության և ժողովուրդների անվտանգության հիմքերը, թուլացնել միջուկային պատերազմի սպառնալիքը: Սովետական մարդիկ, աշխարհի բոլոր ժողովուրդները դա գնահատում են որպես հիրավի, պատմական նշանակություն ունեցող հաջողություն: (**Ծափահարություններ**):

Համաշխարհային իրադրության մեջ կատարված բարենպաստ տեղաշարժերը նախ և առաջ իրադարձությունների ընթացքի վրա սոցիալիզմի աշխարհի, նրա հաջողությունների, նրա հզորության, նրա օրինակի ներգործության արգասիքն են: Դա սոցիալիստական երկրների համագործակցության նպատակալաց, համաձայնեցված քաղաքականության արգասիքն է: Կարելի է վստահությամբ ասել, որ սոցիալիստական պետությունների արտաքին քաղաքական ջանքերի կոորդինացումն առաջներում երբեք այնքան խոր և արդյունավետ չի եղել, ինչպես վերջին տարիներս: Սոցիալիստական պետությունները արտաքին քաղաքական ասպարեզում գործում էին մշտական կոնտակտով և լիակատար փոխըմբռնմամբ: Մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեն անդուլ ուշադրություն էր նվիրում և այսուհետև էլ կնվիրի եղբայրական պետությունների հետ համագործակցության զարգացմանը բոլոր ոլորտներում, այդ թվում նաև՝ միջազգային հարաբերությունների ասպարեզում: (**Ծափահարություններ**):

Խաղաղության և սոցիալիզմի ուժերի հաստատակամ պայքարի խոշորագույն նվաճումներից մեկը հանդիսացավ ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվ պատերազմի դադարեցումը Վիետնամում: Վիետնամի ժողովրդի հերոսական պայքարը պսակվեց սկզբունքային մեծանշանակ հաղթանակով: Այժմ կարևոր

է մինչև վերջ հասցնել քաղաքական կարգավորումը Հարավ-արևելյան Ասիայում։

Մեծապես Սովետական Միության, սոցիալիստական երկրների քաղաքականության շնորհիվ, միջազգային հարաբերություններում կլիմայի փոփոխման շնորհիվ առավել բարենպաստ պայմաններ ստեղծվեցին Մերձավոր Արևելքում իմպերիալիստական ագրեսիայի դեմ պայքարելու և պատերազմի օջախը վերացնելու համար։ Հաջողվեց հասնել Սինայի թերակղզու և Գոլանի բարձունքների շրջաններում զորքերի տարանջատման համաձայնագրերի։ Դրա հետ մեկտեղ հարկավոր է տեսնել, որ արված են սոսկ առաջին քայլերը։ Կարգավորման գլխավոր հարցերը դեռ պետք է քննարկվեն Ժնևի կոնֆերանսում։ Այդ խնդիրը չափազանց բարդ է։ Այն կարող է լուծվել միայն կոնֆերանսի մասնակից պետությունների միացյալ ջանքերով։

Սովետական Միությունը իր ավանդն է մուծում և կմուծի այդ գործում։ Մերձավորարևելյան ճգնաժամի վերջնական կարգավորման վերաբերյալ մեր դիրքորոշումը քաջ հայտնի է։ Կարգավորման բնագավառում առաջադիմությունը պայմաններ կստեղծի Մերձավոր Արևելքի բոլոր երկրների հետ մեր հարաբերությունների զարգացման համար։ Մերձավոր Արևելքի հողում պետք է, վերջապես, հաղթանակի իսկապես կայուն և արդարացի խաղաղությունը։ **(Ծափահարություններ)։**

Այսպիսով, բոլոր հիմքերը կան ասելու, որ պատերազմի առավել վտանգավոր օջախների վերացման մասին խաղաղության ծրագրի կարևորագույն կետը հաջողությամբ կատարվում է։ Քիչ հաջողություններ ձեռք չեն բերվել մեր արտաքին քաղաքականության նաև մյուս ուղղություններում։

Եթե լարվածության թուլացման միտումը այժմ դարձել է իրադրության զարգացման գերակշռող գիծը, ապա դա առանձնապես երևում է Եվրոպայում։ Այժմ Եվրոպայի մասին իրավացիորեն խոսում են որպես մի աշխարհամասի, որը կարող է դառնալ խաղաղ գոյակցության, արդյունավետ անվտանգության և իրավահավասար համագործակցության սկզբունքների վրա հիմնըված՝ միջպետական հարաբերությունների սիստեմի կարևոր օղակը։

Եվրոպայի կլիմայի փոփոխության մեջ քիչ դեր չխաղաց ռեալիստական միտումների զարգացումը Ֆրանսիայի, իսկ ապա՝ ԳՖՀ-ի քաղաքականության մեջ։ Սրանում անտարակուսելի ծառայություն է պատկանում այնպիսի քաղաքական առաջնորդների, ինչպիսիք են դը Գոլը, Պոմպիդուն, Բրանդտը և այն ուժերին, որոնց վրա նրանք հենվում էին։ Նրանք կարողացան հասկանալ, որ դեպի «սառը պատերազմ» դիրքորոշված միջազգային հարաբերությունների սիստեմը վտանգավոր փակուղի է մտել, որ դա արմատապես հակասում է իրենց երկրների ազգային շահերին։ Արևելք-արևմուտք գծով կոնստրուկտիվ կապեր հաստատելու ձգտումը բարձրացրեց նրանց ներկայացրած պետությունների հեղինակությունը եվրոպական ու համաշխարհային քաղաքականության մեջ։

Ներկայումս Ֆրանսիայում և ԳՖՀ-ում ղեկավարության գլուխ են անցել նոր լիդերներ։ Պրեզիդենտ Ժիսկար դ՚Էստենի և կանցլեր Շմիդտի առաջին իսկ ելույթներում ընդգծվեց, որ իրենք մտադիր են պահպանել և շարունակել իրենց նախորդների սկսածը։ Ֆրանսիայի և Արևմտյան Գերմանիայի այդպիսի քաղաքականությունը Սովետական Միությունում ըմբռնում և փոխադարձություն է գտնում։

Խաղաղ գոյակցության ուղեծրում այժմ ընդգրկված են տասնյակ թե մեծ և թե փոքր պետություններ, որոնք մտնում են կամ չեն մտնում ռազմա-քաղաքական խմբավորումների մեջ։ Հնարավորություններ են ստեղծվել Իտալիայի հետ մեր հարաբերությունների լուրջ ընդլայնման համար։ Մենք լավ ենք համագործակցում Ֆինլանդիայի, սկանդինավյան երկրների, Ավստրիայի և այլ պետությունների հետ։ Որոշակի տեղաշարժեր են նշմարվել նաև Մեծ Բրիտանիայի հետ մեր հարաբերություններում։

Եվրոպան կայուն խաղաղության և բեղմնավոր համագործակցության գոտու վերածելու սկսված պրոցեսը պետք է ըստ ամենայնի պաշտպանել և շա-



րունակել։ Դրա համար նախ և առաջ անհրաժեշտ է հաջողությամբ ավարտել համաեվրոպական խորհրդակցությունը։

Հելսինկիում և Ժնևում արդեն զգալի աշխատանք է կատարված։ Հաջողվել է գտնել մի շարք կարևոր և բարդ հարցերի լուծման ուղին։ Բայց, մեղքներս ինչ թաքցնենք, որոշ պետությունների պատվիրակություններ փորձում են բարդացնել իրադրությունը, անելով մերթ այս, մերթ այն առաջարկությունը, այդ թվում նաև ակնհայտ անընդունելի կամ առհասարակ գործի հետ առնչություն չունեցող առաջարկություններ։

Նրանք, ովքեր վարում են ձգձգումների ու քաշքշուկի տակտիկա, պետք է իրենց հարց տան, թե իսկապես իրենք, իսկն ասած, խորհրդակցության հաջող ավարտման ի՞նչ այլընտրանք կարող են առաջարկել։ Միգուցե վերադառնալ հնի՞ն, պետությունների հարաբերություններում այն լարվածությանը, որից Եվրոպայի ժողովուրդները հոգնեցին «սառը պատերազմի» տարիներին։ Այդ գործիչները արդյոք ըմբռնո՞ւմ են, թե ինչպիսի պատասխանատվություն կընկնի իրենց վրա գործի այդպիսի ընթացքի դեպքում։ Չէ որ դա միանգամայն կհակասեր ժողովուրդների արմատական շահերին, որոնք ուզում են հանգիստ ապրել և այդ պատճառով էլ խորհրդակցությունից սպասում են այնպիսի ծանրակշիռ որոշումներ, որոնք ամրապնդեն Եվրոպայի խաղաղությունն ու անվտանգությունը։ **(Ծափահարություններ)։**

Մենք համոզված ենք, որ ցանկության դեպքում կարելի է գտնել գործի հետ իսկապես առնչություն ունեցող հարցերի գոհացուցիչ, բոլորի համար օգտակար լուծումներ, որոնք առայժմ չեն համաձայնեցված։ Դրա համար հարկավոր է միայն մեկ բան՝ պահպանել ռեալության զգացումը, առաջնորդվել Եվրոպայի խաղաղ ապագայի մասին հոգածությամբ։ Մենք նաև համոզված ենք, որ խորհրդակցության քննարկմանը դրված պրոբլեմների կարևորությունն ու մասշտաբը պահանջում են, որ նրա եզրափակիչ փուլին մասնակցեն ամենաբարձր մակարդակի գործիչներ։

Վերջին տարիների արտաքին քաղաքական ամենակարևոր իրադարձություններից մեկը հանդիսացավ լուրջ շրջադարձը Սովետական Միության և Ամերիկայի Միացյալ Նահանգների հարաբերություններում։ Առաջնորդվելով XXIV համագումարի որոշումներով, մենք այդ հարցին մոտեցանք սկզբունքորեն, հաշվի առնելով սովետա-ամերիկյան հարաբերությունների նշանակությունը խաղաղության պահպանման և միջազգային կլիմայի բարելավման համար։

Այս գործում առաջընթացն ակնբախ է։ Սովետական Միությունը և ԱՄՆ-ը ստորագրել են հսկայական կարևորություն ունեցող փաստաթղթեր մեր փոխհարաբերությունների հիմունքների վերաբերյալ՝ խաղաղ գոյակցության սկզբունքներին համապատասխան և միջուկային պատերազմի կանխման, ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման առաջին քայլերի վերաբերյալ։ Նաև համաձայնագրեր են ստորագրվել շատ բնագավառներում փոխշահավետ համագործակցության մասին։ Այդ փաստաթղթերն ու համաձայնագրերը լավ հիմք են ստեղծել կոնտակտների ու կապերի լայն զարգացման համար ոչ միայն դիվանագիտական, այլև ուրիշ շատ գծերով՝ երկու երկրների գործարար շրջանների, գիտնականների, կուլտուրայի գործիչների, հասարակայնության ներկայացուցիչների միջև։ Սովետական Միությունում եղել են ամերիկյան կոնգրեսի բազմաթիվ ականավոր անդամներ։ Իր հերթին վերջերս մեր պառլամենտական պատվիրակությունն այցելեց ԱՄՆ։ Այս ամենը մեծ նշանակություն ունի ինչպես այսօրվա պրոբլեմների լուծման, այնպես էլ սովետա-ամերիկյան հարաբերությունների ապագայի համար։

Ինչպես գիտեք, մոտ ժամանակներս կրկին Մոսկվա է ժամանելու Ամերիկայի Միացյալ Նահանգների պրեզիդենտ Ռիչարդ Նիքսոնը։ Տեղի է ունենալու սովետական ու ամերիկյան ղեկավարների երրորդ հանդիպումը։ Այդ հանդիպմանը հասկանալի հետաքրքրությամբ են սպասում ոչ միայն մեր երկու երկրներում, այլև ամբողջ աշխարհում։ Արտասահմանյան մամուլում կարելի է հանդիպել Մոսկվայի հանդիպման հնարավոր արդյունքների հոռետեսական

գնահատականներ: Մենք այլ կարծիքի ենք: Սովետա-ամերիկյան հարաբերությունների բարելավումը կարող է և պետք է շարունակվի: Իհարկե, ոչ ոք չի պատրաստվում հապճեպորեն լուծելու դեռ չհասունացած հարցերը: Բայց տեղում դոփել էլ չի կարելի:

Պատշաճը հատուցելով արդեն կատարվածին, մենք չենք կարող աչք փակել նաև տակավին պահպանվող դժվարությունների ու պրոբլեմների նկատմամբ: Դրանք կան: Ուստի և կարևոր է առաջընթացի համար լիովին օգտագործել այն հնարավորությունները, որոնք գոյություն ունեն այսօր: Սա վերաբերում է ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի քաղաքական հարաբերություններին: Սա լիովին վերաբերում է նաև մեր տնտեսական հարաբերություններին: Բայց թերևս ամենակարևոր և բարդ պրոբլեմները մնում են սպառազինությունների մրցավազքի սահմանափակման բնագավառում: Դրանց շուրջը սուր բանավեճ է ծավալվել:

ԱՄՆ-ի և նրա դաշնակից երկրների այն շրջանները, որոնք հանդես են գալիս լարվածության թուլացման դեմ, ձգտում են ուժեղացնել սպառազինությունների մրցավազքը, այժմ փորձում են այդ մրցավազքի համար պատասխանատվությունը բարդել Սովետական Միության վրա: Սա իրականության բացահայտ խեղաթյուրում է: Միգուցե միշտ չէ, որ հարկավոր է վերհիշել անցյալը: Բայց տվյալ դեպքում դա միանգամայն տեղին է: Հանրահայտ փաստերը վկայում են, որ սպառազինությունների մրցավազքը, մասսայական բնաջնջման առավել վտանգավոր զինատեսակների ստեղծման մրցակցությունը մեզ պարտադրվել են: Մենք չէ, որ սկսել ենք ատոմային ռումբերի, ստրատեգիական հրթիռներով սուզանավերի, կասետավոր մարտագլխիկների և շատ այլ զինատեսակների ստեղծումը:

Մենք գտնում ենք, որ սպառազինությունների մրցավազքի սահմանափակման վերաբերյալ 1972 և 1973 թվականներին կնքված սովետա-ամերիկյան համաձայնագրերը լայն ճանապարհ հարթեցին դեպի բարի նպատակը և այդ ճանապարհով հարկավոր է ավելի առաջ գնալ: Մենք կողմնակից ենք, որ Միացյալ Նահանգներն ու Սովետական Միությունը փոխադարձ համաձայնությամբ առավելագույն զսպվածություն հանդես բերեն իրենց սպառազինությունների հետագա ծավալման գործում, հասնեն այնպիսի համաձայնության, որը հնարավորություն ընձեռի կանխելու ստրատեգիական զենքի նորանոր սիստեմների ստեղծումը: Մենք նաև պատրաստ ենք հենց հիմա Միացյալ Նահանգների հետ համաձայնության գալու միջուկային զենքի ստորերկրյա փորձարկումների սահմանափակման շուրջ ընդհուպ մինչև դրանց լրիվ դադարեցումը համաձայնեցված ժամկետներում:

Մի խոսքով, եթե Միացյալ Նահանգների կառավարությունը հետևելու լինի հավասար անվտանգության և միակողմանի առավելություններ ստանալու փորձերից հրաժարվելու՝ մեր համաձայնագրերում արձանագրված սկզբունքներին, ապա նա հանձին Սովետական Միության միշտ բարեխիղճ ու ակտիվ պարտնյոր կգտնի մի այնպիսի կարևոր գործում, ինչպիսին է ստրատեգիական սպառազինությունների սահմանափակումը և կրճատումը: **(Ծափահարություններ):**

Մենք ուզում ենք, որ սովետա-ամերիկյան հարաբերությունները դառնան իրոք կայուն, կախված չլինեն կոնյունկտուրային հանգամանքներից: Մենք կողմնակից ենք, որ դրանց հետագա զարգացումից օգուտ քաղեն թե մեր երկու երկրները և թե աշխարհը՝ ամբողջությամբ վերցված: **(Ծափահարություններ):**

Բարենպաստ փոփոխություններ են կատարվում Ճապոնիայի հետ Սովետական Միության հարաբերություններում: Անցյալ տարվա հոկտեմբերին պրեմիեր-մինիստր Տանակայի հետ կայացած հանդիպման ժամանակ երկու կողմերը արտահայտվեցին այն բանի օգտին, որ այդ հարաբերությունները փոխադրվեն խոր բարելավման հունը, և այն ընդհանուր կարծիքին հանգեցին, որ անհրաժեշտ է զգալիորեն ընդլայնել տնտեսական համագործակցությունը: Արդեն կնքվել են երկու երկրների համար էլ ձեռնտու խոշոր գործարքներ և



առկա են հետագայի ոչ վատ հեռանկարներ: Կարելի է հուսալ, որ սովետա-ճապոնական հարաբերությունները կզարգանան նաև քաղաքական բնագավառում: Մենք համոզված ենք, որ սովետա-ճապոնական հարաբերությունների կոնստրուկտիվ զարգացումը համապատասխանում է երկու երկրների պահանջմունքներին: Դա նաև համապատասխանում է Ասիայի մայրցամաքի խաղաղության ու անվտանգության շահերին:

Այս տեսակետից նաև մեծ նշանակություն ունի մեր երկրի բեղմնավոր համագործակցությունը Հնդկաստանի, Աֆղանստանի, Բանգլադեշի և Ասիայի մյուս երկրների հետ: Անցած տարիները նշանավորվեցին այդ երկրների հետ ունեցած հարաբերությունների ոչ քիչ նվաճումներով: Նույնը կարելի է ասել Սովետական Միության և մի շարք արաբական պետությունների, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի շատ երկրների հարաբերությունների մասին:

Բարելավվում են մեր հարաբերությունները Արգենտինայի հետ: Մենք Սովետական Միություն ենք հրավիրել պրեզիդենտ Պերոնին, և այդ հրավերն ընդունվել է: Կարծում ենք, որ այդ այցը, առաջիկա բանակցությունները, մեր երկրների քաղաքական ու տնտեսական կոնտակտների զարգացումը կծառայեն երկու ժողովուրդների շահերին:

Մի խոսքով, ընկերներ, վերջին տարիներս աշխարհում սկսել է շատ բան փոխվել: Բայց այստեղ չի կարելի կանգ առնել կես ճանապարհին: Լարվածության թուլացումը պետք է դառնա շարունակական, և դրա համար մենք կպայքարենք: **(Ծափահարություններ):**

Մենք նաև հանդես ենք գալիս այն բանի օգտին, որ քաղաքական լարվածության մեղմացումը լրացվի ռազմական լարվածության մեղմացումով: Սպառազինությունների սահմանափակման ասպարեզում, ինչպես հայտնի է, հաջողվել է կնքել մի շարք միջազգային համաձայնագրեր, և առանց դրանց այսօր դրությունը հավանաբար ավելի լուրջ կլիներ: Բայց սպառազինությունների մրցավազքը, ցավոք, չի հաջողվել կանգնեցնել:

Այս պայմաններում Կենտրոնական կոմիտեն, մեր պետության ղեկավար մարմինները շարունակում են անդուլ ուշադրություն նվիրել մեր սոցիալիստական հայրենիքի պաշտպանական հզորության ամրապնդմանը: Եվ կարող եմ ձեզ հավաստիացնել, ընկերներ, որ մեր պաշտպանությունը հուսալի է, որ նա այսուհետև ևս կլինի պատշաճ բարձրության վրա: **(Երկարատև ծափահարություններ):**

Սրա հետ միասին մենք անդուլ պայքարում ենք հանուն այն բանի, որ ռեալ տեղաշարժեր կատարվեն զինաթափման բնագավառում: Սպառազինությունների մրցավազքի կողմնակիցները բերում են այն փաստարկը, թե սպառազինությունների սահմանափակումը և մանավանդ կրճատումը կապված է ռիսկի հետ: Իսկ իրականում անչափ ավելի մեծ ռիսկ է զենքի անզուսպ կուտակման շարունակումը: Ելնելով դրանից, մենք կրկին ու կրկին բոլոր պետություններին, բոլոր կառավարություններին կոչ ենք անում դադարեցնել սպառազինությունների մրցավազքը, սկսել առաջ ընթանալ դեպի մեծ նպատակը՝ ընդհանուր և լրիվ զինաթափումը: **(Երկարատև ծափահարություններ):**

Հասկանալով իր մասշտաբներով հսկայական այս խնդրի լուծման բարդությունը, մենք պատրաստ ենք դիմելու սպառազինությունների սահմանափակման ու կրճատման նաև մասնակի միջոցառումների: Մասնավորապես դրանով է որոշվում մեր դիրքավորումը Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերի ու սպառազինությունների կրճատման շուրջ վարվող բանակցություններում: Մենք գտնում ենք, որ հնարավորություն կա մոտ ժամանակներս այդտեղ հասնելու առաջին կոնկրետ արդյունքներին, եթե, անշուշտ, բարի կամք հանդես բերվի բանակցությունների բոլոր մասնակիցների կողմից:

Միջազգային ասպարեզում դրական քաղաքական փոփոխությունների ամրապնդման և կայուն խաղաղության նյութական հիմքի ստեղծման կարևոր գործոնը տնտեսական ու գիտատեխնիկական կապերի համակողմանի զարգացումն է: Դա համապատասխանում է բոլոր պետությունների շահերին: Դա համապատասխանում է ժողովուրդների շահերին: Սակայն Արևմուտքում կան

այնպիսի շրջաններ, որոնք հույս ունեն այդպիսի կապերի դիմաց մեզանից կորզել քաղաքական ու գաղափարական զիջումներ: Դա ապարդյուն զբաղմունք է: **(Ծափահարություններ)**:

Մենք կողմնակից ենք, որ ամեն մի պետություն իրավահավասար ու իր համար ձեռնտու պայմաններով, որոնք բացառեն սուվերենության ամեն մի խախտում և միջամտություն ներքին գործերին, կարողանա մասնակցել աշխատանքի միջազգային բաժանմանը: Դա նպաստում է համաշխարհային տնտեսական կապերի ընդհանուր առաջադիմությանը, որոնց նշանակությունն անշեղորեն աճում է:

Միջազգային հարաբերություններում դրական տեղաշարժերը ամրապնդելու համար մղվող պայքարում հսկայական նշանակություն է ձեռք բերել ևս մի գործոն՝ լայն հասարակայնության ակտիվացումը: Լարվածության թուլացման քաղաքականությունը մեր ժամանակներում ձեռք է բերում հիրավի մասսայական բազա: Այսուհետև ևս մեր մշտական հոգածության առարկան կլինեն կոնտակտների հաստատումը ուրիշ երկրների հասարակայնության հետ, կապերի զարգացումը պառլամենտական, արհմիութենական և մյուս գծերով, խաղաղության ջատագովների ճակատի ըստ ամենայնի ընդլայնումը:

Ռեալիզմի հաղթանակի համար, միջազգային հարաբերություններում բանականության հաղթանակի համար մղվող պայքարը ամենևին էլ դյուրին չի լինի: Կայուն խաղաղության ճանապարհին գտնվող յուրաքանչյուր բնագիծ գրավվում է մարտերով, իմպերիալիզմի առավել հետադիմական շրջանների ու նրանց հանցակիցների հետ սուր ընդհարումներով: Ագրեսիվ ուժերի ներկայացուցիչների և ռեալիզմի կողմնակիցների միջև պայքար է ծավալվում փաստորեն բուրժուական բոլոր երկրներում: Բայց այդ պայքարը ինչպիսի սուր ձևեր էլ ընդունելու լինի, մենք մի բանում վստահ ենք. ապագան չի պատկանում «սառը պատերազմի» կողմնակիցներին, ոչ էլ նրանց, ովքեր կկամենային ժողովուրդներին հրել դեպի պատերազմի վիհը: **(Ծափահարություններ)**:

Միջազգային ասպարեզում տեղի ունեցող ընդհանուր դրական տեղաշարժերին ներհակ է գործում Չինական Ժողովրդական Հանրապետության ղեկավարությունը: Երկրի ներսում բորբոքելով միլիտարիստական շովինիստական տենդը, նա իր արտաքին քաղաքականությունը ենթարկել է Սովետական Միության ու մյուս սոցիալիստական երկրների դեմ մղվող պայքարի խնդիրներին, լարվածության թուլացումը վիժեցնելու փորձերին: Վերջին ժամանակներին, լարվածության թուլացումը վիժեցնելու փորձերին: Վերջին ժամանակներն բանն այնտեղ հասավ, որ ՉԺՀ-ի ղեկավարությունը բացահայտ բլոկ կազմեց ծայրահեղ ռեակցիայի՝ չիլիական խունտայի ներկայացուցիչների հետ, Անգլիայի, ԳՖՀ-ի, ԱՄՆ-ի ու մյուս երկրների իմպերիալիստական բուրժուազիայի աջ թևի առաջնորդների հետ: Այս գործերը ամեն տեսակ խոսքերից լավ են մերկացնում Պեկինի քաղաքականության իսկական կերպարանքը:

Ինչ վերաբերում է Չինաստանի հետ մեր հարաբերություններին, ապա մենք բնականաբար այսուհետև ևս հակահարված կտանք հակասովետական զրպարտությանը, անհողդողդ կպաշտպանենք մեր պետության շահերը, մեր անվտանգությունը: Սրա հետ միասին մենք կողմնակից ենք հարաբերությունների նորմալացմանը Չինաստանի հետ, բարեկամության վերականգնմանը չին մեծ ժողովրդի հետ՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմի հուսալի հիմքի վրա: Մի խոսքով, այս կարևոր հարցում ևս մենք հետևողականորեն կվարենք XXIV համագումարի գիծը: **(Ծափահարություններ)**:

Ընկերնե՛ր: ՍՄԿԿ, մեր Կենտրոնական կոմիտեի արտաքին քաղաքականությունը ներթափանցված է սովետական ժողովրդի բարօրության նկատմամբ խոր հոգատարությամբ: Դրա հետ միասին այդ քաղաքականությունը լիովին համապատասխանում է բոլոր հեղափոխական ուժերի շահերին, բոլոր ժողովուրդների նվիրական իղձերին: Դա դասակարգային, սոցիալիստական, իսկական ինտերնացիոնալիստական կուրս է:

Մարդկությունն այժմ ապրում է իր պատմության բուռն ժամանակաշրջանը: Ավելի ու ավելի վճռականորեն և նպատակասլաց են գործում հասարա-



կական այն ուժերը, դասակարգերն ու կուսակցությունները, որոնք պայքարում են սոցիալական առաջադիմության համար, խոշոր կապիտալի իշխանության, ռեակցիայի ուժերի դեմ:

Բարդ են այդ պայքարի ուղիները: Տարբեր ձևերով և աշխատավոր ժողովրդի համար տարբեր արդյունքներով տեղի են ունենում կառավարությունների ու վարչակարգերի փոփոխություններ: Այդպես է միշտ եղել պատմության մեջ: Մենք գիտենք Չիլիի օրինակը, որտեղ ռեակցիային ու ֆաշիզմին հաջողվեց ժամանակավորապես գերակշռության հասնել: Բայց մենք տեսնում ենք նաև Պորտուգալիայի օրինակը, որտեղ կեսդարյա ֆաշիստական տիրապետությունից հետո իշխանության գլուխ են անցնում ժողովրդի լայն խավերի շահերն արտահայտող դեմոկրատական ուժերը: Եվ ոչ թե Չիլիի իրադարձությունները, այլ Պորտուգալիայի իրադարձություններն են ընկած հասարակական զարգացման գլխավոր ուղղությունում: Դեմոկրատիայի ու առաջադիմության ուժերի վերջնական հաղթանակն անխուսափելի է: **(Ծափահարություններ)**:

Թույլ տվեք, ընկերներ, այս ամբիոնից Սովետական Միության 15 միլիոնանոց կոմունիստական կուսակցության անունից, մեր ամբողջ ժողովրդի անունից խորին հարգանք հայտնել բոլոր երկրների կոմունիստներին՝ մարդկության պայծառ ապագայի համար պայքարող անձնվեր մարտիկներին: Եվ պաշտպանության ու եղբայրության առաջին խոսքն ուղղում ենք մեր թանկագին ընկերներ Լուիս Կորվալանին և Ռոդնեյ Արիսմենդիին, որոնք հեծում են ռեակցիայի զնդաններում: Մենք ձեզ հետ ենք, բարեկամներ, մենք ձեզ հիշում ենք **(երկարատև ծափահարություններ)** և ամեն ինչ կանենք, որպեսզի դուք ազատություն ստանաք: **(Բուռն, երկարատև ծափահարություններ)**:

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն իր բարձր պատասխանատվության գիտակցությամբ է մասնակցում կոմունիստական շարժման առջև կանգնած ընդհանուր խնդիրների լուծմանը: Մեր կուսակցությունն իր սրբազան պարտքն է համարում նպաստել այն մեծ շարժման հեղինակության ու համախմբվածության աճին, որը ներկայացնում է ամենաազդեցիկ քաղաքական ուժը սոցիալիզմի ու խաղաղության համար, ազգային ու սոցիալական ազատության համար մղվող համաշխարհային պայքարում: **(Ծափահարություններ)**:

Պաշտպանել սովետական մարդկանց խաղաղ աշխատանքը, ամրապնդել ամբողջ աշխարհի խաղաղությունը՝ այսպիսին է ընտրողների գլխավոր նակազը: Կուսակցությունը մշտապես դա պահում է իր տեսադաշտում, հաստատակամորեն աշխատում է այդ մեծ ու բարդ խնդրի լուծման վրա: ՍՄԿԿ-ի նախընտրական պլատֆորմը խաղաղության պլատֆորմն է: Հենց դրա համար էլ մեր երկրի բոլոր աշխատավորները այնպես ջերմորեն պաշտպանում են այդ պլատֆորմը: **(Երկարատև ծափահարություններ)**:

Թանկագին ընկերնե՛ր: Ելույթ ունենալով մոսկվացիների առջև, կկամենայինք առանձնապես խոսել մեր և ձեր սիրելի քաղաքի՝ հերոս քաղաքի՝ Մոսկվայի մասին:

Մարդկանց հատուկ է հասարակության կյանքում ամենախոշոր փոփոխությունների մասին դատել ըստ նրա, ինչը անմիջականորեն շրջապատում է իրենց: Նրանք նախ և առաջ գնահատում են այն նորությունները, որ կարող են տեսնել իրենց քաղաքում, իրենց փողոցում, բնակարանային ճաշարանում, պոլիկլինիկայում, խանութներում, այն դպրոցում, որտեղ սովորում են իրենց երեխաները: Սա բնական է, և մայրաքաղաքի բնակիչներն այս տեսակետից բացառություն չեն: Բայց կա նաև տարբերություն: Դա այն է, որ Մոսկվան մայրաքաղաք է բոլորի համար: Նա բոլորի աչքի առաջ է: Եվ այստեղ կատարվող ուրախալի փոփոխությունները հետաքրքրում և ուրախացնում են մեր ողջ ժողովրդին: **(Ծափահարություններ)**:

Նախորդ ընտրություններից հետո անցած չորս տարիները Մ[illegible] կյանքում առանձնապես նշանակալից են եղել: Մոսկվացիները գործ[illegible]րեն և, ես կասեի, բարձր խանդավառությամբ ձեռնամուխ եղան XXIV համա-

գումարի առաջադրած խնդրի լուծումը՝ մայրաքաղաքը դարձնել օրինակելի կոմունիստական քաղաք: Հաստատվել և սկսել է կենսագործվել քաղաքի զարգացման գլխավոր հատակագիծը, որի մեջ ներդրված է այն ամենը, ինչ հարկավոր է աշխատանքի ու հանգստի պայմանները բարելավելու համար, ինչը կարող է գեղեցկացնել մարդկանց կենցաղը: Այդ հատակագիծն ըստ էության կորոշի քաղաքի կերպարանքն այնպես, ինչպիսին լինելու է երրորդ հազարամյակի շեմին:

Այժմ, երբ միլիոնավոր մարդիկ արդեն բարելավել են իրենց կենցաղային պայմանները, հնարավորություն է ստեղծվում ավելի շատ ուշադրություն նվիրելու շինարարության որակին, բնակարանների առավել հարմար հատակագծմանը, պողոտաների, թաղամասերի, հասարակական շենքերի արտաքին տեսքին: Մեր ճարտարապետները կարող են և պետք է վերջ տան միակերպ կառուցապատմանը, ճարտարապետական անարտահայտիչ լուծումներին:

Վերջապես մեզ համար պակաս կարևոր չէ, եթե կարելի է այսպես արտահայտվել՝ քաղաքի արտաքին կերպարանքը, նրա հոգին: Մոսկվացիները կոչված են լավ օրինակ ծառայելու ոչ միայն քաղաքաշինական խնդիրների լուծման գործում, այլև մարդկային հարաբերությունների ոլորտում: Կոմունիստական օրինակելի քաղաքն այն քաղաքն է, որտեղ բնակվում են կուլտուրայի, գիտակցականության բարձր մակարդակ ունեցող մարդիկ, դա օրինակելի հասարակական կարգի քաղաք է: Դա մի քաղաք է, որտեղ իշխում է բարյացակամության, փոխադարձ հարգանքի և միմյանց նկատմամբ ուշադրության մթնոլորտը: **(Ծափահարություններ):**

Մոսկվան միշտ էլ եղել և մնում է որպես մեծ աշխատավոր քաղաք: Մոսկվացիները, այդ թվում Բաումանյան և Սոկոլնիկի շրջանների աշխատավորները, ինչպես որ նախկինում, ընթանում են համաժողովրդական մրցության ավանգարդում: **(Ծափահարություններ):** Այս կապակցությամբ ես կկամենայի նշել Մոսկվայի կուսակցական կազմակերպության, կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեների, Մոսսովետի և աշխատավորների դեպուտատների շրջանային սովետների վիթխարի աշխատանքը: Նրանք ոչ միայն ապահովում են պլանների կատարումը, այլև կարողանում են նկատել ու ժամանակին պաշտպանել մայրաքաղաքի աշխատավորների բազմաթիվ հիանալի նախաձեռնությունները, որոնք այնուհետև տարածվում են ամբողջ երկրում:

Հնգամյակի երեք տարում Մոսկվայում պլանից ավելի թողարկվել է մեկ միլիարդ 155 միլիոն ռուբլու արտադրանք: Թույլ տվեք ձեզ, բոլոր մոսկվացիներիդ ի սրտե շնորհավորել «մայրաքաղաքային արտապլանային միլիարդի» առթիվ և ձեզ նոր, է՛լ ավելի մեծ հաջողություններ մաղթել ձեր անձնվեր աշխատանքում: **(Երկարատև ծափահարություններ):**

Ընկերնե՛ր: Ինչպես և ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատության մյուս թեկնածուները, ես էլ կոմունիստների և անկուսակցականների բլոկի ներկայացուցիչն եմ: Դա մեր քաղաքական կյանքի ոչ թե ժամանակավոր, այլ մշտական գործոնն է: Եթե խորամուխ լինենք, ապա դրա մեջ վերջին հաշվով մարմնավորված է բոլորիս համար սրբազան մի սկզբունք՝ ժողովրդի գործերը, հոգսերն ու ձգտումները կուսակցության գործերն են, հոգսերն ու ձգտումները: **(Երկարատև ծափահարություններ):**

Ավարտելով ելույթս, ուզում եմ մեկ անգամ ևս շնորհակալություն հայտնել ավտոտրակտորային էլեկտրասարքավորումների № 2 գործարանի, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր «Բոլշևիչկա» կարի արտադրական միավորման, Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանակիր և Հայրենական պատերազմի առաջին աստիճանի շքանշանակիր հաշվիչ-վերլուծիչ մեքենաների գործարանի, Մոսկվայի երկաթուղու մոտորա-վագոնային դեպոյի բանվորներին, ինժեներա-տեխնիկական աշխատողներին և ծառայողներին, ինչպես նաև Մոսկվայի Բաումանի անվան Լենինի շքանշանակիր և Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր բարձրագույն տեխնիկական ուսումնարանի պրոֆեսորներին, դասախոսներին, ուսանողներին, ասպիրանտներին, որոնք ինձ



կրկին առաջադրել են ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատության թեկնածու: **(Ծափահարություններ):**

Թույլ տվեք սրտագին երախտագիտություն հայտնել վստահված անձ ընկեր Անատոլի Նիկոլաևիչ Աֆանասևին, ինչպես նաև այս հանդիպման ժամանակ ելույթ ունեցած և իմ թեկնածությունը պաշտպանած Վալենտին Նիկոլաևիչ Մակեևին, Գեորգի Ալեքսանդրովիչ Նիկոլաևին, Վերա Ստեպանովնա Գրիդնևային, Նիկոլայ Նիկոլաևիչ Սելեզնյովին և Տամարա Պավլովնա Զայցևային: **(Ծափահարություններ):**

Մեր օկրուգի ընտրական տեղամասերում աշխատող ագիտատորներին և վստահված անձանց խնդրում եմ ընդունել իմ անկեղծ շնորհակալությունը առաջիկա ընտրությունների նախապատրաստմանը ակտիվորեն մասնակցելու համար: **(Ծափահարություններ):**

Իմ թեկնածության պաշտպանությունը ես դիտում եմ որպես կուսակցության քաղաքականության պաշտպանություն, որպես նրա կուրսի հավանություն: **(Երկարատև ծափահարություններ):** Ամեն ինչ անել հանուն կոմունիզմի գործի նոր հաղթանակների: Դա ինձ համար՝ որպես կոմունիստի, գլխավոր նպատակն է, բարձրագույն պարտքը, իմ ողջ կյանքի իմաստը: **(Բուռն, երկարատև ծափահարություններ):**

Խորին շնորհակալություն ձեզ, թանկագին ընկերներ, բարձր վստահության համար:

**(Բուռն, երկարատև ծափահարություններ: Բոլորը ոտքի են կանգնում: Դահլիճում երկար ժամանակ չի լռում օվացիան: Հանդիպման մասնակիցները վանկարկում են. «Փա՛ռք ՍՄԿԿ-ին», «Լենինյան Կենտրոնական կոմիտեին՝ փա՛ռք», «Սովետական ժողովրդին՝ փա՛ռք», «Ուռա՛»):**

# ՄԵՐ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՆ

Սովետական պետությունն ուժեղ է նրանով, որ այն, Վ. Ի. Լենինի արտահայտությամբ, ամենաազատ, ամենալայն ձևով ժողովրդական զանգվածներին մասնակից է դարձնում երկրի կառավարմանը: Դիմելով նորաստեղծ սովետական հանրապետության աշխատավորներին, Վլադիմիր Իլյիչը դեռ 1917 թ. նոյեմբերին գրում էր. «Ընկե՛ր-աշխատավորներ: Հիշեցեք, որ այժմ դուք ինքներդ եք կառավարում պետությունը: Ոչ ոք ձեզ չի օգնի, եթե դուք ինքներդ չմիանաք և պետության բոլոր գործերը ձեր ձեռքը չվերցնեք» (Երկեր, հ. 26, էջ 359): Մի քանի տասնամյակ է անցել պատմական այն օրերից, երբ գրվել են այս տողերը: Անճանաչելիորեն փոխվել է մեր մեծ հայրենիքը, ասպարեզ են մտել կոմունիզմ կառուցողների նոր սերունդներ, բայց անփոփոխ է մնացել սովետական դեմոկրատիայի լենինյան գլխավոր սկզբունքը. ինքնե՛րս ենք վարում երկրի բոլոր գործերը, ինքնե՛րս ենք իրականացնում ժողովրդապետությունը:

Սովետական պետության ամբողջ պատմությունը դա նաև նրա դեմոկրատիայի, դրա սկզբունքների զարգացման ու կատարելագործման պատմությունն է: Մեր դեմոկրատիան ունի ազատության ու մարդասիրության իր չափանիշները, որոնք բխում են կոմունիստական գաղափարախոսության վեհ իդեալներից:

Բոլոր ժամանակներում շահագործող դասակարգերը անխղճորեն չարաշահել ու այժմ էլ չարաշահում են դեմոկրատիա հասկացությունը՝ նրանից բխող բարեմասնությունները վերագրելով իրենց կարգերին, որտեղ միշտ իշխանությունն անբաժան պատկանել է կեղեքողներին:

Դեմոկրատիան իրականություն դարձավ միայն սոցիալիստական հասարակարգում՝ նախ Սովետական Միությունում, ապա սոցիալիստական մյուս երկրներում: Հասարակական զարգացման պրակտիկան համոզիչ ցույց է տալիս, որ գոյություն ունեցող բոլոր քաղաքական կուսակցություններից միայն կոմունիստական կուսակցություններն են անկեղծորեն շահագրգռված դեմոկրատիայի զարգացմամբ, կառավարման գործում աշխատավորական լայն զանգվածների ակտիվ մասնակցությամբ: Մեր ժամանակներում հասարակական զարգացման համար էական նշանակություն է ստանում դեմոկրատիայի նկատմամբ քաղաքական կուսակցությունների վերաբերմունքը: Եվ դա հասկանալի է. դասակարգերի ու սոցիալական խավերի շահերը քաղաքական արենայում այժմ ներկայացնում են գլխավորապես կուսակցությունները: Եվ այս կամ այն կուսակցության դասակարգային էության մասին կարելի է դատել արդեն այն բանով, թե ինչպես է նա վերաբերվում դեմոկրատիային և պետության գլուխ անցնելուց հետո իշխանության ինչպիսի մարմիններ է ստեղծում:

Խոր իմաստ կա նրանում, որ մեր երկիրը հպարտությամբ կրում է աշխատավորական իշխանության մարմինների՝ սովետների անունը: Ծնունդ առնելով դեռ ռուսական առաջին հեղափոխության բոցերում, սովետները Մեծ Հոկտեմբերից հետո, հիրավի, վիթխարի դեր խաղացին բանվոր դասակարգի շուր-



ջը բազմամիլիոն գյուղացիության համախմբման, մեկ միասնական ընտանիքում տարբեր ազգերի ու ազգությունների միավորման, երկրի սոցիալիստական վերափոխման գործում: Հանդիսանալով մեր պետության քաղաքական հիմքը, աշխատավորների դեպուտատների սովետները կազմավորում են սոցիալիստական ժողովրդապետության մարմինների կուռ համակարգը, որի գագաթը ՍՍՀՄ Գերագույն սովետն է:

Կոմունիստական կուսակցությունը մեծ ուշադրություն է նվիրում սովետների գործունեությանն ու նրանց դերի բարձրացմանը: Գյուղական ու ավանային, շրջանային ու քաղաքային սովետների գործունեության բարելավման մասին ՍՄԿԿ Կենտկոմի վերջին տարիներս ընդունած որոշումները լուրջ խթան եղան պետական իշխանության այդ առավել մասսայական օղակների հետագա ակտիվացման համար: Դեպուտատների դերի բարձրացման գործում էական նշանակություն ունեցավ սովետների դեպուտատների ստատուսի մասին օրենքը, որն ընդունվեց ՍՄԿԿ XXIV համագումարի պահանջներին համապատասխան: Օգտագործելով իրենց լայն լիազորությունները, տեղական սովետներն ավելի ու ավելի որոշիչ դեր են խաղում հասարակության սոցիալ-տնտեսական ու կուլտուրական կյանքում: Սովետների գործունեության լայն ոլորտի մասին է խոսում, օրինակ, այն փաստը, որ միայն 1973 թ. նրանց նիստերում քննարկվել է ավելի քան 704 հազար հարց՝ էկոնոմիկայի, բնության պահպանության, կրթության, առողջապահության, սոցիալիստական օրինականության և շատ այլ բնագավառների վերաբերյալ: Դեպուտատների ավելի քան կեսը՝ 1.332.434 մարդ, հանդես են եկել սեսիաներում: Տեղական սովետները տնտեսական ու քաղաքական կառավարման դպրոց են հանդիսացել մեր երկրի միլիոնավոր քաղաքացիների համար: Բավական է նշել, որ սկսած 1936 թ., երբ ընդունվեց ՍՍՀՄ նոր սահմանադրությունը, նրանց կազմում ընտրվել է ավելի քան 20 միլիոն դեպուտատ:

Վերջերս մեր երկիրն ընտրեց պետական իշխանության բարձրագույն օրգանի՝ ՍՍՀՄ Գերագույն սովետի նոր կազմ: Ահա դրա արդյունքներն ամփոփող հաղորդագրությունից բերված մի քանի թիվ: Ցուցակներում գրանցված 161.724.222 ընտրողներից քվեարկությանը մասնակցել են 161.689.612 մարդ կամ 99,98 տոկոսը: Միության սովետի դեպուտատության թեկնածուների օգտին քվեարկել է ընտրողների 99,79 տոկոսը, իսկ Ազգությունների սովետի դեպուտատության թեկնածուների օգտին՝ 99,85 տոկոսը: Պերճախոս են մեզ համար արդեն սովորական դարձած այս թվերը: Դրանք վկայում են, որ երկրի՝ ընտրության իրավունքից օգտվող գրեթե ամբողջ բնակչությունը մասնակցել է քվեարկությանը, և գրեթե բոլոր ընտրողներն իրենց ձայնը տվել են կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուների օգտին:

Անշեղորեն աճում է երկրի պետական իշխանության բարձրագույն օրգանում ընտրված բանվորների, գյուղատնտեսության աշխատողների, նյութական արտադրության այլ ոլորտների մարդկանց թիվը: Եթե վեցերորդ գումարման Գերագույն սովետի կազմում (1962 թ. ընտրություններ) բանվորներն ու գյուղացիները կազմում էին 44,8, իսկ հաջորդ ընտրություններում՝ 46 տոկոս, ապա ութերորդ և իններորդ գումարումների կազմում այդ թիվն արդեն անցնում է 50 տոկոսից:

Գերագույն սովետի ընտրությունները պետության կառավարմանը աշխատավորների լայն զանգվածներին ներգրավելու կարևորագույն ձևերից են: Ընտ-

րական կամպանիայի ընթացքում սովետական մարդիկ հանրագումարի են բերում պետական մարմինների գործունեությունը, գնահատում սովետների ու նրանց դեպուտատների աշխատանքը, հանդես են գալիս առաջարկություններով, իրենց նակազներն են տալիս դեպուտատության թեկնածուներին։

Սովետական մարդիկ մեծ հետաքրքրությամբ ու ոգևորությամբ ընդունեցին Մոսկվայի Բաումանյան ընտրական օկրուգի ընտրողների հետ հանդիպման ժամանակ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի արտասանած ճառը։ «Անցած ընտրությունների նախօրյակին,— ասաց Լ. Ի. Բրեժնևը,— դիմելով սովետական ժողովրդին, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն ընդգծում էր, որ կուսակցությունը կպայքարի ամրապնդելու մեր հայրենիքի հզորությունը հանուն կոմունիզմի հետագա հաղթանակների, հանուն աշխարհի խաղաղության, հանուն յուրաքանչյուր սովետական ընտանիքի կյանքի բարելավման, ի բարօրություն ամեն մի սովետական մարդու։

Այո՛, ընկերներ, ամեն ինչ մարդու բարօրության համար, ժողովրդի բարօրության համար։ Այս մի քանի պարզ բառերի մեջ արտահայտված են կոմունիստների կուսակցության գործունեության խորունկ իմաստն ու նպատակը»։

Իր ճառում Լ. Ի. Բրեժնևն ընդհանրացրեց անցած չորս տարվա արդյունքները, նշեց դեռ չլուծված պրոբլեմները, որոնց վրա հարկավոր է կենտրոնացնել ուշադրությունը, արծարծեց երկրի սոցիալ-քաղաքական զարգացման, ինչպես նաև ամբողջ աշխարհի խաղաղության և սոցիալական առաջընթացի համար մղվող պայքարի մի շարք սկզբունքային հարցեր։

ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունները վերածվեցին սոցիալիստական դեմոկրատիայի հաղթահանդեսի՝ մեկ անգամ ևս դրսևորելով հասուն սոցիալիզմի քաղաքական սիստեմի մեծ առավելություններն ու կենսական ուժը։ Այդ սիստեմը ռեալ կերպով ապահովում է աշխատավորների ազատությունն ու լայն իրավունքները, ծառայում հասարակության ու պետության առջև ծառացած խնդիրների լուծման գործում նրանց ներգրավմանը։ Ընդ որում, սոցիալիստական դեմոկրատիան ընդգրկում է ոչ միայն քաղաքական կյանքի ոլորտը, այլև էկոնոմիկան, արտադրության կառավարման, կուլտուրական կյանքի հարցերի այն կոմպլեքսը, որ անմիջականորեն առնչվում է աշխատավորների կարիքների ու շահերի հետ։ Հասարակական կյանքի, պետական, տնտեսական ու կուլտուրական շինարարության հրատապ հարցերը լուծելիս կուսակցությունը և պետությունը առաջնորդվում են սովետական դեմոկրատիայի հիմնարար սկզբունքներով։ «Դեմոկրատիան դատարկ հնչյուն է,— ընտրողների հետ հանդիպման ժամանակ ասաց Լ. Ի. Բրեժնևը,— եթե նա չի ընդգրկում այն միջավայրը, որտեղ մարդն ամեն օր աշխատում է, կիրառում իր ստեղծագործական ուժերը։ Ուստի, սկզբունքային նշանակություն ունի դեմոկրատական հիմունքների ամրապնդումը անմիջականորեն արտադրության մեջ»։ Եվ ապա՝ «Կուսակցությունը պահանջում է, որ ձեռնարկությունների աշխատանքի սկզբունքներին ու մեթոդներին վերաբերող մեր ամեն մի օրենքում, ամեն որոշման մեջ անպայման նախատեսվի աշխատավորների մասնակցությունն արտադրության կառավարմանը»։

Հասարակական կյանքին, արտադրության կառավարմանը աշխատավորների մասնակցության ընդլայնումն անհրաժեշտաբար պահանջում են ավելի բարձրացնել աշխատավորների քաղաքական կուլտուրան, ընդլայնել հրապարակայնությունը կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների աշ-



խատանքում։ Կուսակցությունը հետևողականորեն վարում է այդ կուրսը և այսուհետև նույնպես կընթանա այդ ուղիով։ Մեզանում արդեն պրակտիկա է դարձել ժողովրդի հետ հասարակական պրոբլեմների, երկրի տնտեսական ու քաղաքական առաջընթացի հրատապ խնդիրների քննարկումը։ Վերջին տարիներին հասարակական լայն քննարկման ներկայացվեցին մի շարք օրենքների նախագծեր, այդ թվում՝ աշխատանքի, հողի, ջրային ռեսուրսների օգտագործման, բնական միջավայրի պահպանման, ժողովրդական կրթության, առողջապահության, ամուսնության ու ընտանիքի մասին և այլն։ Ըստ էության համաժողովրդական քննարկման են դրվում նաև հնգամյա պլանների նախագծերը։ Այս ամենը կուսակցության ու պետության ղեկավար մարմիններին հնարավորություն է ընձեռում տեսնելու և քաղաքականության մեջ հաշվի առնելու հասունացած հասարակական հարցերը, աշխատավորների առանձին խմբերի ու խավերի ընդհանուր և առանձնահատուկ շահերը։

Հասուն սոցիալիզմի մեծագույն նվաճումներից մեկը սովետական հասարակությունը կազմող դասակարգերի և սոցիալական խավերի խորացող մերձեցումն է։ Հասարակության սոցիալական միատարրության ամրապնդումը, ինչպես ընտրողների հետ հանդիպման ժամանակ իր ճառում նշեց Լ. Ի. Բրեժնևը, սոցիալիստական դեմոկրատիայի, հասուն սոցիալիզմի քաղաքական սիստեմի հետագա զարգացման հուսալի հիմքն է։

Սոցիալիստական դեմոկրատիայի էական առավելություններից է և այն, որ հասարակական առաջընթացն ապահովվում է քաղաքական կայունության պայմաններում՝ հենվելով բոլոր դասակարգերի ու խավերի, բոլոր ազգերի ու ազգությունների սերտ դաշինքի վրա։ Մեր ամբողջ իրականությունը համոզիչ վկայությունն է այն բանի, որ իսկական դեմոկրատիան հնարավոր է հենց սոցիալական միասնության ու համաձայնության հասարակարգում, և ոչ այնտեղ, ուր սոցիալ-տնտեսական հակասությունները բզկտում են հասարակությանը։

Բուրժուազիայի գաղափարախոսները քիչ ջանքեր չեն գործադրում, որպեսզի ճշմարտության երանգներ տան իրենց իսկ հորինած այն առասպելին, ըստ որի բուրժուական կուսակցություններն արտահայտում են «վերդասակարգային», «համաժողովրդական» շահեր միայն։ Բայց կյանքն ինքն է հերքել այդ առասպելը։ Բուրժուական կուսակցությունների քաղաքական պրակտիկան պարզորոշ ցույց է տալիս, որ այդ կուսակցությունները միշտ հանդես են գալիս կապիտալիզմի պաշտպանության դիրքերից։

Վերջին ժամանակներս Արևմուտքում բավական լայն տարածում է ստացել, այսպես կոչված, գաղափարական «պլյուրալիզմը»։ Դրա նպատակը, ըստ էության, բուրժուական բազմակուսակցականության փառաբանումն է և այն դեմոկրատիայի չափանիշ ընդունելը։ Պատմական փորձը, սակայն, ասում է, որ կուսակցությունների թիվը բնավ դեմոկրատիայի ապացույց չէ դեռ։ Դեմոկրատիան շատ ավելի կարևոր բաղադրատարրեր ունի՝ ում ձեռքին են արտադրամիջոցներն ու ազգային հարստությունները, ում է պատկանում իշխանությունը, ում շահերն են արտահայտում այդ նույն կուսակցությունները և ընտրվողները։ Գաղտնիք չէ, որ մինչև հիմա էլ բուրժուական մի շարք երկրներում ընտրողին թույլ է տրվում ունենալու մի քանի ձայն՝ համապատասխան նրա գույքային, կրթական և այլ ցենզի։ Ահա քաղաքացիների «հավասարության» բուրժուական տարբերակը...

Հայտնի է, որ կապիտալիստական շատ երկրներում աշխատավորները տևական ու համառ պայքարով են նվաճել ընտրելու իրավունքը, սակայն բուրժուազիան, իր շահերից ելնելով, մշտապես սահմանափակում է այն։ Ամերիկյան մոնոպոլիաների խոսափող «Ուոլստրիթ ջորնել» լրագիրը բացահայտորեն գրում է. «Քվեարկելու իրավունքը դա արտոնություն է, որը պետք է վաստակել։ Հասարակությունը պետք է որոշակի սահմանափակի քվեարկելու իրավունքը, որպեսզի իրեն պատնեշի ամբոխից»։

Բուրժուական օրենքները հորինել են բազմաթիվ ցենզեր՝ գույքի, նստակեցության, կրթության, ռասսայական, տարիքային և այլն, որպեսզի սահմանափակեն աշխատավորների ընտրական իրավունքները։ 1972 թ. ԱՄՆ-ում ընտրությունների համար գրանցվել էր 94,5 մլն քաղաքացի, մինչդեռ ձևականորեն այդ իրավունքն ունեին 139,6 մլն քաղաքացի։ 45 մլն ամերիկացիներ այս կամ այն պատճառով (հիմնականում՝ նստակեցության ցենզի) չկարողացան մասնակցել ընտրություններին։ Մի շարք երկրներում քվեարկելու իրավունքից չեն օգտվում զինվորները և կանայք։ Կապիտալի երկրներում ընտրությունների ժամանակ գլխավոր գործոնը դառնում է փողը։ Ճապոնական «Ասախի իվնինգ նյուս» թերթը նույնիսկ նշում է պառլամենտի «մուտքի բալլը»՝ 200 մլն իեն։ Բուրժուազիան միջոցների միջև խտրություն չի դնում, որպեսզի խոչընդոտի աշխատավորների մուտքը ընտրական օրգաններ։ ԱՄՆ-ում, օրինակ, բնակչության մեծ մասը բանվորներ են, մինչդեռ կոնգրեսի անդամների 95 տոկոսն արդյունաբերողներ են ու ազատ պրոֆեսիաների մարդիկ։ ԳՖՀ-ում բանվորները բունդեստագում կազմում են ընդամենը 7,1 տոկոս։

Ինչպիսի՜ հակադրություն այն ամենին, ինչ բնորոշ է սովետական ընտրական սիստեմին ու սոցիալիստական դեմոկրատիային։

Տարբեր փուլերում սովետական դեմոկրատիայի զարգացումը միշտ սերտորեն շաղկապվել է տվյալ շրջանում երկրի համար առավել կարևոր սոցիալ-քաղաքական խնդիրների հետ։ Նրա զարգացման այժմյան փուլը որոշվում է ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած արմատական խնդիրներով, մասնավորապես նրանով, որ համագումարը շեշտեց գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները սոցիալիզմի առավելությունների հետ միացնելու անհրաժեշտությունը։ Այդ խնդրի լուծումը էական նշանակություն ունի մեր հասարակության հետագա առաջընթացի, նրա տնտեսական և սոցիալ-քաղաքական զարգացման հեռանկարների համար։ Տնտեսական կյանքի կազմակերպման համապետական բնույթը, արտադրության չտեսնված մասշտաբները, նրա արդյունավետության բարձրացման անհրաժեշտությունը հրամայաբար պահանջում են, որ կառավարմանը, տնտեսական խնդիրների լուծմանը ակտիվորեն մասնակցի երկրի ամբողջ աշխատավորությունը։

Սոցիալիստական կարգն ապահովեց մեր հասարակության նյութական ու հոգևոր ուժերի աննախընթաց վերելքը։ Կես դար առաջ մեր երկրին բաժին էր ընկնում համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մոտ մեկ տոկոսը։ Այժմ ՍՍՀՄ-ը տալիս է այդ արտադրանքի մեկ հինգերորդ մասը։ Սովետական իշխանության տարիներին, հիրավի, պատմական թռիչք կատարվեց անգրագիտությունից ու աղքատությունից դեպի առաջավոր կուլտուրայի ու կրթության գագաթները, դեպի նյութական ապահովվածության բարձր մակարդակն ու համակողմանի զարգացած ժամանակակից կենցաղը։ Մեր ժողովուրդը ստեղծեց իր նոր՝ սոցիալիստական հարաբերությունների աշխարհը։



Սովետական ժողովուրդը հրաշալի հասկանում է, որ այդ նվաճումներին նա հասել է կոմունիստական կուսակցության ճիշտ քաղաքականության շնորհիվ։ Մեր կուսակցության կենսահաստատ քաղաքականությունը ելնում է հասարակության զարգացման օրենքների պահանջներից և մեծապես նպաստում նրա հետագա առաջընթացին։ Կոմունիստական կուսակցությունը քաղաքական ղեկավարությունն ապահովելու հետ միասին, ուշի-ուշով ուսումնասիրում ու հաշվի է առնում հասարակության բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի շահերը։ Հենց դրանով է որոշվում նրա քաղաքականության ժողովրդական բնույթը, ժողովրդի ու քաղաքականության ամուր փոխադարձ կապը, որը բնորոշ է միայն սոցիալիստական հասարակարգին։ ՍՄԿԿ քաղաքականությունը ներդաշնակորեն զուգակցում է ինչպես ՍՍՀՄ-ի ընդհանուր, այնպես և նրա միութենական հանրապետությունների շահերը։

Սոցիալիստական պետության դեմոկրատական էությունը թերևս առավել ցայտուն արտացոլվում է տնտեսական գործունեության, կուլտուր-դաստիարակչական ոլորտի նրա ֆունկցիաներում. մեզ մոտ այժմ ազգային եկամտի երեք քառորդը հատկացվում է ժողովրդի պահանջմունքների բավարարմանը։ Կառուցվող բնակարանների թվով Սովետական Միությունն աշխարհում իրեն հավասար երկիր չունի։

Ընտրողների հետ հանդիպման ժամանակ Լ. Ի. Բրեժնևն ասաց. «...մեր ռեսուրսներն անչափ մեծացել են, և դա հնարավորություն է տալիս անելու այն, ինչին մենք միշտ ձգտել ենք՝ սովետական մարդկանց բարեկեցության բարձրացումը դնելու կուսակցության գործնական քաղաքականության կենտրոնում»։ Սովետական ժողովուրդը վստահ է, որ այս բարձր իդեալով տոգորված կլինեն երկրի ժողովրդական տնտեսության հեռանկարային զարգացման 15-ամյա պլանը և նրա բաղկացուցիչ մասը կազմող տասներորդ հնգամյա պլանը, որոնց մշակմանն այժմ ձեռնամուխ է եղել կուսակցությունը։

Հանրահայտ են այն վիթխարի ջանքերը, որ կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը գործադրում են միջազգային հարաբերություններում լարվածության թուլացման, խաղաղ գոյակցության սկզբունքների հաստատման, ժողովուրդների բարեկամության ու համագործակցության ապահովման նպատակով։ ՍՍՀՄ արտաքին քաղաքականությունը դա նրա խորապես դեմոկրատական, իրոք համաժողովրդական ու ինտերնացիոնալիստական ներքին քաղաքականության շարունակությունն է և արժանանում է ամբողջ աշխարհի առաջադեմ ուժերի ջերմ համակրանքին ու պաշտպանությանը։

Հիմա նույնիսկ մեր թշնամիները չեն կարող ուրանալ այդ քաղաքականության ակնառու հաջողությունները։

Արտաքին քաղաքական մթնոլորտը մեր ժողովրդի խաղաղ, ստեղծագործ աշխատանքի համար երբեք այնքան նպաստավոր չի եղել, ինչպես այժմ և դրանում է արտաքին քաղաքականության ասպարեզում մեր կուսակցության ու կառավարության ամենախոշոր նվաճումը։

Սովետական ժողովուրդը անսասան հավատով է նայում իր ապագային։ Պատմականորեն՝ արդարացված է մեր այդ լավատեսությունը։ Դա նոր հասարակարգ կառուցող ժողովրդի լավատեսությունն է։ Մենք լի ենք կոմունիստների մեծ կուսակցության կանխագծումներն իրագործելու վճռականությամբ։ Մեր ուժը մեր իդեալների մեջ է։

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ՄԱՐՔՍԻԶՄԻ ՆՇԱՆԱՎՈՐ ԵՐԿԸ

Հ. Ռ. ՍԻՄՈՆՅԱՆ

Յոթանասուն տարի առաջ լույս տեսավ հեղափոխական մարքսիզմի առավել նշանավոր երկերից մեկը՝ Վլադիմիր Իլյիչ Լենինի **Մի քայլ առաջ, երկու քայլ ետ** գիրքը, որն իրենով նշանավորեց բանվոր դասակարգի կուսակցության մասին մարքս-լենինյան ուսմունքի զարգացման մի կարևոր էտապ:

Ինչո՞վ էր պայմանավորված Լենինի աշխատության հրապարակ գալը:

1903 թվականին տեղի ունեցավ ՌՍԴԲԿ II համագումարը: Այդ պատմական համագումարում ստեղծվեց բոլշևիկյան կուսակցությունը, որը պայքար ծավալեց Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական շարժման մեջ գաղափարական միասնություն և ամուր կարգապահություն հաստատելու համար: Այդ ամենի շնորհիվ սոցիալ-դեմոկրատիան «մի քայլ առաջ» կատարեց:

Սակայն, ՌՍԴԲԿ II համագումարից շատ չանցած, կուսակցությունն ընկավ քաղաքական խոր ճգնաժամի մեջ: Անտեսելով համագումարի որոշումները, մենշևիկները խախտեցին կուսակցության կանոնադրությունը, զավթեցին կուսակցության կենտրոնական օրգանները, բռնեցին բանվոր դասակարգի քաղաքական կազմակերպությունը կազմալուծելու, նրա գործունեությունը խափանելու ուղին: Օգտվելով այն բանից, որ Պլեխանովն անցել է իրենց կողմը, մենշևիկները զավթեցին նաև կուսակցության կենտրոնական տպագիր օրգանը՝ «Իսկրա» թերթը և նրա էջերում սկսեցին քարոզել ֆրակցիաների ու խմբավորումների ազատություն: Նրանք գործադրում էին բոլոր ջանքերը՝ բանվորական շարժումը ետ քաշելու դեպի խմբակայնություն, տնայնագործություն, կազմակերպական խառնաշփոթություն ու մասնատվածություն, ձգտում էին ՌՍԴԲԿ-ն վերածել օպորտունիստական կուսակցության, ինչպիսիք էին արևմտաեվրոպական սոցիալ-դեմոկրատական կուսակցությունները:

Բնորոշելով համագումարից հետո եկած շրջանը, Վ. Ի. Լենինը **Մի քայլ առաջ, երկու քայլ ետ** գրքում գրում էր. «Կատաղի մրրիկը բարձրացրեց ամբողջ տիղմը մեր կուսակցական հեղեղատի հատակից, և այդ տիղմը ունանշ արավ: Հին կարծրացած խմբակայնությունը հաղթեց դեռևս մատաղ կուսակցականությանը: Կուսակցության գլխովին ջախջախված օպորտունիստական թևը— ժամանակավորապես, իհարկե,— հաղթեց հեղափոխական թևին...» (Երկեր, հ. 7, էջ 533): Լենինը նշում էր, որ «...փոքրամասնության ընթացքը մի բացարձակ **անհնազանդություն** էր համագումարի որոշումներին, դրական գործնական աշխատանքի **կազմալուծում**» (նույն տեղը, էջ 457):

Լենինը խնդիր դրեց հակահարված տալ մենշևիկների ոտնձգություններին, մերկացնել նրանց կազմալուծիչ օպորտունիստական գործունեությունը: 1904 թ. փետրվար-մայիս ամիսներին նա լարված աշխատեց գրքի վրա: Մինչ այդ և գիրքը գրելուն զուգընթաց նա հանգամանորեն ուսումնասիրեց ՌՍԴԲԿ



II համագումարի նիստերի արձանագրությունները, ընդունված բանաձևերը, պատվիրակների ելույթները, խմբավորումների պլատֆորմները: Մայիսին գիրքը լույս տեսավ արտասահմանում՝ **Մի քայլ առաջ, երկու քայլ ետ** սուր ու սարկաստիկ վերնագրով (այն կրում էր նաև **Ճգնաժամ մեր կուսակցության մեջ** ենթավերնագիրը): Տպաքանակը առաքվեց Ռուսաստան և անմիջապես տարածվեց հեղափոխական մարքսիստների և առաջավոր բանվորների շրջանում:

**Մի քայլ առաջ, երկու քայլ ետ** աշխատության մեջ Լենինը առաջին անգամ ցույց տվեց նոր տիպի կուսակցության վիթխարի դերը բանվոր դասակարգի հեղափոխական շարժման մեջ, տվեց կազմակերպված օպորտունիզմի բազմակողմանի, հանգամանալի ու ջախջախիչ քննադատությունը, մշակեց Ռուսաստանի և միջազգային բանվորական շարժման ստրատեգիայի և տակտիկայի հիմքերը: Նրանում Լենինը հանրագումարի բերեց Ռուսաստանում նախընթաց տիպի կուսակցության համար հեղափոխական մարքսիստների նախընթաց ողջ պայքարը: Միաժամանակ իր բովանդակությամբ գիրքն անխզելիորեն կապված էր մեծ առաջնորդի մյուս աշխատությունների հետ: Այստեղ մասնավորապես հետագա զարգացում ստացան **Ի՞նչ անել** գրքում և ՌՍԴԲԿ II համագումարում ունեցած ելույթներում արտահայտած շատ գաղափարներ: Նոր տիպի կուսակցության մասին ուսմունքը լենինյան հանճարի անմահ խիզախումն էր:

Սահմանելով **Մի քայլ առաջ, երկու քայլ ետ** գրքի գլխավոր հարցերը, Վ. Ի. Լենինը հենց աշխատության «Առաջաբան»-ում ընթերցողի ուշադրությունը հրավիրում է «...երկու իրոք կենտրոնական, հիմնական կետի վրա, որոնք հսկայական հետաքրքրություն են ներկայացնում, որոնք ունեն անտարակուսելի պատմական նշանակություն և մեր կուսակցության մեջ օրակարգի ամենանկենսական քաղաքական խնդիրներն են» (նույն տեղը, էջ 251):

Որո՞նք են այդ երկու հիմնական հարցերը: «Առաջին այդպիսի հարցը,— գրում է Վ. Ի. Լենինը,— մեր կուսակցության՝ «մեծամասնության» ու «փոքրամասնության» բաժանվելու քաղաքական նշանակության հարցն է, բաժանում, որ տեղի ունեցավ կուսակցության երկրորդ համագումարում և սաստիկ ետ մղեց ռուս սոցիալ-դեմոկրատների առաջվա բոլոր բաժանումները:

Երկրորդ հարցը— կազմակերպման հարցերում նոր «Իսկրա»-ի բռնած դիրքի սկզբունքային նշանակությունն է, որչափով որ այդ դիրքն իրոք սկզբունքային է» (նույն տեղը, էջ 251—252):

Հենց այս երկու հարցերն են կանխորոշել Վ. Ի. Լենինի աշխատության և՛ բովանդակությունը, և՛ կառուցվածքը:

### ՊԱՅՔԱՐ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՇԱՐՔԵՐԻ ՄԻԱՍՆՈՒԹՅԱՆ, ԱՄՈՒՐ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Իր աշխատության մեջ Լենինն անդրադառնում է ՌՍԴԲԿ II համագումարի ընթացքին, տալիս այն հիմնական պատճառները, որոնց ուժով կուսակցությունը բաժանվեց երկու թևի՝ բոլշևիկների և մենշևիկների:

Լենինը ցույց է տալիս, որ ՌՍԴԲԿ մեջ հեղափոխական սոցիալ-դեմոկրատիայի և օպորտունիստական թևի տարանջատումը միմյանցից պատահական երևույթ չէ, այն թելադրված էր Ռուսաստանի բանվորական շարժման օբյեկտիվ ընթացքով:

Ինչպես II համագումարի նախօրյակին, այնպես էլ դրա ընթացքում և հատկապես համագումարից հետո ՌՍԴԲԿ օպորտունիստական թևը՝ հանձինս մենշևիկների, երեսպաշտորեն խոսում էր կուսակցության միասնության մասին, բայց ամեն ինչ անում էր քանդելու և քայքայելու կուսակցությունը:

Մերկացնելով մենշևիկների այդ գործունեությունը, Վ. Ի. Լենինը ցույց էր տալիս, որ նրանք պատրաստ են կուսակցության միասնությունը զոհաբերելու իրենց նեղ, եսասիրական շահերին: Նա նշում էր, թե իսկական հեղափոխական մարքսիստը նա է, որն ամեն բան անում է, որպեսզի կուսակցության մե-

ծամասնության կամքը դառնա կուսակցության բոլոր անդամների գործողության գիծ, այլ ոչ թե ինքը հանդես գա այդ կամքը խորտակողի դերում:

Ինչպես հայտնի է, II համագումարի ոչ բոլոր որոշումներն էին Լենինի սրտով: Նա իրավացիորեն գտնում էր, որ համագումարը մեծ սխալ է կատարել՝ ընդունելով կուսակցության կանոնադրության առաջին պարագրաֆի մարտովյան ձևակերպումը: Սակայն Լենինը համագումարից հետո ենթարկվեց այդ որոշմանը՝ հանուն կուսակցության միասնության:

Լենինը զայրույթով դատապարտում էր մենշևիկների պարագլուխներից Մարտովին, որը սպառնում էր՝ եթե բոլշևիկները չընդունեն իրենց գիծը, ապա իրենք կստեղծեն մի ուրիշ սոցիալ-դեմոկրատական կուսակցություն: Լենինը նշում էր, որ պառակտումը բանվոր դասակարգի կուսակցության զարգացման օրինաչափությունը չէ, որ, ընդհակառակը, այդ զարգացման օրինաչափությունը ծրագրային, տակտիկական և կազմակերպական հարցերում լիակատար միասնության հասնելու տենդենցն է:

Լենինը հատկապես անողոքաբար մերկացրեց մենշևիկների պայքարի անընդունելի ձևերը, եղանակները, մեթոդը: Նա գրում էր. «Փոքրամասնության պայքարի եղանակները երևան եկան բոլորի առաջ լիակատար ակնառությամբ: ...Փոքրամասնությունը պարտություն կրեց համագումարում և «մշակեց» այժմ պայքարի **երկու** եղանակ...

**Առաջին եղանակը**— կուսակցական ամբողջ աշխատանքի կազմալուծում, գործի փչացում, ամեն ինչի և ամեն բանի արգելակ լինելու ձգտում «առանց պատճառները բացատրելու»:

**Երկրորդ եղանակը**— «տեսարաններ» սարքելը և այլն և այլն» (նույն տեղը, էջ 460—461):

Իրենց քայքայիչ գործունեությունը հիմնավորելու համար մենշևիկները նույնիսկ փորձում էին օգտագործել մարքսիստական փիլիսոփայությունը, «վկայակոչելով» դիալեկտիկայի օրենքները: Մերկացնելով նրանց, Լենինը գրքի **Մի քանի խոսք դիալեկտիկայի մասին: Երկու հեղաշրջում** վերնագրով բաժնում գրում էր. «...հեգելյան մեծ դիալեկտիկան, որ փոխ է առել մարքսիզմը, ոտքերի վրա կանգնեցնելով այն, երբեք չպետք է շփոթել քաղաքական գործիչների զիգզագների արդարացման վուլգար եղանակի հետ, այն գործիչների, որոնք կուսակցության հեղափոխական թևից ցատկում են օպորտունիստական թևը» (նույն տեղը, էջ 531):

Իսկ ի՞նչ ճանապարհով, ինչպիսի՞ եղանակներով հաղթահարել կուսակցության պառակտումը այն պայմաններում, երբ մենշևիկները հրաժարվում են կատարել ՌՍԴԲԿ II համագումարի որոշումները:

Լենինը նշում է, որ սոսկ միասնության համար հեղափոխական մարքսիստները երբեք չեն դիմի գաղափարական զիջումների, այն էլ ՌՍԴԲԿ II համագումարից հետո, երբ իրենց քայքայիչ գործողություններով մենշևիկները կուսակցությունը հասցրել են ճգնաժամի, նրան ետ են տարել արդեն նվաճած դիրքերից: Հեղափոխական մարքսիստների խնդիրն է՝ անողոքաբար մերկացնել հաշտվողականների հակապրոլետարական գործելակերպը, նրանց դեմ շարունակել անզիջում պայքարը գաղափարական ու կազմակերպական հարցերի շուրջ, ժամանակին հակահարված տալ կուսակցության կազմալուծիչներին, ամեն ինչ անել կուսակցության մեջ կուռ, երկաթյա կարգապահություն ստեղծելու համար:

### ՀԱՆՈՒՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՄԱՆ ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԻ

Ինչպես ասվեց, Վ. Ի. Լենինի **Մի քայլ առաջ, երկու քայլ ետ** գրքի առանցքային հարցերից երկրորդը կուսակցության կազմակերպման սկզբունքների հանդեպ մենշևիկյան «Իսկրա»-ի բռնած օպորտունիստական դիրքորոշման քննադատությունն է:

Իր աշխատության մեջ Լենինը բազմակողմանի քննարկում է ներկուսակցական կյանքի և կուսակցական շինարարության բոլոր հարցերը:



«Տվեք մեզ հեղափոխականների կազմակերպություն, և մենք շուռ կտանք Ռուսաստանը»,— գրել էր Լենինը դեռևս դարասկզբին: Նա համոզիչ կերպով ցույց էր տալիս, որ բանվոր դասակարգին կարող է կազմակերպել ու պայքարի տանել միայն նոր տիպի մարքսիստական քաղաքական կազմակերպությունը, որը զինված է առաջավոր տեսությամբ և իր բարձր կարգապահությամբ ու միասնությամբ մի կուռ ամբողջություն է կազմում:

Զարգացնելով իր այդ մտքերը, Լենինը **Մի քայլ առաջ, երկու քայլ ետ** գրքում գրում էր. «Պրոլետարիատն այլ զենք չունի իշխանության համար մղվող պայքարում, բացի կազմակերպությունից»: Հենց այդ կազմակերպության շնորհիվ «...պրոլետարիատը կարող է դառնալ և անխուսափելիորեն կդառնա անհաղթելի ուժ...» (նույն տեղը, էջ 535):

Լենինը վճռականապես մերժում էր պրոլետարիատի կուսակցությունը դիսկուսիոն ակումբի, ֆրակցիաների ու խմբավորումների ինչ-որ կոնգլոմերատի վերածելու բոլոր փորձերը: Որպեսզի կարողանա իր ետևից տանել պրոլետարական մասսաներին, կուսակցությունը ինքը պետք է համախմբված, զոդված լինի կամքի ու գործողությունների միասնությամբ: Կուսակցության կազմակերպական սկզբունքները որոշվում են դասակարգային պայքարի օբյեկտիվ պայմաններով, պրոլետարիատի մերձավոր և վերջնական նպատակներով: Լենինը հաշվի էր առնում նաև այն հանգամանքը, որ Արևմուտքի սոցիալ-դեմոկրատներն աշխատում էին լեգալ պայմաններում, իսկ Ռուսաստանում մարքսիստական կուսակցությունը գործում էր ընդհատակում, ենթարկվում դաժան ռեպրեսիաների ու հալածանքների:

Ինչպես ՌՍԴԲԿ II համագումարի ընթացքում, այնպես էլ նրանից հետո մենշևիկներն առաջարկում էին կուսակցությունն այնպես կառուցել, որպեսզի նրա մեջ մտնելու հնարավորություն ունենան **բոլոր** բանվորները: Նրանք այդ դեմագոգիկ քայլին էին դիմում պրոլետարիատի հետամնաց տարրերին ու մանրբուրժուական շերտերին հաճոյանալու, նրանց համակրանքը շահելու նպատակով: Միաժամանակ իրենց հայտարարություններով մենշևիկները փորձում էին վարկաբեկել Լենինին ու բոլշևիկներին, նրանց ներկայացնել իբրև մասսաներից կտրված «բլանկիստների», իբրև «դավադիրների մի խումբ»:

Մերկացնելով մենշևիկներին, Լենինը ցույց էր տալիս, որ բանվոր դասակարգի կուսակցությունը պետք է ունենա պարզ ու որոշակի ուրվագծված եզրեր: Կուսակցությունը պրոլետարիատի ավանգարդն է, ուստի նա իր մեջ պետք է միավորի այդ դասակարգի ամենաառաջավոր, գիտակից, անձնազոհ մարդկանց, որոնք անսահմանորեն նվիրված են հեղափոխության գործին: Կուսակցությունը բանվոր դասակարգի մի մասն է միայն, **նրա առաջավոր ջոկատը,** նրա ղեկավար շտաբը: Այդ առաջավոր ջոկատի շուրջն են համախմբվում ողջ բանվոր դասակարգը, բոլոր աշխատավորները:

Լենինը ցույց էր տալիս, որ մանիլովշչինա և «պոչականություն» կլիներ կարծել, թե կապիտալիզմի պայմաններում գրեթե ողջ բանվոր դասակարգը ի վիճակի կլինի բարձրանալու իր առաջավոր ջոկատի գիտակցականության ու ակտիվության մակարդակին: Կուսակցության կազմի չպատճառաբանված, չարդարացված ընդլայնումը այդ նույն կուսակցությանը դատապարտում է պրոլետարիատի ամենահետամնաց շերտերի հետ համակերպմանը: Իսկ դա այն ուղին է, որով կուսակցությունը գնում է դեպի օպորտունիզմ:

Հանդես գալով կուսակցությունը մասսաների մեջ ձուլելու դեմ, Լենինը միաժամանակ անհաշտ վերաբերմունք էր դրսևորում աղանդավորների նկատմամբ, որոնք ձգտում էին կուսակցությունը պարփակել իր կեղևի մեջ, այն մեկուսացնել աշխատավորներից: «Որպեսզի սոցիալ-դեմոկրատական **կուսակցություն** լինենք,— գրում էր նա,— պետք է ձեռք բերենք հենց **դասակարգի օժանդակությունը**» (նույն տեղը, էջ 330):

**Մի քայլ առաջ, երկու քայլ ետ** աշխատության մեջ Վ. Ի. Լենինը, այնուհետև, ցույց է տալիս, որ կուսակցությունը ոչ միայն պրոլետարիատի առաջավոր ու գիտակից մասն է, որն անխզելիորեն կապված է աշխատավորների

բոլոր խավերի հետ, այլև բանվոր դասակարգի **կազմակերպված** ջոկատն է:

Լենինը մեկ անգամ չէ, որ նշել է, թե պրոլետարիատը չի վախենում կարգապահությունից: Խոշոր ձեռնարկություններում աշխատանքի պայմանները, շահագործողների դեմ դասակարգային պայքարը նրանց կարգապահություն ու կազմակերպվածություն են սովորեցնում: Ընդհակառակը, մանրբուրժուական տարրերը վախենում են կուսակցական կարգապահությունից, հակված են դեպի ինդիվիդուալիզմ: Մենշևիկները փորձում էին սպեկուլյացիա անել այն բանի վրա, որ շատ ինտելիգենտներ «անձի ազատության» նշանաբանով հեռու կկանգնեն հեղափոխական շարժումից, քանի որ նրանց կճնշի խիստ կարգապահությունը: Լենինը նրանց պատասխանում էր, որ նման անկայուն, տատանվող տարրերը պետք չեն կուսակցությանը: Բանվորական շարժման փորձը մեկ անգամ չէ ապացուցել, որ մանրբուրժուական տարրերի հոսքը կուսակցությունից ներս թուլացնում է նրա շարքերը, նրա միասնությունը: Կրիտիկական, շրջադարձային պահերին նրանք սովորաբար տատանումների մեջ են ընկնում, դրսևորում իրենց անկայունությունը, նետվում մի ծայրահեղությունից մյուսը, դրանով իսկ հարվածի տակ դնելով ոչ միայն կուսակցությանը, այլև պրոլետարական շարժումն ամբողջությամբ վերցրած:

Քննադատելով Ակսելրոդին, որը ՌՍԴԲԿ II համագումարում պահանջել էր սահմանագծել կուսակցություն և կազմակերպություն հասկացողությունները, Վ. Ի. Լենինը ցույց էր տալիս, որ «...կուսակցությունը պետք է լինի **կազմակերպությունների** գումար (և ո՛չ թե հասարակ թվաբանական գումար, այլ կոմպլեքս...): Ես դրանով,— գրում է այնուհետև Վ. Ի. Լենինը,—միանգամայն պարզ ու ճշգրիտ արտահայտում եմ իմ ցանկությունը, իմ պահանջը, որպեսզի կուսակցությունը, որպես դասակարգի առաջավոր ջոկատ, ներկայացնի ըստ հնարավորության ավելի **կազմակերպված** մի բան, որպեսզի կուսակցությունն իր մեջ ընդունի միայն այնպիսի տարրեր, որոնք **թույլ են տալիս կազմակերպվածության գեթ մինիմումը**» (նույն տեղը, էջ 322):

Այնուհետև իր աշխատության մեջ Վ. Ի. Լենինը ցույց էր տալիս, որ կուսակցությունը ոչ միայն պրոլետարիատի առաջավոր ու կազմակերպված ջոկատն է, այլև կազմակերպվածության **բարձրագույն ձևը:**

Ինչպես հայտնի է, բանվոր դասակարգն ունի տարբեր կազմակերպություններ՝ արհմիություններ, կոոպերատիվներ, կուլտուր-լուսավորական, սպորտային, երիտասարդական, կանանց և այլն: Կուսակցությունը, որը կազմված է դասակարգի ամենալավագույն ներկայացուցիչներից, պետք է այդ կազմակերպությունների նկատմամբ իրականացնի մշտական ղեկավարություն, օգնի նրանց մշակելու ճիշտ քաղաքականություն:

Իր աշխատության մեջ Լենինը առանձնապես հանգամանորեն քննարկում է կուսակցության և արհմիությունների փոխհարաբերությունների հարցը, ընդգծում, որ կուսակցությունը հատկապես արհմիությունների միջոցով կարող է տարածել իր ազդեցությունը աշխատավորների լայն խավերի վրա: Արհմիությունների գործունեության հաջողության գրավականը նրա նկատմամբ բանվոր դասակարգի կուսակցության մշտական ղեկավարությունն է: «Որ այդ միությունները **պետք է** աշխատեն սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների «վերահսկողության և ղեկավարության ներքո»,— դրա մասին սոցիալ-դեմոկրատների շրջանում չի կարող երկու կարծիք լինել»,— գրում էր Վ. Ի. Լենինը (նույն տեղը, էջ 331):

Իրականացնելով ղեկավարությունը հասարակական կազմակերպությունների նկատմամբ, կուսակցությունը, ասում էր Լենինը, բնավ չի իջեցնում նրանց դերն ու նշանակությունը, իրենով չի փոխարինում նրանց: Այստեղ մանր խնամակալությունը անհանդուրժելի է: Կուսակցությունը անկուսակցական կազմակերպություններին ղեկավարում է դրանցում եղած, դրանցում աշխատող կոմունիստների միջոցով:

Կուսակցության կազմակերպական առաջատար սկզբունքը Լենինը համարում էր դեմոկրատական ցենտրալիզմը: Այդ տերմինը **Մի քայլ առաջ, երկու քայլ ետ** գրքում դեռևս չի օգտագործված: Լենինը այն կուսակցական գրականության մեջ մտցրեց ավելի ուշ՝ 1905 թվականին: Սակայն ողջ գիրքը ներթափանցված է դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի պարզաբանմամբ ու պրոպագանդայով:



Լենինը ընդգծում էր, որ կուսակցության մեջ չի կարող լինել նրա անդամների բաժանում «ընտրյալների» և «ոչ ընտրյալների», որ բոլորի համար գոյություն ունի միասնական կուսակցական կարգապահություն: Կուսակցության ամեն մի անդամ պետք է պահպանի այն և դա պահանջի մյուսներից: Գրքի **Նոր «Իսկրա»-ն: Օպորտունիզմը կազմակերպական հարցերում** խորագրով բաժնում Վ. Ի. Լենինը գրում էր. «...քանի որ մեզանում կազմվում է **իսկական** կուսակցություն, գիտակից բանվորը պետք է սովորի տարբերել պրոլետարական բանակի ռազմիկի հոգեբանությունն այն բուրժուական ինտելիգենտի հոգեբանությունից, որ պճնազարդվում է անարխիական ֆրազով, պետք է սովորի **պահանջել** կուսակցության անդամի պարտականությունների կատարումը ո՛չ միայն շարքայիններից, **այլև** «վերնախավի մարդկանցից», պետք է սովորի դիմավորել պոչականությունը կազմակերպական հարցերում նույնպիսի արհամարհանքով, որպիսի արհամարհանքով նա վարձատրում էր մի ժամանակ պոչականությունը տակտիկայի հարցերում» (նույն տեղը, էջ 508):

Գրքում Լենինը հատկապես ընդգծում էր ցենտրալիզմի գաղափարը: Մենշևիկները մեղադրում էին Լենինին և բոլշևիկներին, որ իբր նրանք կուսակցության մեջ ներդնում են «ինքնակալական-բյուրոկրատական ղեկավարման» սիստեմ: Պատասխանելով նրանց, Լենինը նշում էր, որ ցենտրալիզմը կուսակցության նորմալ գործունեության անհրաժեշտ պայման է:

Լենինը հետևողականորեն պաշտպանում էր դեմոկրատական ցենտրալիզմի հիմնական պահանջներից մեկը՝ փոքրամասնության ենթարկումը մեծամասնությանը: Մեծամասնության կամքի ճանաչումը կուսակցության մարտունակությունն ապահովելու կարևորագույն հանգամանք է: Նա, ով ամենից շատ է հաշվի նստում մեծամասնության կամքի հետ, նա ամենից շատ է հաշվի առնում դասակարգի շահերը: Լենինը մերկացնում էր մենշևիկների այն փորձերը, որոնց նպատակն էր կուսակցության մեծամասնության շահերը զոհաբերել փոքրամասնության ձգտումներին ու նպատակներին: Նա անհեթեթություն էր համարում նրանց այն պնդումը, թե «մասը չպետք է ենթարկվի ամբողջին, որ ընդհանուրի հետ իր հարաբերություններում նա ավտոնոմ է»: Լենինը նշում էր, որ կազմակերպական հարցերում ցենտրալիզմի դեմ ավտոնոմիզմի պաշտպանությունը ընդհանրական է բոլոր օպորտունիստների համար: Նա հիշեցնում էր, որ Գերմանիայի, Ֆրանսիայի, Իտալիայի բանվորական շարժման մեջ նույնպես օպորտունիստները «...ուժեղ կերպով կողմնակից են ավտոնոմիզմի, կուսակցական կարգապահության թուլացման, նրան զրոյի հասցնելուն, ամենուրեք նրանց տենդենցները տանում են դեպի **կազմալուծում,** դեպի «դեմոկրատական սկզբունքի» աղավաղում և վերածում **անարխիզմի**» (նույն տեղը, էջ 515):

Մեր ժամանակներում նույնպես աջօպորտունիստական տարրերը կատաղի հարձակումներ են գործում ցենտրալիզմի սկզբունքի վրա: Նրանք դրանում տեսնում են իրենց հակակուսակցական գործունեության գլխավոր խոչընդոտը: Գրոհներ ձեռնարկելով ցենտրալիզմի սկզբունքի դեմ, նրանք փորձում են այն ներկայացնել իբրև «բյուրոկրատական մնացուկ»: Տեղին է հիշեցնել, որ դեռևս անցյալ դարի վերջին Ֆ. Էնգելսը դատապարտում էր նրանց, ովքեր հանդես էին գալիս պրոլետարական շարժման ներսում ցենտրալիզմի դեմ, ընդգծում էր, որ Փարիզի կոմունայի անկման գլխավոր պատճառներից մեկը հենց ցենտրալիզմի պակասը եղավ: «Երբ ինձ ասում են հեղինակության և ցենտրալիզմի մասին, որպես բոլոր հանգամանքներում դատապարտման ենթակա երկու բաների մասին,— նշում էր Էնգելսը,— ապա ինձ թվում է, որ նրանք, ովքեր այդպես են ասում, կամ չգիտեն, թե ինչ է հեղափոխությունը, կամ հեղափոխականներ են միայն խոսքով» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 33, стр. 317):

Դեմոկրատիան և ցենտրալիզմը Լենինը դիտում էր դիալեկտիկական սերտ միասնության մեջ, որպես միևնույն սկզբունքի երկու անբաժանելի կողմեր, սկզբունք, որ հնարավորություն է տալիս միասնական ղեկավարությունը զուգակցել ներքևից եկող նախաձեռնության հետ: Իլյիչը սովորեցնում էր, թե ներկուսակցական դեմոկրատիայի էությունը նրանում է, որ կուսակցության անդամները ակտիվորեն մասնակցում են նրա որոշումների մշակմանը և, որ հատկապես կարևոր է, մասնակցում են դրանց իրականացմանը: Բանվոր դասակարգի կուսակցության մեջ դեմոկրատիան ոչ այլ ինչ է, քան միասնական ու ակտիվ գործողությունների դեմոկրատիա:

**Մի քայլ առաջ, երկու քայլ ետ** գրքում Լենինը հանգամանորեն կանգ է առնում **քննադատության և ինքնաքննադատության** հարցի վրա: Նա նշում է, որ քննադատության և ինքնաքննադատության նկատմամբ վերաբերմունքը միշտ եղել է մարքսիստական կուսակցությունների և օպորտունիստական կուսակցությունների միջև սկզբունքային տարբերություններից մեկը: Իսկական պրոլետարական կուսակցությանը խորթ է ինքնագոհության, բավարարվածության, ինքնահանգստացման զգացումը: Սակայն Լենինը միաժամանակ հիշեցնում էր, որ կուսակցությունն ամրապնդող քննադատությունը պետք է տարբերել կուսակցությունը թուլացնող քննադատությունից: Քննադատությունը պետք է լինի գործնական, սկզբունքային, այն պետք է կատարվի կուսակցության ծրագրի ու կանոնադրության շրջանակներում: Երբ որոշումն ընդունված է, ապա կուսակցության բոլոր անդամներն արդեն գործում են իբրև մի մարդ:

Առաջնորդվելով լենինյան գաղափարներով, ՍՄԿԿ ղեկավար օրգաններն ամեն կերպ նպաստում են ներկուսակցական դեմոկրատիայի, կոմունիստների ակտիվության ու նախաձեռնության զարգացմանը, նրանց լայնորեն ներգրավում կուսակցության քաղաքականության և պրակտիկ գործունեության ազատ ու գործարար քննարկմանը: Ըստ որում, ինչպես ընդգծել է ՍՄԿԿ XXIV համագումարը, ներկուսակցական դեմոկրատիայի զարգացումը միաժամանակ ենթադրում է կոմունիստների շարքերում կարգապահության ըստ ամենայնի ամրապնդում, ընդունած որոշումների կատարման համար նրանց պատասխանատվության բարձրացում: Կուսակցական և պետական կարգապահության ամրապնդման գործում կուսակցությունը հսկայական նշանակություն է տալիս կատարման վերահսկման և ստուգման կատարելագործմանը, որպես կոմունիստական շինարարության ղեկավարման ուղղությամբ կուսակցության գործունեության արդյունավետության բարձրացման անհրաժեշտ պայման:

Կոմունիստական կուսակցության կազմակերպական սկզբունքների մեջ կարևոր նշանակություն ունի Լենինի կողմից պրոլետարական ինտերնացիոնալիզմի պաշտպանությունը: Այդ հարցը չափազանց հրատապ հարց էր բազմազգ Ռուսաստանի բանվորական շարժման մեջ: Վլադիմիր Իլյիչը հետևողականորեն մերկացրեց բունդականներին, մյուս նացիոնալիստներին, որոնք պահանջում էին կուսակցությունը կառուցել ֆեդերատիվ սկզբունքներով, ձգտելով նրա իսկական ինտերնացիոնալ միասնությունը փոխարինել ազգային կազմակերպությունների ֆորմալ միավորմամբ, որոնք «անկախ լինեին համակուսակցական ղեկավարությունից»:

Վ. Ի. Լենինի **Մի քայլ առաջ, երկու քայլ ետ** գրքում իրենց բազմակողմանի լուսաբանումը գտան նաև կուսակցության տակտիկայի ու ագրարային ծրագրի հարցերը, նրանում ցույց տրվեց հին «Իսկրա»-ի պատմական դերը, նշվեցին ՌՍԴԲԿ III համագումարի նախապատրաստության ուղղությամբ տեղական կուսակցական կազմակերպությունների անելիքները: Աշխատության մեջ Վլադիմիր Իլյիչը մեծ ուշադրություն նվիրեց միջազգային բանվորական շարժման պրոբլեմներին, արևմտաեվրոպական սոցիալ-դեմոկրատական կուսակցություններում իրերի վիճակին:

Հենվելով լենինյան ցուցումների վրա, բոլշևիկները «Վպերյոդ» թերթի առաջին համարում, որը լույս տեսավ 1905 թ. սկզբին, լայն կամպանիա ծավալեցին կուսակցության III համագումար հրավիրելու օգտին: Համագումարի նախապատրաստման համար 1904 թ. օգոստոսին հրավիրվեց 22 բոլշևիկների



խորհրդակցություն: Այն ընդունեց կուսակցությանն ուղղված դիմումը, որը գրել էր Լենինը: Այդ դիմումի գլխավոր պահանջը կուսակցության III համագումարի անհապաղ հրավիրումն էր:

Մենշևիկները հասկանում էին, որ համագումարը կդատապարտի իրենց վարքագիծը, կպահանջի՝ կամ կանգնել մարքսիստական դիրքերում, կամ հրաժեշտ տալ բանվոր դասակարգի կուսակցությանը: Ահա թե ինչու կազմալուծիչներն ամեն կերպ դիմադրում էին կուսակցական բարձրագույն ֆորումի հրավիրմանը, խափանում էին նրա նախապատրաստությունը, փորձում էին պահպանել և օրինականացնել այն աննորմալ դրությունը, որ ստեղծվել էր ՌՍԴԲԿ II համագումարից հետո:

Սակայն կուսակցությունը հավաքվեց իր III համագումարին և արդարացի դատավճիռ կարդաց կազմալուծիչներին:

***

Յոթանասուն տարի է անցել այն ժամանակվանից, երբ լույս տեսավ Վ. Ի. Լենինի **Մի քայլ առաջ, երկու քայլ ետ** հանճարեղ գիրքը: Այդ ժամանակաշրջանում մեր կուսակցությունը գլխավորել է Ռուսաստանի աշխատավորների հեղափոխական պայքարը ցարիզմի ու կապիտալիզմի դեմ՝ հանուն սովետական կարգերի հաստատման, մեր ժողովրդին հասցրել սոցիալիզմի հաղթանակին, այժմ էլ նրան առաջնորդում է կոմունիստական հասարակարգի կառուցման ուղիով:

Կոմունիստական կուսակցությունն այժմ հզոր, ամուր, միասնական է, ինչպես երբեք: Նրա շարքերի միասնությունը հիմնված է մարքսիզմ-լենինիզմին հավատարմության վրա, ամրապնդվում է այն կազմակերպական սկզբունքներով, որ Վ. Ի. Լենինը մշակել է **Մի քայլ առաջ, երկու քայլ ետ** գրքում, սկզբունքներ, որոնք ՍՄԿԿ-ն անշեղորեն կիրառում է իր ներկուսակցական կյանքում:

Լենինի գիրքը այսօր էլ մեծապես մեզ օգնում է մերկացնելու բուրժուական գաղափարախոսության մնացուկները և նրանց կրողներին՝ մորթապաշտներին, կարիերիստներին, ոչ ազնիվ մարդկանց: Գիրքն այսօր էլ ծառրի է ենթարկում անարխիստական տրամադրությունների կրողներին, որոնք խոսում են հեղինակությունների ավելորդ լինելու մասին, պահանջում են, որ յուրաքանչյուր անձ ինքը որոշի իր իրավունքների սահմանները: Միաժամանակ այն սոցիալիզմի ու կոմունիզմի բոլոր կառուցողներին կոչում է համախմբվածության, միասնության:

Լենինի **Մի քայլ առաջ, երկու քայլ ետ** գիրքը միջազգային կոմունիստական շարժմանը այսօր էլ մեծապես օգնում է պայքարելու ռեֆորմիզմի, ադանդավորության, աջ և «ձախ» օպորտունիզմի դեմ: Վերջին տարիներին, չնայած զանազան պառակտիչների ու հակակոմունիստների բազում ջանքերին, միջազգային կոմունիստական շարժումը վիթխարի քայլ է կատարել դեպի առաջ՝ բանվոր դասակարգի համախմբման, բոլոր աշխատավորներին իմպերիալիզմի դեմ, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պայքարում ներգրավելու ճանապարհին:

Վ. Ի. Լենինի հանճարեղ կանխատեսումը, որ նա արել է **Մի քայլ առաջ, երկու քայլ ետ** գրքում, պատմության երկաթյա տրամաբանությամբ կենսագործվում է կյանքում: Վերհիշենք այդ բառերը.

«Բուրժուական աշխարհում տիրող անարխիական մրցության գերիշխանությամբ բաժան-բաժան, կապիտալի համար կատարվող հարկադրական աշխատանքից ճզմված, շարունակաբար լիակատար թշվառության, վայրենացման և այլասերման «հատակը» նետվող պրոլետարիատը կարող է դառնալ և անխուսափելիորեն կդառնա անհաղթելի ուժ...»: Պրոլետարական այդ հզոր «բանակին չի դիմանա ...միջազգային կապիտալի զառամող իշխանությունը» (նույն տեղը, էջ 535—536):

# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԸ ԵՎ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

**Ս. Կ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**
Հայկական ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս

*Սոցիալիզմից կոմունիզմին անցնելու վճռական պայմաններից մեկը գիտատեխնիկական հեղափոխության ծավալումն է արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ, որը վերածվելով պետական քաղաքականության, դարձել է մեր ժամանակների խոշորագույն սոցիալական երևույթներից մեկը։ Ուշադրության է արժանի այն փաստը, որ գիտատեխնիկական հեղափոխությունը զուգորդվում է տեխնիկայի մի շարք տեսակների էվոլյուցիոն զարգացման հետ։ Ուստի, «գիտատեխնիկական պրոգրես» հասկացությունն ավելի լայն է, քան «գիտատեխնիկական հեղափոխություն» հասկացությունը։ Ընդ որում՝ ոչ միայն ժամանակի, այլև ծավալի տեսակետից, քանի որ առաջինն իր մեջ է առնում տեխնիկայի զարգացման ինչպես էվոլյուցիոն, այնպես էլ հեղափոխական ձևերը։ Այստեղից հետևում է, որ տեխնիկական առաջընթացի երկու ուղիներն էլ հսկայական նշանակություն ունեն արտադրության տնտեսական արդյունավետությունը բարձրացնելու գործում։ Գիտական հետազոտությունները, լինելով արտադրության բաղկացուցիչ մասը, միաժամանակ հանդես են գալիս որպես դրա հետագա զարգացման էական գործոն։ Դրանով էլ զգալի չափով որոշվում է գիտական հետազոտությունների դերն ու նշանակությունը մեր երկրի էկոնոմիկայում, նրա զարգացման ներկա փուլում։*

*Հետազոտությունները հաստատել են, որ գիտության մեջ կատարվող ներդրումներն անհամեմատ ավելի մեծ արդյունք են տալիս, քան սովորական կապիտալ ներդրումները։ Ակադեմիկ Վ. Ա. Տրապեզնիկովի տվյալներով, գիտության մեջ ներդրած յուրաքանչյուր ռուբլին տալիս է ազգային եկամտի 1 ռ. 45 կոպ. աճ։ Դա քառակի արդյունավետ է սովորական կապիտալ ներդրումներից։*

*Ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության բնորոշ հատկանիշներից մեկն այն է, որ գիտական հայտնագործության և արտադրության մեջ դրա ներդրման ժամանակաշրջանը խիստ կրճատվում է։*

*Պատմական փորձը ցույց է տվել, որ հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը ձեռք է բերվում տարբեր ճանապարհներով, որոնցից գլխավորը գիտատեխնիկական առաջընթացն է, ընդ որում, դրա ազդեցությունը հանրային արտադրության արդյունավետության վրա գնալով վճռական է դառնում և ունի աճելու միտում։ Դրա հավաստիության համոզիչ ապացույցը կարող են հանդիսանալ հետևյալ տվյալները. 1961 թ. գիտատեխնիկական առաջընթացի հաշվին ստացվեց ՍՍՀՄ ազգային եկամտի 59,9, 1967-ին՝ 81, 1968-ին՝ 88,2, իսկ 1971 թ.՝ ոչ պակաս 95 տոկոս։*

*Գիտության և տեխնիկայի ինտենսիվ զարգացումը, ինչպես նաև արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրության մեջ գիտատեխնիկական վերջին նվաճումների լայն ներդրումը ոչ միայն տնտեսական էական պրոբլեմ է, այլև քաղաքական կարևոր խնդիր։ Մեր օրերում գիտության ներդրումն արտադրության մեջ դարձել է հասարակական արտադրաուժերի զարգացման*



*հզոր գործոն. գիտությունը վերածվել է իրական արտադրաուժի և անմիջականորեն ներգործում է դրա բոլոր տարրերի վրա։*

*Ժամանակակից պայմաններում գիտության առաջընթացը բնութագրվում է մի շարք նոր տենդենցներով։ Դրանցից մեկը՝ գիտության տնտեսական արդյունավետությունը բարձրացնելու տեսակետից առավել կարևորը, գիտական հայտնագործության և արտադրության մեջ դրա ներդրման ժամանակամիջոցի կրճատումն է։ Բերենք մի քանի փաստեր։ Լուսանկարչության գյուտից մինչև առաջին լուսանկարների ստացումը տևեց 102 տարի (1727—1829 թթ.), հեռախոսի համար այդ ժամկետը կազմեց 56 (1820—1876 թթ.), ռադիոյի համար՝ 35 տարի (1867—1902 թթ.)։ XX դարի առաջին քառորդից վիճակն արմատապես փոխվեց. հեռուստատեսության գյուտից մինչև դրա ներդրումն անցավ ընդամենը 14 տարի (1926—1940 թթ.), ատոմային ռումբի համար պահանջվեց 6 տարի (1939—1945 թթ.), իսկ տրանզիստորի համար՝ միայն 5 տարի (1948—1953 թթ.)* («Эффективность научных исследований», М., изд. «Прогресс», 1968, стр. 399).

*Ահա մի քանի օրինակ գյուղատնտեսության բնագավառից։ Արհեստական ճտահանությունը (ինկուբացիան) հնագույն պատմություն ունի։ Եգիպտոսում և Չինաստանում այդ մեթոդով մարդիկ զբաղվել են սրանից դեռ 2500 տարի առաջ, թեև խիստ պարզունակ եղանակով՝ գետնափոր հյուղերում, որտեղ ստեղծվում էին շատ թե քիչ կայուն ջերմաստիճան և խոնավություն։ Եվրոպայում արհեստական ճտահանության առաջին փորձերն արվել են XIV դարում, բայց դրանք արտադրական կիրառում չեն ստացել։ Մեծ ընդմիջումից հետո՝ XVIII դարում, փորձերը կրկնվեցին, սակայն տարածում չստացան, քանի որ ջերմակարգավորումը կատարվում էր ձեռքով, որը չէր ապահովում կայուն ջերմային ռեժիմ և տեղի էր ունենում սաղմի մեծ կորուստ։*

*Միայն XIX դարում, երբ ստեղծվեց ավտոմատ ջերմակարգավորիչը (շնորհիվ ջերմաչափի գյուտի), արհեստական ճտահանությունը լայն զարգացում ստացավ։ Այսպիսով, արհեստական ճտահանության գիտական եղանակի մշակման և դրա արտադրական կիրառման «ինկուբացիոն շրջանը» դարեր տևեց և կատարելության հասավ միայն մեր օրերում։*

*1896—98 թթ. ռուս անվանի կենսաբան-անասնաբույծ Իլյա Իվանովիչ Իվանովը հայտնագործեց կաթնասուն կենդանիների արհեստական սերմնավորման մեթոդը։ 1901 թ. նա նույնիսկ ստեղծեց արհեստական սերմնավորման փորձակայան և ապացուցեց այդ եղանակի արտադրական կիրառման ռեալ հնարավորությունը։ Սակայն հայտնագործությունը արտադրական լայն կիրառում ստացավ միայն 40—50-ական թվականներին։*

*Մոտավորապես նույնպիսի պատմություն ունեցավ կանաչ կերաբույսերի սիլոսացման մեթոդի արմատավորումը։ Նոր եղանակը առաջարկվեց մեր դարասկզբին՝ Եվրոպայում։ Մեզանում այն չափազանց դանդաղ էր ներդրվում՝ սիլոսացման տեխնոլոգիական կանոնները խախտելու հետևանքով կանաչ զանգվածի մեծ մասը փչանում էր և անօգտագործելի դառնում կենդանիներին կերակրելու համար։ Այդ վիճակը տևեց մինչև 50-ական թվականների վերջը։ Գլխավոր պատճառներից մեկը կոլտնտեսություններում ու սովխոզներում անհրաժեշտ մեքենաների և ավտոտրանսպորտի խիստ պակասն էր։*

*Բոլորովին այլ ընթացք ունեցավ կանաչ կերի կենսաբանական նախապատրաստման ավելի կատարելագործված եղանակի՝ սենաժի պատրաստման տեխնոլոգիայի մշակումը և մասսայական կիրառումը։ Սենաժի պատրաստման տեխնոլոգիան ՍՍՀՄ-ում մշակվեց 1968—1969 թթ. և բառացիորեն 1—2 տարի անց սկսվեց դրա արտադրական ներդրումը։ Այս գործում իհարկե վճռական դեր խաղաց կոլտնտեսությունների ու սովխոզների տեխնիկական զինվածության բարձր մակարդակը։*

*Գիտական հայտնագործությունների և առաջավոր տեխնոլոգիական եղանակների արտադրական ներդրման ժամկետների այսպիսի շեշտակի կրճատումը գիտատեխնիկական առաջընթացի անմիջական արգասիքն է և հսկայական*

նշանակություն ունի մարդկային հասարակության սոցիալ-տնտեսական զարգացման համար։

Գիտատեխնիկական պրոգրեսը գյուղատնտեսության մեջ անխզելիորեն կապված է հողի հետ և դրսևորվում է ուրույն առանձնահատկություններով։ Հողի բերրիության հետևողական բարձրացումը, առավել կատարելագործված տեխնիկայի կիրառումը գյուղատնտեսական մթերքների արտադրության աճի պարտադիր պայմանն են։ Գյուղատնտեսության ինտենսիվացումը ելնում է հողի ուրույն առանձնահատկություններից։ Հողը ոչ միայն գյուղատնտեսական արտադրության հիմնական միջոց է, այլև վճռական ազդեցություն է գործում արդյունաբերության զարգացման ողջ ընթացքի վրա։

Վ. Ի. Լենինն իր Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում աշխատության մեջ գրում է. «Հողագործության բուն իսկ բնույթի համաձայն, նրա՝ ապրանքային արտադրություն դառնալը կատարվում է մի ուրույն ճանապարհով, որը նման չէ ինդուստրիայի մեջ կատարվող համապատասխան պրոցեսին։ Մշակող արդյունաբերությունը բաժանվում է առանձին, միանգամայն ինքնուրույն ճյուղերի, որոնք բացառապես նվիրված են մեկ պրոդուկտի, կամ նրա մեկ մասի արտադրությանը։ Իսկ հողագործական արդյունաբերությունը չի բաժանվում միանգամայն առանձին ճյուղերի, այլ միայն մասնագիտանում է, մի դեպքում շուկայական մեկ պրոդուկտի, մյուս դեպքում՝ շուկայական մի այլ պրոդուկտի արտադրության մեջ, ընդ որում գյուղատնտեսության մնացած կողմերը հարմարվում են այդ գլխավոր (այսինքն շուկայական) պրոդուկտին» (Երկեր, հ. 3, էջ 386—387)։

Արդյունաբերական ձեռնարկության յուրաքանչյուր ճյուղում արտադրանքի ծավալը կարելի է ավելացնել՝ սակավարդյունք մեքենաները և հաստոցները փոխարինելով բարձր արտադրողականություն ունեցողներով։ Գյուղատնտեսության մեջ արտադրանքի ծավալը կարելի է ավելացնել կամ ցանքատարածությունները ընդարձակելով (տնտեսության էքստենսիվ ձևը), կամ հողի բերրիությունը բարձրացնելով, այլ խոսքով՝ արտադրության ինտենսիվացման ճանապարհով։ Վերջին ուղին ամենից առաջավորն է, տնտեսական տեսակետից շահավետ, ուստի՝ ավելի հեռանկարային, քանի որ հողային տարածություններն անվերջ ընդլայնել հնարավոր չէ։ Այս դրույթն առանձնապես վերաբերում է սակավահող շրջաններին, այդ թվում և մեր հանրապետությանը։ Գյուղատնտեսության ինտենսիվացման կարևոր խնդիրը դրա ճյուղերի խոր մասնագիտացումն է, արտադրության կենտրոնացումը և մթերքների արտադրության առավելագույն ավելացումը՝ աշխատանքի ու միջոցների նվազագույն ծախսումով։

Ահա թե ինչու ՍՄԿԿ-ն և սովետական կառավարությունը հետևողականորեն իրականացնում են գիտականորեն հիմնավորված կոմպլեքսային միջոցառումներ՝ գյուղատնտեսության հարաճուն վերելքն ապահովելու և գիտատեխնիկական հեղափոխության նվաճումներն այդ բնագավառում լայնորեն արմատավորելու համար։ Այդ հարցերը հանգամանորեն քննարկվեցին ՍՄԿԿ Կենտկոմի մի շարք պլենումներում, ինչպես նաև կուսակցության XXIII և XXIV համագումարներում։

ՍՄԿԿ Կենտկոմն իր հուլիսյան (1970 թ.) պլենումում մշակեց գյուղատնտեսության զարգացման գիտականորեն հիմնավորված կոմպլեքսային լայն ծրագիր, որը նոր շրջան էր նշանավորում երկրի գյուղատնտեսության զարգացման ասպարեզում։

Կուսակցության XXIV համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ հուլիսյան պլենումի որոշումները դրված են ընթացիկ հնգամյակի (1971—1975 թթ.) առաջադրանքների հիմքում։ «Դրանց կատարումը կնշանակի գյուղատնտեսական արտադրության այնպիսի աճ, որը թույլ կտա արդեն մոտակա տարիներին սիստեմատիկաբար ընդլայնել և բարելավել բնակչությանը սննդամթերք, իսկ արդյունաբերությանը՝ հումք մատակարարելու գործը»։ Ընկեր Բրեժնևը նշեց, որ մենք պետք է նոր հնգամյակում «...մեծ առաջընթաց քայլ կատարենք գյուղատնտեսության նյութական և տեխնիկա-



կան այնպիսի բազա ստեղծելու գործում, որը կօգնի ապագայում լրիվ լուծելու
գյուղատնտեսական արտադրության և գյուղի վերափոխման պրոբլեմները,
նվազեցնելու հողագործության կախումը բնության տարերային ուժերից»
(ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 62)։ Ելնելով այս հստակ դրույթնե-
րից, Կենտկոմը որոշեց կապիտալ ներդրումների ծավալը գյուղատնտեսության
մեջ իններորդ հնգամյակում հասցնել մոտ 129 մլրդ ռուբլու, այսինքն, այն-
քան, որքան ներդրվել էր նախորդ երկու հնգամյակների ընթացքում միասին
վերցրած։
Գյուղի աշխատավորների առջև խնդիր դրվեց նոր հնգամյակում հացա-
հատիկի տարեկան միջին արտադրությունը հասցնել մինիմում 195, մսինը՝ 14,
կաթինը՝ 92 մլն տոննայի, իսկ ձվինը՝ 46 մլրդ հատի։
Հնգամյա պլանի ընթացիկ հարցերի լուծումը կուսակցությունը կապում է
գյուղատնտեսության զարգացման հեռանկարային ուղղությունների հետ։ Խոս-
քը վերաբերում է, ամենից առաջ, գյուղատնտեսության տեխնիկական հետա-
գա վերազինմանը, նրա մեքենայացմանը և քիմիացմանը, ինչպես նաև հողերի
լայն մասշտաբներով մելիորացմանը, այսինքն՝ գյուղատնտեսության մեջ գի-
տատեխնիկական հեղափոխության խոր թափանցմանը։ Դա էլ հենց այն վճ-
ռական օղակն է, որը գյուղատնտեսությունը կբարձրացնի մի նոր, որակապես
ավելի բարձր մակարդակի։
Այդ նպատակին հասնելու համար ՍՄԿԿ-ն, հենվելով գիտատեխնիկական
առաջընթացի վրա, հետևողականորեն իրականացնում է գյուղատնտեսության
ինտենսիվացման և խոր մասնագիտացման քաղաքականությունը։
ՍՄԿԿ XXIV համագումարը ամփոփեց մեր երկրի ակնառու նվաճումները
կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում։ Համագումարը
հատկապես նշեց կուսակցության և նրա Կենտկոմի արդյունավետ ջանքերը
գյուղատնտեսության անշեղ վերելքի գործում, որը հսկայական նշանակություն
ունի մեր էկոնոմիկայի, սովետական ժողովրդի բարեկեցության համար։
Չպետք է մոռանալ, որ առանց գյուղատնտեսական արտադրության զար-
գացման բարձր մակարդակի հնարավոր չէ իրականացնել երկրի առջև կանգ-
նած կենսական այդ խնդիրը։ Կ. Մարքսը գրել է. «... սննդամթերքների ար-
տադրությունը հանդիսանում է անմիջական արտադրողների և առհասարակ
ամեն տեսակի արտադրության, կյանքի ամենաառաջին պայմանը» (Собр.
соч., т. 25, ч. II, стр. 184—185)։ Սոցիալիզմի և կոմունիզմի շինարարու-
թյան բոլոր փուլերում կուսակցությունը հետևողականորեն մշակում է ագրա-
րային քաղաքականության տեսական հարցերը և ձեռնարկում դրանք իրակա-
նացնելու միջոցները։ Գյուղատնտեսության հետագա վերելքի համար կուսակ-
ցության ծրագրում մեծ տեղ է տրվում արտադրության մեջ գիտատեխնիկա-
կան նվաճումների ներդրմանը։ Այժմ մի քանի հարյուր գիտա-հետազոտական
հիմնարկություններ զբաղվում են գյուղատնտեսության պրոբլեմներով։ Հան-
րահայտ է սովետական գիտնականների և սելեկցիոներների հսկայական ավան-
դը երկրագործության և անասնաբուծության զարգացման, հողերի մելիորա-
ցիայի, սելեկցիայի և սերմնաբուծության, ինչպես նաև գյուղատնտեսական
կենդանիների բարձր մթերատու ցեղեր ստեղծելու բնագավառում։ Հիշենք
ակադ. Պ. Պ. Լուկյանենկոյի ստեղծած աշնանացան ցորենի նոր սորտերը,
հատկապես «բեզոստայա—1-ը», որը ջրովի հողերում հեկտարից մինչև 95,
իսկ անջրդի հողերում մինչև 70 ցենտներ բերք է տալիս։ «Կավկազ», «Միրո-
նովսկայա յուբիլեյնայա» սորտերը հեկտարից մինչև 100 ցենտներ բերքա-
տվության պոտենցիալ ունեն։ Մեծ տարածում են ստացել նաև Վ. Ն. Ռեմեսլո-
յի ստեղծած աշնանացան ցորենի «Միրոնովկա—264» և 808 սորտերը, որոնք
ներկայումս զբաղեցնում են տասնյակ միլիոնավոր հեկտար տարածություն
թե՛ մեր երկրում, թե՛ նրա սահմաններից դուրս։ Ռեալ հեռանկարներ են բաց-
վում ստեղծելու հասկավոր կուլտուրաների սորտեր՝ հեկտարից 150 և ավելի
ցենտներ բերքատվությամբ։
1956 թ. ստեղծվեց իր տեսակի մեջ աշխարհում առաջին՝ շաքարի ճակըն-
դեղի բելոցերկովյան միասերմ սորտը, որը մեր հայրենական սելեկցիայի խո-

շոր նվաճումներից էր. սելեկցիոներների կոլեկտիվն արժանացավ լենինյան մրցանակի։ Հայրենական սելեկցիայի պարծանքը հանդիսացան լենինյան մրցանակի դափնեկիր, սոցիալիստական աշխատանքի հերոս, ակադեմիկ Վ. Ս. Պուստովոյտի և նրա աշակերտների ջանքերով ստեղծված արևածաղկի նոր սորտերը, որոնց մեջ բուսական յուղի պարունակությունն արտադրության պայմաններում հասնում է 45—51 տոկոսի (հիշենք, որ մինչպատերազմյան տարիներին այդ ցուցանիշը 32—34 տոկոսից չէր անցնում)։ Միանգամայն օրինաչափ էր, որ նոր սորտերի ստեղծումից հետո այդ կուլտուրայի մշակումը Սովետական Միությունում լայն մասշտաբների հասավ և այժմ կազմում է մոտ 5 մլն հեկտար՝ 1913 թ. 981 հազար հեկտարի դիմաց։ Ձեթի արտադրությունը այդ տարիներին աճեց ավելի քան 10 անգամ։

Մեր սելեկցիոներները մեծ նվաճումների են հասել նաև խաղողի, պտուղների, բանջարա-բոստանային և այլ կուլտուրաների բարձր բերքատու սորտեր ստանալու գործում։ Բուսաբույծներից ետ չեն մնացել անասնաբույծները։ Սելեկցիոն երկարամյա աշխատանքի արդյունք է տավարի կոստրոմյան կաթնամսատու ցեղը, որ ստեղծվել է պրոֆեսոր Վաղինակ Շահումյանի և Ստանիսլավ Շտեյմանի կողմից։ Այդ ցեղի կովերի կաթնատվությունը հասնում է 4,5—5 հազար լիտրի։ Բարձր մթերատվությամբ են աչքի ընկնում նաև նույն ուղղության լեբեդինյան, սիչևյան և սևաբղետ ցեղերը (վերջինս ստեղծվել է գիտնական-անասնաբույծ, պրոֆեսոր Երվանդ Արզումանյանի ղեկավարությամբ), ղազախական սպիտակագլուխ տավարի մսատու ցեղը, որը ստեղծել է սելեկցիոներ, պրոֆեսոր Կոնստանդին Հակոբյանը։ Ակադեմիկ Մ. Ֆ. Իվանովը ստեղծեց նրբագեղմ ոչխարների և բարձր մթերատու խոզերի ցեղեր Ուկրաինայում, Կ. Դ. Ֆիլյանսկին՝ ոչխարի հանրահռչակ կովկասյան նրբագեղմ ցեղը։

Գյուղատնտեսական կուլտուրաների արժեքավոր սորտեր և կենդանիների ու թռչունների բարձր մթերատու ցեղեր և ցեղախմբեր են ստեղծվել նաև Հայաստանում։ Սելեկցիայի առաջավոր եղանակների կիրառման շնորհիվ մեզ մոտ ստեղծվեց կաթնատու-մսատու տավարի կովկասյան գորշ ցեղը (հեղինակներ՝ պրոֆեսոր Ն. Ստեփանյան, Հ. Մկրտչյան, Ն. Գյուլմիրյան, Շ. Ժամկոչյան)։ Ստեղծվել է նաև մսաձվատու հավերի բարձր մթերատու բուծարանային նոր ցեղ, որն արդեն հաստատվել է ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրության կողմից՝ «երևանյան» անունով (հեղինակներ՝ Հայկական ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Ս. Կ. Կարապետյան, գյուղատնտեսական գիտությունների դոկտոր Վ. Ի. Հակոբյան, թեկնածուներ՝ Մ. Ն. Ղուկասյան, Ս. Գ. Սահակյան, Հ. Ա. Պետրոսյան, ավագ գիտաշխատող Կ. Ա. Պողոսյան)։ Նոր ցեղերն արդեն լայն տարածում են ստացել մեր հանրապետության տարբեր շրջաններում։

Գյուղատնտեսական գիտությունների դոկտոր Անահիտ Անանյանին է պատկանում պոմիդորի հայտնի սորտը, որն օժտված է տնտեսական և կենսաբանական մի շարք արժեքավոր հատկանիշներով։ Խաղողի մի ամբողջ շարք բարձրարժեք սորտերի հեղինակ է Վ. Ի. Լենինի անվան համամիութենական գյուղատնտեսական գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ Ս. Պողոսյանը։

Գյուղատնտեսական գիտությունների թեկնածուներ Սոֆյա Ագուլյանի և Պ. Կարանյանի ջանքերով ստեղծվել են տանձի, խնձորի և ելակի բարձր բերքատու հինգ սորտեր, որոնք ներդրվել են Լոռի-Փամբակի և Սևանի ավազանի գյուղատնտեսական շրջաններում։

Ինչպես մեզ մոտ, այնպես էլ արտասահմանյան շատ երկրներում վերջին տարիներին լայնորեն կիրառվում են կենդանիների աճի ու բտման խթանիչները։ Առաջին հայացքից թվում է, թե բնավ անհրաժեշտություն չկա դեղաբանական (բիոգեն) միջոցների օգնությամբ խթանել դրանց աճը, որքանով որ նորմալ խնամքի դեպքում կարելի է լավ ցուցանիշների հասնել նաև առանց այդպիսի միջամտության։ Եվ, իրոք, հիմնականում դա այդպես է։ Բայց փորձը ցույց է տալիս, որ բավարար, նույնիսկ լավ խնամքի պայմաններում էլ ոչ բոլոր կենդանիներն են հավասարապես լավ աճում։ Չանդրադառնալով դրա պատճառներին, նշենք միայն, որ դրությունը կարելի է շտկել կոմպլեքս մի-



ջոցառումների կիրառմամբ, որոնց թվում էական դեր կարող է խաղալ դեղաբանական միջոցների օգտագործումը։

Անասունների աճի խթանման համար տարբեր երկրներում կիրառվում են նյութերի տարբեր խմբեր, որոնց թիվն այժմ հասնում է տասի։ Մեզ մոտ առավել տարածված խթանիչներից են անտիբիոտիկները, բակտերիական պատրաստուկները, հատուկ շիճուկները և հյուսվածքային պատրաստուկները։ Այս խթանիչները մյուսների նկատմամբ ունեն այն էական առավելությունը, որ աճի վրա ներգործում են ավելի կայուն ու տևականորեն, դրական են ազդում անասունների ընդհանուր վիճակի վրա, բարելավում են հղիության ընթացքն ու պտղի զարգացումը։ Ներկայումս իբրև խթանիչներ գործածվում են առավելապես քլորտետրացիկլինի և օքսիտետրացիկլինի պատրաստուկները, սակայն մոտ ապագայում դրանց կլրացնեն գրիզինը և բացիտրանը։

Ինչպես տեսնում ենք, գիտությունը գյուղատնտեսական արտադրությանը տրամադրում է կենդանիների օրգանիզմի վրա ներգործելու միջոցների մի ամբողջ համալիր։ Դրանից, իհարկե, չի կարելի այն հետևությունն անել, թե խթանիչների կիրառումն այժմ բացառապես պրակտիկայի հարց է։ Որոշ գիտնականներ գտնում են, որ այս բնագավառում դեռ խնդիրներ կան, որոնք հետազոտման կարիք ունեն։ Խոսքն ամենից առաջ այն մասին է, թե որոնք են խթանիչների կիրառման սահմանները։ Հիշյալ նյութերը, ինչպես հայտնի է, դեղաբանական պատրաստուկներից են, և այդ հանգամանքը կասկած է հարուցում՝ արդյո՞ք դրանք վնասակար ազդեցություն չեն ունենա կենդանիների, իսկ անասնաբուծական մթերքների միջոցով նաև մարդու վրա։ Ամեն ինչ կախված է այն բանից, թե ինչպես են օգտագործվում այդ նյութերը։ Կենցաղում և բժշկության մեջ կիրառվում են բազմաթիվ նյութեր, որոնք խիստ թունավոր են, բայց որևէ բացասական հետևանք չեն թողնում։ Սուրճի, թեյի մեջ պարունակվող կոֆեինը նույնպես թունավոր է, բայց ամենքին հայտնի է, որ աննշան դոզաներով օգտագործելու դեպքում դրանք ոչ միայն որևէ բացասական հետևանք չեն թողնում, այլև խթանում են մտավոր աշխատունակությունը։ Անասնաբուծության մեջ օգտագործվող խթանիչները կիրառելիս պետք է խստորեն առաջնորդվել գիտության հանձնարարականներով։ Նույն խթանիչը կարող է միանգամայն տարբեր ազդեցություն ունենալ տարբեր տեսակի, նույնիսկ տարբեր տարիքի կենդանիների վրա։

Ընդհանուր առմամբ, կարելի է առանց տատանվելու ասել, որ կենդանիների քաշի և աճի խթանիչների գիտականորեն հիմնավորված կիրառումը բարերար ազդեցություն է գործում նրանց վրա։ Ինչ վերաբերում է մթերքի որակին, ապա այդ կենդանիների միսը, օրինակ, ավելի լավ է, քան բնական զարգացման պայմաններում։ Եվ դա հասկանալի է. խթանիչները բարելավում են օրգանիզմի ֆիզիոլոգիական պրոցեսները, արագացնում աճը, այլ կերպ՝ կենդանիներին ասես թե վաղահաս են դարձնում։ Իսկ վաղահաս խմբի կենդանիների միսը որակով լավագույնն է։

Մեր երկրի տարբեր տնտեսություններում և արտասահմանյան երկրներում կատարված հաշվարկները ցույց են տալիս, որ խթանիչների ճիշտ կիրառման դեպքում մսի ինքնարժեքը իջնում է 6—12 տոկոսով։ Դրանց օգտագործման անհրաժեշտությունն ու հնարավորությունը նկատելիորեն մեծանում են հատկապես անասնաբուծությունը արդյունաբերական հիմքի վրա փոխադրելու կապակցությամբ, երբ նույնիսկ 100 գ լրացուցիչ քաշաճը կարող է հազարավոր տոննա միս տալ։

Վերջին տարիներին ՍՍՀՄ-ում մեծ թափ ստացավ գյուղատնտեսության քիմիացումը և մեքենայացումը։ Մշակվեցին և արմատավորվեցին հողերի պարարտացման, մելիորացիայի և ագրոտեխնիկայի կատարելագործված եղանակներ, ինչպես նաև անասնաբուծական մթերքների արտադրության բարձրացման առավել արդյունավետ միջոցառումներ։

Գյուղատնտեսության բնագավառում գիտատեխնիկական առաջընթացի փայլուն ապացույցը իններորդ հնգամյակի երրորդ տարվա արդյունքներն են։ 1973 թ. մեծ ու բեղմնավոր աշխատանքի տարի եղավ կոմունիստական շինա-

յարության բոլոր ասպարեզներում։ Հաղթանակով պսակվեց գյուղատնտեսության հետագա վերելքի համար մղվող պայքարը՝ ռեկորդային բերք ստացանք։ Հացահատիկի համախառն արտադրանքը ՍՍՀՄ-ում կազմեց 222,5 մլն տոննա։ Այդպիսի բերք մեր երկիրը երբեք չէր ստացել։ Պետության շտեմարանները լցվեց ավելի քան 90 մլն տոննա հացահատիկ։ Մթերվեց ավելի քան 7,6 մլն տոննա «սպիտակ ոսկի»։ Զգալի չափերով ավելացավ կարտոֆիլի, շաքարի ճակնդեղի, արևածաղկի և բանջարեղենի արտադրությունը։ Կոլտնտեսություններում ու սովխոզներում ավելացավ անասունների և թռչունների բոլոր տեսակների գլխաքանակը։ Հաջողությամբ կատարվեց անասնաբուծական մթերքների գնումների պլանը։ Բացառիկ բարձր էր գյուղատնտեսական հիմնական կուլտուրայի՝ հացահատիկի արտադրության տեմպը։ Միայն մեկ տարում՝ 1973-ին, 1972 թ. համեմատությամբ, հացահատիկի արտադրությունն ավելացավ 54,3 մլն տոննայով։ Ընդ որում, աճը տեղի ունեցավ հիմնականում ի հաշիվ բերքատվության բարձրացման։

Հնգամյակի վճռական տարում Հայաստանում ևս լուրջ նվաճումներ ձեռք բերվեցին գյուղատնտեսության հետագա վերելքի բնագավառում։ Գյուղատնտեսական արտադրանքն աճեց 11,6 տոկոսով, նախորդ տարվա համեմատությամբ համախառն արտադրանքն ավելացավ 50 մլն ռուբլով։ Գյուղատնտեսական արտադրանքի ընդհանուր ծավալը կազմեց 482 մլն ռուբլի, որը 24,1 տոկոսով ավելի է նախորդ հնգամյակի տարեկան միջին արտադրությունից։ Նրշված հաջողությունների մեջ գիտատեխնիկական առաջընթացին որոշիչ դեր է պատկանում։

Այս տարի մարտի 15-ին Ալմա-Աթայում արտասանած ճառում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը անդրադառնալով գյուղատնտեսության հետագա զարգացման գործում գիտության դերին, ընդգծեց. «Գյուղատնտեսությունը կարիք ունի նոր գաղափարների, որոնք կարողանան հեղափոխականացնել գյուղատնտեսական արտադրությունը, բույսերի ու կենդանիների բնույթի մասին ֆունդամենտալ գիտելիքների մշտական ներհոսի, որ կարող են տալ բիոքիմիան, գենետիկան, մոլեկուլյար կենսաբանությունը։ Գյուղատնտեսությունը սպասում է, որ գիտնականները կստեղծեն սերմացուի նոր, ավելի բերքատու և դիմացկուն սորտեր, անասունների է՛լ ավելի մթերատու ցեղեր»։

Տարակույս չկա, որ մեր երկրի գիտնականները իրենց ամբողջ տաղանդն ու եռանդը ի սպաս կդնեն կուսակցության առաջադրած խնդիրները պատվով կատարելու գործին։

Գյուղատնտեսության ասպարեզում գիտատեխնիկական հեղափոխության ծավալման նոր հորիզոններ են բացվելու առաջիկայում, երբ երկրի տնտեսական պոտենցիալը կաճի ավելի բարձր տեմպերով, իսկ գիտության և տեխնիկայի մերձեցումն ու համագործակցությունը կբարձրանան որակական նոր մակարդակի։

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ՓՈԽՇԱՀԱՎԵՏ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՈՒՂԻՈՎ

**ԼԻԴԱ ՊԵՏՐՈՍՅԱՆ**

Արտաքին քաղաքականության բնագավառում ՍՄԿԿ Կենտկոմի և սովետական պետության գործունեությունը ելնում է հասարակական-տնտեսական տարբեր սիստեմների պետությունների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքներից։ Այդ կուրսն իր նոր հաստատումը գտավ ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խաղաղության ծրագրում։ «ՍՄԿԿ-ն ելել և ելնում է այն բանից, որ երկու սիստեմների՝ կապիտալիստական և սոցիալիստական, դասակարգային պայքարը էկոնոմիկայի, քաղաքականության և, իհարկե, գաղափարախոսության ոլորտում կշարունակվի։ Այլ կերպ չի էլ կարող լինել, որովհետև սոցիալիզմի և կապիտալիզմի աշխարհայացքը և դասակարգային նպատակները հակադիր և անհաշտ են։ Բայց մենք կձգտենք այն բանին, որ պատմականորեն անխուսափելի այդ պայքարը մտնի այնպիսի հունի մեջ, որը չսպառնա պատերազմներով, վտանգավոր կոնֆլիկտներով, սպառազինությունների չվերահսկվող մրցավազքով։ Դա հսկայական օգուտ կլինի ամբողջ աշխարհի խաղաղության գործի համար, բոլոր ժողովուրդների, բոլոր պետությունների շահերի համար» (Լ. Ի. Բրեժնև, ՍՍՀՄ կազմավորման 50 տարին, 1973, էջ 49)։

Կենսագործելով խաղաղության ծրագիրը, արդյունավետ ներգործելով միջազգային իրադրության վրա, Սովետական Միությունը հասավ այն բանին, որ 70-ական թվականների սկզբին համաշխարհային քաղաքականության զարգացման մեջ տեղի ունեցավ շրջադարձ, որը նշանավորվեց միջազգային լարվածության թուլացումով, սոցիալական տարբեր կարգ ունեցող պետությունների հարաբերություններում խաղաղ գոյակցության սկզբունքի ճանաչումով։

Խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքի հաստատման մեջ, ի թիվս այլ գործոնների, մեծ դեր խաղաց նաև տնտեսական ազդակը՝ կապիտալիստական պետությունների օբյեկտիվ շահագրգռվածությունը տնտեսական հարաբերությունների ընդլայնման ասպարեզում։ «Կա ավելի մեծ ուժ,— մատնանշում էր Վ. Ի. Լենինը,— քան թշնամի կառավարություններից կամ դասակարգերից ամեն մեկի ցանկությունը, կամքն ու վճիռը. այդ ուժը համաշխարհային ընդհանուր տնտեսական հարաբերություններն են, որոնք նրանց ստիպում են ոտք դնելու մեզ հետ հարաբերություններ պահպանելու այդ ուղին» (Երկեր, հ. 33, էջ 172)։

Ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխությունը խիստ ինտենսիվացնում է գիտական հետազոտություններում համակենտրոնացման ու մասնագիտացման պրոցեսները։ Այդ պայմաններում ռացիոնալ մասնակցությունը աշխատանքի միջազգային բաժանմանը բոլոր երկրների համար դառնում է օբյեկտիվ պահանջ, հանրային աշխատանքի խնայողության կարևոր միջոց, գիտատեխնիկական առաջընթացի արագացման և արտադրաուժերի զարգացման անհրաժեշտ գործոն։

Իր հերթին, սոցիալիզմի երկրների հետ գործարար կապերի մեջ Արևմուտքի շահագրգռվածության բարձրացումը պայմանավորված է ինչպես սոցիա-

լիստական համագործակցության երկրների տնտեսական պոտենցիալի և, համապատասխանաբար, միջազգային առևտրական փոխանակության հնարավորությունների աճով, այնպես էլ կապիտալիզմի ներքին հակասությունների սրումով։ Ներքին շուկայի նեղությունը կապիտալիստական պետություններին ստիպում է ընդլայնել արտաքին տնտեսական էքսպանսիան, պայքար մղել վաճառահանման շուկաների, հումքի աղբյուրների և կապիտալի կիրառման ոլորտների համար։

Սովետական Միությունը, որպես միջազգային տնտեսական համագործակցության մասնակից, ունի մի շարք անվիճելի առավելություններ՝ ժողովրդական տնտեսության անճգնաժամ ու անշեղ զարգացման վրա հենվող արտաքին առևտրի զարգացման բարձր տեմպերը, ինչպես արտահանման առաջարկի, այնպես էլ ներմուծման պահանջարկի բացառիկ լայն հաշվենցուցակը, որն արտացոլում է նրա էկոնոմիկայի բազմաճյուղ բնույթը և զարգացման բարձր մակարդակը։ Սովետական Միությունը մի տարողունակ ու շարունակ ընդլայնվող շուկա է, որտեղ կարող են իրացվել բազմապիսի ապրանքներ։ Միաժամանակ նա բազմատեսակ ապրանքների խոշոր մատակարարող է համաշխարհային շուկայում։ Այս ամենը կայուն բազա է ստեղծում ՍՍՀՄ-ի հետ առևտրատնտեսական կապերը մշտապես ընդլայնելու համար։ Չնայած դրան, մինչև վերջին ժամանակներս Սովետական Միության գործարար կապերը կապիտալիստական երկրների հետ իրականացվում էին շատ համեստ մասշտաբներով։ Այսպես, եթե սոցիալիստական երկրներն ու արդյունաբերական տեսակետից զարգացած կապիտալիստական երկրները, միասին վերցրած, տալիս են համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մոտ 90 տոկոսը, ապա միջազգային ապրանքաշրջանառության մեջ նրանց փոխադարձ առևտրի բաժինը կազմում է միայն 3 տոկոս։ ՍՍՀՄ ապրանքաշրջանառությունը ԱՄՆ-ի հետ 1960 թ. կազմում էր ընդամենը 76,1, Ֆրանսիայի հետ՝ 183,3, ԳՖՀ-ի հետ՝ 286,2, Ճապոնիայի հետ՝ 124 մլն ռուբլի։

Կապիտալիստական երկրների հետ ՍՍՀՄ ապրանքաշրջանառության աննշան ծավալը բացատրվում էր նախ այն բանով, որ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Արևմուտքում ստեղծվեցին սոցիալիստական երկրների հետ առևտրին խանգարող արհեստական խոչընդոտներ, նպատակ ունենալով սոցիալիզմը խեղդել տնտեսապես։ ԱՄՆ-ը, իսկ նրա ճնշման տակ նաև կապիտալիստական մյուս երկրները, Սովետական Միության հետ կատարվող առևտրի նկատմամբ սկսեցին կիրառել մեկը մյուսին հաջորդող բազմաթիվ խտրական միջոցներ։ 1951 թ. ԱՄՆ-ը հրաժարվեց Սովետական Միությանը տրամադրել առևտրի առավել բարենպաստ ռեժիմ։ 1952 թ. ԱՄՆ ներմուծվող սովետական ապրանքները սկսեցին հարկվել ավելի բարձր մաքսերով, քան մյուս երկրների ապրանքները։ Արգելվել էր նաև արտահանման պետական վարկեր տրամադրել սոցիալիստական երկրներին, և դժվարություններ էին ստեղծվել արտաքին առևտրական բեռների փոխադրման համար։

Դրա հետևանքով, օրինակ, ՍՍՀՄ-ից ներմուծվող էլեկտրազոդման սարքավորումների վրա դրվող մաքսերը արևմտյան երկրների համանման սարքավորումների մաքսերի համեմատ բարձր են ավելի քան 8,7, մշակված մորթեղենինը՝ 10, չուգունինը՝ 30 անգամ և այլն։ Մի շարք ապրանքներ, որոնք Ամերիկայի Միացյալ Նահանգներ են ներմուծվում առանց մաքսի, ՍՍՀՄ ներմուծվելիս հարկվում են բարձր տարիֆներով։ Կապիտալիստական մի շարք երկրների կառավարություններ արգելում են արդյունաբերական արտադրանքի առանձին տեսակներ արտահանել ՍՍՀՄ այն պատրվակով, թե իբր դրանք կարող են օգտագործվել ՍՍՀՄ ռազմական պոտենցիալը մեծացնելու համար։

Տնտեսական բլոկադան, սակայն, որպես սոցիալիզմի դեմ պայքարելու միջոց, դրսևորեց իր կատարյալ սնանկությունը։ ՍՍՀՄ տնտեսական հզորության աճը, մեր պետության առևտրա-տնտեսական կապերի հաջող զարգացումը աշխարհի շատ երկրների հետ ակնառու կերպով ցուցադրեցին Սովետական Միությունը մեկուսացնելու փորձերի լիակատար ձախողումը։ Սոցիալիստական համագործակցության երկրները ոչ միայն վերականգնեցին իրենց էկոնոմի-



կան, այլև երկու սիստեմների տնտեսական մրցության ընթացքում սկսեցին ձեռք բերել էական հաջողություններ։

Այդ պայմաններում, ահա, 60-ական թվականների երկրորդ կեսից կապիտալիստական երկրներում սկսեցին ավելի վճռականորեն հանդես գալ սոցիալիստական համագործակցության երկրների նկատմամբ իրենց պետությունների վարած առևտրա-տնտեսական քաղաքականության դեմ՝ հանուն ՍՍՀՄ-ի հետ գործարար կոնտակտների ակտիվացման։ «Յունայթեդ Սթեյթս նյուզ ընդ ուորլդ ռիփորթ» շաբաթաթերթը գրել է. «Մենք այլևս չենք կարող շռայլություն թույլ տալ մեզ ու սահմանափակել առևտուրը ՍՍՀՄ-ի հետ այն ժամանակ, երբ այդ քաղաքականությունը բացարձակապես ոչ մի արդյունք չի տալիս»։

Հասարակական-քաղաքական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքը կոնկրետ մարմնավորվել է Ֆրանսիայի, ԳՖՀ-ի, Ճապոնիայի, ԱՄՆ-ի և արդյունաբերական տեսակետից զարգացած կապիտալիստական մյուս երկրների հետ ՍՍՀՄ-ի ունեցած գործարար հարաբերությունների ընդլայնման մեջ։

Այժմ Սովետական Միության արտաքին տնտեսական հարաբերություններն ընդգրկում են աշխարհի ավելի քան հարյուր պետություն։ Դրանց մեջ գլխավոր տեղը և՛ արտաքին առևտրական շրջանառության ծավալով (մոտ 65 տոկոս), և՛ ձևերի բազմազանությամբ, իհարկե, գրավում են սոցիալիստական համագործակցության երկրները։

Արտաքին առևտրի ասպարեզում մեր պետության համար կարևոր պարտնյորներ են նաև Արևմտյան Եվրոպայի կապիտալիստական երկրները։ Դրանց բաժին է ընկնում ՍՍՀՄ արտաքին առևտրի ավելի քան 16 և արդյունաբերական տեսակետից զարգացած կապիտալիստական բոլոր երկրների հետ նրա ապրանքաշրջանառության մոտ 70 տոկոսը։ ՍՍՀՄ ամբողջ ապրանքաշրջանառությունը զարգացած կապիտալիստական երկրների հետ 1972 թ. հասավ 5,9 մլրդ ռուբլու, որը կազմում է նրա արտաքին առևտրական շրջանառության 22,5 տոկոսը։

Մեր երկրի արտաքին տնտեսական հարաբերություններում առանձնահատուկ տեղ են գրավում սովետա-ամերիկյան գործարար կապերը, որոնք վերջին տարիներին նկատելիորեն աշխուժացել են։ Երկու երկրների տնտեսական հարաբերությունների զարգացմանը նպաստեցին ԱՄՆ-ի դիրքերի թուլացումը համաշխարհային շուկաներում և վալյուտա-ֆինանսական բնագավառում, վճարման բալանսի դեֆիցիտը, հումքով ինքնաապահովվածության կրճատումը և մրցակցության սրումը կապիտալիստական աշխարհի գլխավոր առևտրական պարտնյորների՝ Արևմտյան Եվրոպայի երկրների ու Ճապոնիայի հետ։ Վերջիններս, ինչպես հայտնի է, նորմալ առևտրա-տնտեսական հարաբերություններ են զարգացնում Սովետական Միության հետ։

ԱՄՆ-ի հետ գործարար կապերի ընդլայնման այս նոր փուլի սկիզբը դրվեց սովետական ղեկավարների և ԱՄՆ-ի պրեզիդենտ Ռ. Նիքսոնի բանակցությունների ընթացքում, որոնք տեղի ունեցան Մոսկվայում, 1972 թ. մայիսին։ Երկու երկրների հարաբերությունների նորմալացման և փոխադարձ համագործակցության նոր նպաստավոր հեռանկարներ բացվեցին ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի՝ 1973 թ. հունիսին ԱՄՆ կատարած այցից հետո։

ԱՄՆ-ի հետ ՍՍՀՄ ապրանքաշրջանառությունը մի շարք տարիների ընթացքում բնութագրվում էր հետևյալ ծավալներով.

(միլիոն ռուբլիներ)

| | 1946 թ. | 1955 թ. | 1965 թ. | 1970 թ. | 1972 թ. |
|---|---|---|---|---|---|
| Շրջանառություն | 303,9 | 21,9 | 89,2 | 160,9 | 537,8 |
| Արտահանում | 90,9 | 21,4 | 31,0 | 57,8 | 76,4 |
| Ներմուծում | 213,0 | 0,5 | 58,2 | 103,1 | 461,4 |

Սովետական Միությունը ԱՄՆ-ից ներմուծում է ժողովրդատնտեսական մեծ նշանակություն ունեցող ապրանքա-նյութական ռեսուրսներ։ Հիմնական

տեղը գրավում են մեքենաներն ու սարքավորումները, ժողովրդական սպառման արդյունաբերական ապրանքները, սև մետալուրգիայի արտադրանքը, քիմիական նյութեր, հումք և կիսաֆաբրիկատներ՝ տեքստիլ արդյունաբերության համար։

ՍՍՀՄ-ի համար կարևոր նշանակություն ունի այնպիսի սարքավորումների ներմուծումը, որոնք անհրաժեշտ են քիմիական, մետալուրգիական, ավտոմոբիլային, թղթի-ցելյուլոզայի, թեթև և սննդի արդյունաբերության ճյուղերի զարգացումն արագացնելու համար։ Կատարված հաշվարկներով, ՍՍՀՄ արդյունաբերության բոլոր ճյուղերում գործարկվող սարքավորումների ընդհանուր ծավալի մոտ 15 տոկոսը վերջին ժամանակներս կազմել են ներմուծված սարքավորումները։

Հարկ է նշել, որ սովետական ներմուծման կառուցվածքը մինչև վերջերս լրիվ չէր արտացոլում մեր ժողովրդական տնտեսության օբյեկտիվ պահանջները ամերիկյան ապրանքների նկատմամբ։ Սոցիալիստական երկրների համար արտահանման վարկավորման բացակայությունը դժվարացնում էր սովետական պատվերների տեղաբաշխումը ԱՄՆ-ում, մեծ թվով ապրանքներ սոցիալիստական երկրներ արտահանելու արգելքը և այլ խոչընդոտներ էականորեն դժվարացնում էին սովետական գնումները ԱՄՆ-ում։

1969 թ. վերջին ամերիկյան կոնգրեսն ընդունեց արտահանումը կարգավորելու մասին օրենքը, որը վերահսկողությունից ազատեց ավելի քան 500 տեսակ ապրանքներ, թույլատրեց ՍՍՀՄ արտահանել որոշ տեսակի մեքենաներ ու սարքավորումներ։ 1971 թ. ԱՄՆ-ի արտահանման-ներմուծման բանկին թույլատրվեց վարկավորել արտահանումը ՍՍՀՄ։ Դրանով զգալիորեն մեծացան ՍՍՀՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների հետ առևտուրն ընդլայնելու հնարավորությունները։

ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի ապրանքաշրջանառության զարգացումը պետք է տեղի ունենա նաև սովետական ապրանքների արտահանումը մեծացնելու հաշվին։ Մինչդեռ ՍՍՀՄ-ի հնարավորություններն այդ առումով դեռ քիչ են ուսումնասիրված Արևմուտքում։ Սովետական Միությունն ունի արդյունաբերական հսկայական պոտենցիալ և, բնականաբար, շահագրգռված է սեփական պատրաստի արտադրանքի արտահանումը մեծացնելու գործում։ Սովետական արդյունաբերության մի շարք ճյուղերում արտադրանքի որակը և տեխնիկական մակարդակն ապահովում են արտադրատեսակների բարձր մրցունակությունը արտաքին շուկաներում, և պատահական չէ, որ մեզ մոտ զգալի մեծություն է կազմում արտահանման համար հատկացվող արտադրանքի բաժինը։ Օրինակ, մարդատար ավտոմեքենաների, լուսանկարչական ապարատների թողարկման մեջ այդ բաժինը կազմում է մոտ 30, մետաղահատ հաստոցների, էքսկավատորների, տրակտորների, բեռնատար ավտոմեքենաների արտադրության մեջ՝ 6—7 տոկոս և այլն։

Մեր պետության հետ առևտրի հետագա ընդլայնումը կարելի է ապահովել սովետական արտահանման կառուցվածքը բարելավելու և, առաջին հերթին, տեխնիկապես կատարյալ մեքենաների ու սարքավորումների արտահանումը մեծացնելու հնարավորության դեպքում։

ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի փոխադարձ առևտրի ծավալը դեռևս մեծ չէ։ Այսպես, ԱՄՆ-ի բաժինը ՍՍՀՄ արտաքին առևտրական շրջանառության մեջ 1972 թ. կազմեց 2 տոկոսից մի քիչ ավելի, իսկ ՍՍՀՄ-ի բաժինը ԱՄՆ-ի առևտրի շրջանառության մեջ՝ մեկ տոկոսից էլ պակաս։ Առևտրի այդպիսի ծավալը նրանց միջև չի համապատասխանում երկու երկրների ռեալ հնարավորություններին ու տնտեսական պոտենցիալին. ուստի, ինչպես նշվում է 1973 թ. հունիսի 24-ին ստորագրված սովետա-ամերիկյան համատեղ կոմյունիկեում, առևտրի ընդհանուր ծավալը առաջիկա երեք տարում պետք է աճի մինչև 2—3 մլրդ դոլար։ Առևտրի հարցերի վերաբերյալ սովետա-ամերիկյան հանձնաժողովի երրորդ սեսիայում, որը տեղի ունեցավ անցյալ աշնանը, նշվեց, որ ընդհանուր ապրանքաշրջանառությունը ՍՍՀՄ-ի ու ԱՄՆ-ի միջև արդեն 1973 թ. առաջին յոթ



ամիսներին գերազանցեց նախորդ երկու տարիների փոխադարձ առևտրական գործառնությունների ամբողջ ծավալը։

ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի առևտրական կապերի բարելավմանը կնպաստի առևտրական ռեֆորմի մասին օրենքի հաստատումը, որի համաձայն պրեզիդենտը իրավունք կստանա ՍՍՀՄ-ի համար ապահովել առավել բարենպաստման ռեժիմը առևտրում։

ԱՄՆ-ի, ինչպես նաև կապիտալիստական մյուս երկրների հետ ՍՍՀՄ-ի հետագա տնտեսական համագործակցության հեռանկարները պահանջում են առևտրական փոխանակության հետ միասին ընդլայնել նաև փոխշահավետ արտադրական համագործակցությունը։ Արդեն այժմ կնքված են մի շարք երկարաժամկետ համաձայնագրեր հումքի վերամշակման, արտադրության մասնագիտացման մասին, մեր երկրի բնական հարուստ պաշարների, մասնավորապես, նավթի ու գազի յուրացման գործում սովետական կազմակերպությունների ու հիմնարկությունների հետ կոոպերացման վերաբերյալ։ Համագործակցության նման ձևը շահավետ է երկու կողմերի համար։ Վառելիքի և հումքի շատ տեսակների ռեսուրսներն ապահովելու խնդիրն այժմ ամենասուր պրոբլեմներից մեկն է կապիտալիստական աշխարհում։

Սովետական Միության համար արտադրական համագործակցությունը նախ և առաջ նշանակում է բնական հարստությունների յուրացման արագացում և արտադրական նոր կարողությունների ստեղծում։ Այդ ռեսուրսները մշակելու համար օգտագործվում են արտասահմանյան վարկերը, որոնց հաշվին ձեռք են բերվում սարքավորումներ, նյութեր՝ նորաստեղծ օբյեկտների արտադրանքի մատակարարումներով այդ վարկերի հետագա վճարմամբ, այսինքն՝ փոխհատուցման հիման վրա։ Այսպես, ամերիկյան «Սուինդելլ-Դրեսլեր» ֆիրմայի հետ կնքված է պայմանագիր՝ ԿամԱԶ-ի ձուլարանի համար կաղապարման ավտոմատ գծեր մատակարարելու մասին, «Օքսիդենթըլ պետրոլեում» ընկերության հետ 20 տարի ժամկետով ստորագրված է 8 մլրդ ռուբլու համաձայնագիր՝ Կույբիշևի շրջանում հանքային պարարտանյութերի արտադրության արդյունաբերական խոշոր կոմպլեքսի շինարարության մասին, ԱՄՆ-ից՝ սուպերֆոսֆատի թթվի և Սովետական Միությունից՝ քիմիական ապրանքների փոխադարձ մատակարարումների մասին։ Այդ ձեռնարկությունների համար ԱՄՆ-ում գնվող սարքավորումների արժեքը լրիվ վճարվելու է դրանց արտադրանքով։

Փոխհատուցման հիման վրա երկարաժամկետ համաձայնագրեր են կնքվել նաև արտասահմանյան այլ ֆիրմաների հետ։

Նախնական համաձայնություն կա նաև սարքավորումներ, նյութեր գնելու և այլ ծախսերի համար վարկերի մասին, որոնք կապված են Յակուտիայի գազը ԱՄՆ-ի արևմտյան ծովափը մատակարարելու հետ։

Սովետա-ամերիկյան գործարար հարաբերությունների ընդլայնման համար մեծ նշանակություն ունի գիտատեխնիկական համագործակցության զարգացումը, այդ թվում և պատենտների ու լիցենզիաների փոխանակումը, տեխնիկական անձնակազմի ուսուցումը, գիտական հետազոտությունների համատեղ անցկացումը։ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի գիտական պոտենցիալները հնարավորություն են ընձեռում ծավալել այդպիսի համագործակցություն, որը շահավետ է մասնակից երկու կողմերի համար էլ և կնպաստի գիտական ուժերն ու ռեսուրսները խնայելուն, կկանխի մեծ ծախսերի հետ կապված զուգահեռ հետազոտությունները։

Գիտատեխնիկական համագործակցության մասին համաձայնագրեր են կնքվել ամերիկյան այնպիսի խոշոր ֆիրմաների հետ, ինչպիսիք են՝ «Ջեներալ էլեկտրիկը» (էլեկտրամեքենաշինություն), «Հյուլետ-Պակկարդը» (բժշկական էլեկտրոնիկա, գիտական չափիչ գործիքներ և մինի-էՀՄ-երի կիրառում), «Օքսիդենթըլ պետրոլեումը» (մետաղների մշակման նոր պրոցեսներ, պինդ թափոնների օգտագործում) և այլն։

Հաջողությամբ են կենսագործվում նաև ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև կնքված համաձայնագրերը տիեզերքի ու համաշխարհային օվկիանոսի ուսումնասիր-

ման, շրջապատող միջավայրի պահպանման, բժշկության, ատոմային էներգիայի խաղաղ օգտագործման և այլ բնագավառներում:

Չնայած ՍՍՀՄ-ի և կապիտալիստական երկրների միջև գործարար համագործակցության զարգացման ասպարեզում ձեռք բերված հաջողություններին, Արևմուտքում դեռևս բավական շատ են «սառը պատերազմի» կողմնակիցները, որոնք ձգտում են խանգարել հարաբերությունների նորմալացմանը:

Ամեն կարգի «էքսպերտներ» ու «մասնագետներ» «նախազգուշացնում են» իրենց կառավարություններին՝ սոցիալիստական աշխարհի հետ առևտրական համագործակցության հեռանկարների նկատմամբ չափից ավելի լավատեսությունից: Ժամանակ առ ժամանակ ձայներ են լսվում, թե իբր Սովետական Միությունը միակողմանի շահ է ստանում այդ կապերի զարգացումից, թե սովետական կողմը «դուրս է քաշում արևմտյան առաջավոր տեխնոլոգիան», թե առևտրական փոխանակման մեջ նա առաջարկելու ոչինչ չունի:

Ոմանք փորձում են ՍՍՀՄ-ի հետ գործարար կապերի զարգացումը կախման մեջ դնել իրենց իսկ առաջադրած քաղաքական պահանջներից, որոնք, ըստ էության, նշանակում են միջամտություն մեր պետության ներքին գործերին: Այսպես, ԱՄՆ-ում, առևտրական ռեֆորմի մասին օրինագծի քննարկման ժամանակ, սովետա-ամերիկյան հարաբերությունների նորմալացման հակառակորդներն առաջարկեցին այդ օրինագծի մի ուղղում («Ջեքսոնի ուղղումը»), որի իմաստն այն է, թե ՍՍՀՄ-ին առավել բարենպաստման ռեժիմ տրամադրելը կախման մեջ դրվի սովետական քաղաքացիների էմիգրացիայի կանոնների փոփոխումից:

Այսպիսով, դեռևս ուժի մեջ են մնում խտրական որոշ կանոններ ու սահմանափակումներ՝ Սովետական Միության հետ կատարվող առևտրում:

Արտահայտելով ԱՄՆ-ի գործարար շատ շրջանների տեսակետը, «Ռեյդիո կորպորեյշն օֆ Ամերիկա» ընկերության փոխ-նախագահ Յու. Սեկուլոն հիշեցնում է, որ կասկածանքներն ու վախը կարող են շատ թանկ նստել ամերիկյան կողմին, եթե վերջինս բաց թողնի ՍՍՀՄ-ի հետ առևտուր անելու հսկայական հնարավորությունները:

Սովետական Միությունը կապիտալիստական երկրների հետ գործարար կապերը զարգացնելու մեջ շահագրգռված է ոչ բնավ միակողմանի առավելություններ ստանալու համար. փոխադարձ շահ, լիակատար հավասարություն, հրաժարում ամեն տեսակ խտրություններից՝ ահա միակ հնարավոր հիմքը ՍՍՀՄ-ի ու նրա առևտրական պարտնյորների տնտեսական հարաբերությունների համար:

Վերջերս Սովետական Միությունում տեղի ունեցավ սովետա-ամերիկյան բարձր մակարդակի երրորդ հանդիպումը, որը նոր փուլ է նշանավորում երկու ամենահզոր պետությունների հարաբերությունների ամրապնդման, միջազգային լարվածության հետագա մեղմացման ասպարեզում: Բանակցությունների ընթացքում ստորագրվեցին մի շարք նոր համաձայնագրեր, որոնք էական նշանակություն ունեն կյանքի տարբեր ոլորտներում երկու երկրների փոխշահավետ համագործակցության զարգացման համար: Գործարար կապերի ամրապնդման առումով առանձնահատուկ կարևորություն ունի տնտեսական, արդյունաբերական ու տեխնիկական համագործակցությանը նպաստելու վերաբերյալ երկարաժամկետ համաձայնագիրը:

Սոցիալիստական և կապիտալիստական երկրների միջև արդյունավետ համագործակցության զարգացման նշանակությունը զուտ տնտեսական նկատառումներով չի սպառվում: ՍՍՀՄ-ը ձգտում է գործարար կապերի ընդլայնումն օգտագործել նաև իբրև առավել բնական ու հուսալի հիմք՝ կապիտալիստական երկրների հետ նորմալ հարաբերությունները պահպանելու, լարվածությունը թուլացնելու և միջազգային անվտանգությունն ամրապնդելու համար:

---

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՆԵՐԳՈՐԾՈՒԹՅԱՆ ՄԵԹՈԴՆԵՐԸ

**Բ. Թ. ՎԱՐԴԱՆՅԱՆ**
ՀԿԿ Երևանի Սովետականի շրջկոմի երկրորդ քարտուղար

*Կուսակցությունը միշտ հիշեցնում է, որ տնտեսական գործունեության արդյունքներն անհամեմատ ավելի մեծ կլինեն, եթե այն ճիշտ զուգակցվի մասսաների շրջանում տարվող կազմակերպական և գաղափարա-քաղաքական աշխատանքին: ՍՄԿԿ XXIV համագումարը ցույց տվեց, որ զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանում աշխարհայացքը, գիտելիքները, մարդկանց վարքագիծն ու մտածողությունն ավելի են ներգործում աշխատանքի արտադրողականության աճի և հասարակական հարաբերությունների կատարելագործման վրա: Զարգացած սոցիալիզմը նախորդ ֆորմացիաներից որակապես տարբերվում է սոցիալ-տնտեսական խնդիրների վեհությամբ ու մասշտաբայնությամբ, սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների բարոյա-քաղաքական միասնության ուժեղացմամբ, բնակչության բարեկեցության էական բարձրացմամբ, կուլտուրայի և կրթության անշեղ վերելքով, լայն մասսաների աշխատանքային ու քաղաքական բարձր ակտիվությամբ:*

*Մարդկանց սոցիալիստական գիտակցականության զարգացման շնորհիվ մեր օրերում յուրաքանչյուր անհատի համար պայմաններ են ստեղծվում ավելի ակտիվորեն մասնակցելու սովետների, արհմիությունների, կոմերիտմիության, արտադրական կոլեկտիվների, հասարակական կազմակերպությունների գործունեությանը: Մյուս կողմից, գիտատեխնիկական հեղափոխության և ինֆորմացիայի առաջընթացն ավելի է սրում կոմունիստական ու բուրժուական գաղափարախոսությունների պայքարը: Այդ պայքարում մեր հաջողությունը պայմանավորված է նաև նրանով, թե որքանով կկարողանանք կոմունիստական գաղափարայնությամբ տոգորել մասսաներին, հաղթահարել մեզ խորթ գաղափարների, սովորույթների, հայացքների ազդեցությունը:*

*Աշխատավորության կոմունիստական աշխարհայացքի ձևավորումը կուսկազմակերպությունների գաղափարական գործունեության միջուկն է: Դրա համար հարկավոր է արդյունավետ ու լիարժեք օգտագործել գաղափարական ողջ զինանոցը, յուրաքանչյուր անհատի սովորեցնել՝ խորությամբ հասկանալու և գիտակցորեն ըմբռնելու կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականության իմաստը:*

*Ընդամենը երկու տարվա կենսագրություն ունի Սովետականի շրջանը, բայց արդեն լուրջ քայլեր է արել տնտեսական առաջընթացի ճանապարհին: Կուսակցական, սովետական, հասարակական կազմակերպությունների, տնտեսական օրգանների գործունեության նպատակն է, որ բոլոր ձեռնարկությունները կատարեն ու գերակատարեն իրենց առաջադրանքները. կուսշրջկոմը միջոցներ է ձեռնարկում կուսակցական ու պետական, աշխատանքային ու արտադրա-*

կան կարգապահությունն ամենուրեք ամրապնդելու համար: Այժմ չունենք պլանները թերակատարող ձեռնարկություն, իսկ երկու տարի առաջ արտադրական վեց կոլեկտիվ սիստեմատիկաբար ետ էին մնում: Շրջանը 1973 թ. չորրորդ և ընթացիկ տարվա առաջին եռամսյակներին շահել է ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների սովետի, ՀԱՄԽ-ի և ՀԿԿ Երքաղկոմի, Երքաղսովետի փոխանցիկ դրոշները:

Տնտեսական հաջողությունները պայմանավորված են նաև աշխատավորության շրջանում ծավալած գաղափարա-քաղաքական գործունեության բովանդակության հարստացմամբ, խորացմամբ ու արդյունավետության բարձրացմամբ: Կուսակցական ու հասարակական կազմակերպությունները ջանում են ամրապնդել կոմունիստների գաղափարա-քաղաքական կոփվածքը, մշտապես բարելավել բանվորների, բնակչության տարբեր խավերի հետ տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքը, կիրառել նոր ձևեր ու մեթոդներ:

Գաղափարա-քաղաքական գործունեության լավագույն միջոց է դարձել կուսակցական լուսավորության ցանցը: Սակայն խորապես սխալ կլինի, եթե դրա շրջանակները սահմանափակենք միայն կոմունիստների քաղաքական ուսուցմամբ: Այժմ անկուսակցականները քաղպարապմունքներին մասնակցում են ըստ ցանկության, մինչդեռ կուսակցությունը պահանջում է յուրաքանչյուր սովետական մարդու աշխարհայացքի հիմքը դարձնել մարքսիզմ-լենինիզմը, նրան համակել գաղափարական համոզվածության ոգով: Կուսկազմակերպությունների խնդիրն է խորությամբ վերլուծել բնակչության ամենալայն խավերին քաղաքական գիտելիքներ հաղորդելու գործը, ամեն մի անհատի տոգորել հասարակական բարձր գիտակցականությամբ, սկզբունքային, դասակարգային վերաբերմունքով՝ կյանքի երևույթների ու փաստերի նկատմամբ:

Կուսշրջկոմը պրակտիկա է դարձրել ուսումնասիրել և գնահատել շրջանի հիմնարկ-ձեռնարկությունների կուսկազմակերպությունների և ադմինիստրացիայի գործունեությունը ո՛չ միայն արտադրական պլանների կատարման, այլև այն առումով, թե նրանք ինչպես են օգտագործում գաղափարական աշխատանքի միջոցները՝ կոլեկտիվներում հասարակական բարձր ակտիվություն ստեղծելու համար, ինչպես է նրանց յուրաքանչյուր անդամ, մասնավորապես կոմունիստը, պայքարում թերությունների, բացասական երևույթների ու փաստերի դեմ: Ահա մի օրինակ. երկար ժամանակ Երևանի կաթի կոմբինատը համարվում էր առաջավոր ձեռնարկություն. սիստեմատիկաբար կատարում էր պլանային առաջադրանքները: Բարձր արդյունքների համար քանիցս նրան շնորհվել են հանրապետական ու միութենական փոխանցիկ դրոշներ: Բայց կուսշրջկոմի ուսումնասիրություններից պարզվեց, որ կոմբինատի որոշ աշխատողներ կատարում են գողություններ, փաստաթղթերի անօրինական ու սխալ ձևակերպումներ, այնտեղ ստեղծվել է թերությունները կոծկելու մթնոլորտ: Մինչդեռ ձեռնարկության ղեկավարները, կոմունիստները հաշտվել էին ստեղծված վիճակի հետ: Կուսշրջկոմի բյուրոն խիստ պատասխանատվության ենթարկեց կոմբինատի ղեկավարությանն ու կուսբյուրոյի անդամներին:

Հանրահայտ է, թե արտադրության մարդկանց աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով տոգորման, նրանց պրոֆեսիոնալ վարպետության կատարելագործման, ինչպես նաև հոգեբանական ու բարոյական վերափոխման ինչպիսի հիանալի դպրոց է դարձել սոցիալիստական մրցությունը: Սակայն մեզանում շատ հաճախ այն դուրս չի գալիս տնտեսական խնդիրների լուծման շրջանակից, սահմանափակվում է արտադրական ցուցանիշներով, մինչդեռ անհրաժեշտ է պարտավորություններում տեղ հատկացնել նաև կոլեկտիվի սոցիալ-հոգեբանական գործունեության հարցերին:

Մրցության ծավալման համար կարևոր է գործի խելացի կազմակերպումը, սակայն ամենևին չի նշանակում, թե պետք է միայն լավ աշխատել: Հարկավոր է անհաշտվողականություն դրսևորել թերությունների հանդեպ, ճիշտ գնահատել ու վերլուծել մարդկանց աշխատանքային պարտականությունների կատարման, արտադրական ու պետական կարգապահության բարձրացման հարցերը: Այս տեսանկյունից ուսումնասիրելով և վերլուծելով սոցիալիստական



մրցության կազմակերպման ասպարեզում ոչ ալկոհոլային խմիչքների, Երքաղսովետի մեխանիկական, էլեկտրակենցաղային գործարանների կուսկազմակերպությունների ծավալած գործունեությունը, պարզեցինք, որ մրցության պայմաններում անտեսվել են այնպիսի կարևոր գործոններ, ինչպիսիք են՝ բանվորական ուժի հոսունությունը, կարգապահության խախտումները, մասնակցությունը հասարակական աշխատանքներին, մրցողների վարքագծում կատարվող փոփոխությունները:

Հանդես գալով ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը որոշակիորեն ընդգծեց, որ այժմ մասսաների շրջանում գաղափարական աշխատանքը կուսակցությունը կատարում է և կկատարի ավելի ու ավելի լայն ճակատով, հասարակական կյանքի, միջավայրի բոլոր գործոնների ճիշտ հաշվառմամբ ու օգտագործմամբ: Այդպիսի կարևոր գործոն է արտադրական կոլեկտիվը:

ՍՄԿԿ XXIV համագումարը որոշակի պահանջներ առաջադրեց աշխատավորական կոլեկտիվին, որտեղ ստեղծվում են ընկերական փոխօգնության հարաբերություններ, լայն ասպարեզ է բացվում աշխատանքային ու հասարակական ակտիվության բարձրացման համար:

Մեր օրերում գրեթե անհնարին է լուծել արտադրական, տեխնիկական-կազմակերպական, այսպես կոչված, գործնական հարցերը, առանց շոշափելու անհատի, կոլեկտիվի, հասարակության շահերը: Այս առումով էլ կուսշրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները լուրջ ուշադրություն են նվիրում ձեռնարկություններում ու հիմնարկություններում սկզբունքային փոխհարաբերությունների վրա հիմնված առողջ մթնոլորտի ապահովմանը: Շրջկոմն իր առջև խնդիր է դրել՝ ամենուրեք խորությամբ ուսումնասիրել ու բացահայտել նրանց գործունեության թերությունները, մշակել և իրականացնել գործնական միջոցառումներ՝ դրանք վերացնելու համար: Միայն վերջին երկու տարում ուսումնասիրել և գաղափարա-կազմակերպական աշխատանքի կոմպլեքսային միջոցառումներ ենք մշակել՝ «Ալմաստ», տեխնոլոգիական սարքավորումների գործարաններում, կոշիկի № 4 ֆաբրիկայում, № 3 համաշինարարական տրեստում, №№ 133, 96 դպրոցներում աշխատանքային ու պետական կարգապահության կոպիտ խախտման փաստերը, զազրախոսությունը, անսկզբունք վեճերն ու բանսարկությունները վերացնելու համար:

Ուսումնասիրությունները վկայում են, որ մարդկանց վարքագծի դրական փոփոխություններն ավելի հաճախ ի հայտ են գալիս այն կոլեկտիվներում, որտեղ տիրապետում է սկզբունքայնության, համերաշխության, հասարակական և անձնական շահերի ճիշտ զուգակցման, համընդհանուր կարգապահության մթնոլորտ: Նման կոլեկտիվներում ճիշտ ու արագ են վերադաստիարակվում կոմունիստական բարոյականության ու սոցիալիստական համակեցության կանոններից շեղված անհատները: Այժմ կուսշրջկոմը հետաքրքրվում է, թե հիմնարկ-ձեռնարկությունների կուսակցական և հասարակական կազմակերպությունները ինչպես են վերաբերվում այն մարդկանց, ովքեր դրսևորում են մանր-սեփականատիրական հոգեբանություն, անկայուն ու վնասակար վարքագիծ: Մեր երաշխավորությամբ մի շարք սկզբնական կուսկազմակերպություններ կքննարկեն նման անձանց, հատկապես կոմունիստների հարցը: Դա անհրաժեշտ է թեկուզ այն պատճառով, որ մեզանում աշխատողների ակտիվության ու հասունության չափանիշը երբեմն մեխանիկորեն համարվում է նրանց սոսկ արտադրական, աշխատանքային գործունեությունը:

Սկզբնական կուսկազմակերպությունները հաճախ չեն վերլուծում կոմունիստների վերաբերմունքը ընտանիքի, հասարակության, կոլեկտիվի նկատմամբ՝ նրանց տեսական-քաղաքական մտածելակերպի, բնավորության ու ամենօրյա վարքագծի դրսևորումների առումով: Շրջանում հաճախակի նկատվում են հակահասարակական դեպքեր: Հասկանալի է, որ դրանք կնվազեն, եթե մենք ավելի կոնկրետ և ժամանակին զբաղվենք մարդկանց դաստիարակության հարցերով:

Անհանդուրժելի է, որ կոլեկտիվում տարվող գաղափարական աշխատանքի

բարելավման հարցերը սակավադեպ են քննարկվում կուսակցական ժողովներում, կուսկոմիտեների ու բյուրոների նիստերում: Այսպես, շամպայն գինիների գործարանի սկզբնական կուսկազմակերպության ժողովներում և բյուրոների նիստերում վերջին երկու տարում քննարկված 29 հարցերից 19-ը վերաբերել են արտադրությանը, մնացածներն էլ կրել են խիստ ընդհանուր բնույթ, իսկ կարդացած 40 դասախոսություններից 28-ի թեման եղել է միջազգային դրությունը: Հազվադեպ են կազմակերպվել ձեռնարկության անմիջական պրոբլեմներին, մարդկանց կոմունիստական դաստիարակությանը նվիրված դասախոսություններ և այլ միջոցառումներ: Դժբախտաբար, օրինակը եզակի չէ: Կուսշրջկոմը մշակել և սկզբնական կուսկազմակերպություններին է ուղարկել անցկացվելիք միջոցառումների, դասախոսությունների, երեկույթների ինֆորմացիոն քարտեր: Յուրաքանչյուր եռամսյակի վերջում ամփոփում ենք սկզբնական կուսկազմակերպություններից ստացված առաջարկությունները և դրանց հիման վրա մշակում հաջորդ եռամսյակի միջոցառումների պլանը:

Ինչպես ամեն մի աշխատանք, այնպես էլ գաղափարականը ենթադրում է որոշակիություն, հստակություն և ճիշտ պլանավորում: Այդ կապակցությամբ երկրի լավագույն կուսկազմակերպություններում պրակտիկա է դարձել գաղափարական գործունեությունը պլանավորել, կոմպլեքսային լուծումները մշակել ավելի երկար ժամանակահատվածի համար: Ելնելով արդեն կուտակված փորձից, կուսշրջկոմն առաջարկել է «Արդկապ», «Ալմաստ» գործարանների, դպրոցների, տեխնիկումների սկզբնական կուսկազմակերպություններին՝ կազմել աշխատավորության կոմունիստական դաստիարակության հետագա բարելավման կոմպլեքսային հեռանկարային պլաններ, այդ գործում ներգրավել բուհերի հասարակագիտական ամբիոնների դասախոսներին, գիտահետազոտական ինստիտուտների աշխատողներին, մամուլի ներկայացուցիչներին: Մեր կարծիքով, աշխատանքի կազմակերպման նման պրակտիկան կարող է ցանկալի արդյունք տալ և ավելի որոշակիություն ու կոնկրետություն մտցնել յուրաքանչյուր կազմակերպության գործունեության մեջ: Կուսշրջկոմը, գաղափարական աշխատանքի կոորդինացման շրջանային հանձնաժողովի հետ, կազմել և բյուրոյում հաստատել է շրջկոմի գաղափարական գործունեության հեռանկարային պլանը առաջիկա երկու-երեք տարվա համար:

Բազմաթիվ կուսկազմակերպություններում կուսակցական աշխատանքի պրակտիկան համոզիչ ցույց է տալիս, որ անցկացվող միջոցառումների՝ դասախոսությունների, զրույցների, քաղինֆորմացիաների քանակական աճը միշտ չէ ցանկալի արդյունք տալիս: Հաճախ կարելի է հանդիպել այնպիսի փաստերի, երբ արտաքուստ թվում է, թե քաղաքական-գաղափարական գործունեության դրվածքը լավ է. տարեցտարի ավելանում է քաղուսուցման մեջ ընդգրկվածների, թերթերի ու ամսագրերի բաժանորդների թիվը, աճում է դասախոսությունների քանակը, մինչդեռ կոլեկտիվում թույլ է աշխատանքային կարգապահությունը, չեն նվազում հակահասարակական արարքները, առանձին անձինք շեղվում են բարոյական ընդունված նորմերից: Հետևաբար, ժամանակն է, որպեսզի կուսկազմակերպությունների գործունեության գնահատման չափանիշը համարվի ոչ միայն անցկացվող միջոցառումների քանակությունը, այլև այն, թե ինչպիսի արդյունք են տալիս դրանք, որքանով են անմիջականորեն նպաստում մարդկանց, կոլեկտիվի կյանքում կատարվող դրական փոփոխություններին:

Վերջին երկու տարում կուսշրջկոմը, հատուկ ուշադրություն նվիրելով գաղափարական գործունեության արդյունավետության բարձրացման և կատարելագործման հարցերին, շրջանի ակտիվի համար, տարբեր գիտահետազոտական և ստեղծագործական կազմակերպությունների հետ անցկացրել է գիտատեսական մի շարք կոնֆերանսներ՝ աշխատավորության կոմունիստական դաստիարակության հանգուցային պրոբլեմների վերաբերյալ:

Կուսակցությունը ժամանակին ու արդարացիորեն դատապարտեց այն սխալ պրակտիկան, երբ մարդկանց շրջանում տարվող գաղափարական աշխատանքի գնահատման չափանիշը համարում էին միայն տոննաներն ու տոկոսները:



Սակայն այդ սխալը դեռևս ամբողջովին չենք վերացրել: Այժմ էլ ոմանք փորձում են արտադրական ցուցանիշներով ծածկել կուսկազմակերպությունների, կոլեկտիվների կյանքի բացասական երևույթները: Նրանք մոռանում են, որ գաղափարական աշխատանքը, անմիջական ու կոնկրետ լինելով հանդերձ, տևական ժամանակ է պահանջում: Շատ հնարավոր է, որ այսօրվա համընդհանուր ճակատով անցկացված միջոցառումների արդյունքները մենք տեսնենք ու արժեքավորենք ավելի ուշ, նույնիսկ տասնամյակ հետո: Հետևաբար, գնահատման չափանիշը պետք է լինեն ոչ միայն կոնկրետ, առօրեական աշխատանքը, հաջողություններն ու թերությունները, այլև զարգացման տենդենցները, ընդհանուր մթնոլորտի փոփոխման բարերար ազդեցությունը մարդկանց գիտակցության վրա:

Աշխատավորության հետ տարվող գաղափարական աշխատանքի բարելավման համար հարկավոր է ըստ ամենայնի որոնել, գտնել և օգտագործել նոր ռեզերվներ: Մեր շրջանում գաղափարական գործունեության լավ ռեզերվ ու ձև է ըստ բնակության վայրի տարվող քաղաքական-մասսայական աշխատանքը: Նորաստեղծ թաղամասերում այժմ բնակվում է ավելի քան 75 հազար մարդ: Նրանց թվում կան արտադրության ու պատերազմի վետերաններ, մշակույթի գործիչներ, որոնց փորձի և ուժերի խելամիտ օգտագործումը կարող է լավ արդյունք տալ: Այդ նպատակով շրջկոմին կից ստեղծել ենք Քանաքեռ, Ջեյթուն, Ավան թաղամասերի բնակչության հետ տարվող քաղաքական-մասսայական աշխատանքի խորհուրդներ: Շրջանային ակտիվի ժողովում հաստատել ենք թաղամասային 30 խորհուրդ, որոնցում ընդգրկված են տվյալ միկրոշրջանի բնակիչներ, ծնողներ, դպրոցների մանկավարժներ: Խորհուրդների ստեղծումը միայն առաջին քայլն է, առաջիկայում լայն թափ կհաղորդվի դրանց գործունեությանը:

Մենք առանձնահատուկ ուշադրություն ենք նվիրում մարդուն շրջապատող միջավայրի ազդեցության հարցերի ուսումնասիրմանը: Չէ՞ որ քաղաքական գիտելիքների հաղորդումը երբեմն վերածվում է դատարկ կրակոցի, եթե այն չի հիմնավորված կյանքի կոնկրետ օրինակներով: Աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում հսկայական կարևորություն ունի դրական և բացասական երևույթների, ավանդույթների հետազոտությունը, վերլուծությունը և դրական փորձի խելացի օգտագործումը:

Գաղափարական աշխատանքի հաջողությունը մեծապես պայմանավորված է այդ գործին զինվորագրված կադրերի մարքս-լենինյան պատրաստականությամբ, տեսական-քաղաքական մակարդակով: Այդ կապակցությամբ շրջանում պրակտիկա է դարձել ղեկավար կադրերի, շրջանային կուսակցական, սովետական ակտիվի դիֆերենցված ուսուցման կազմակերպումը: Այժմ ուսումնական հաստատությունների ղեկավարների համար շրջկոմին կից գործում է «Կոմունիստական դաստիարակության պրոբլեմները» տեսական սեմինարը՝ երկու տարվա ծրագրով, արդյունաբերական, շինարարական և տրանսպորտի ձեռնարկությունների ղեկավարների համար՝ տնտեսագիտական երկամյա դպրոցը, սովետական, վարչական և այլ հիմնարկությունների ղեկավարների համար՝ «Մարդը և օրենքը» իրավաբանական երկամյա համալսարանը: Ծրագրային բազմաթիվ հարցերի վերաբերյալ զեկուցումներով հանդես են գալիս իրենք՝ ունկնդիրները, պարապմունքներն անցկացվում են տարբեր հիմնարկ-ձեռնարկություններում:

Ինչ խոսք, կյանքն օրեցօր նոր պահանջներ է առաջադրում: Երևան քաղաքի Սովետականի շրջանում բազմաթիվ պրոբլեմներ, դժվարություններ ու թերություններ կան, որոնք աստիճանաբար լուծվում, հաղթահարվում ու վերացվում են: Կուսշրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները կուսակցական պրոպագանդայի բովանդակության խորացման, նրա արդյունավետության բարձրացման համար կատարած և կատարելիք աշխատանքում ջանում են օգտագործել քաղաքական ներգործության բազմաթիվ ձևեր ու միջոցներ, մարդկանց դաստիարակել կոմունիստական վսեմ իդեալների, գաղափարական ու բարոյական անաղարտության ոգով:

Վ. Փալտյանը և ուրիշներ: Նրանք ուսումնասիրվող թեմաները կապում են շրջանի գյուղատնտեսության կոնկրետ էկոնոմիկայի հետ: Այսպես, հերթական պարապմունքում ուսումնասիրելով խաղողի այգիների մշակության վիճակը՝ նրանք պարզեցին, որ դրանց միջվազային տարածությունները մշակվում են ձեռքով: Այդ գործը տարվա ընթացքում չորս անգամ կատարելու դեպքում՝ յուրաքանչյուր հեկտարի վրա ծախսվում է 696 ռուբլի, մինչդեռ մեքենայական մշակմամբ՝ ընդամենը 6 ռուբլի: Դպրոցի ունկնդիրները հասան այն բանին, որ կոլտնտեսություններն ու սովխոզները տեխնիկան սկսեցին օգտագործել արդյունավետ ձևով, արտադրողաբար, զգալիորեն բարձրացրին դրա օգտակար գործողության գործակիցը: Նրանց անմիջական մասնակցությամբ և օգնությամբ հանրապետության մեջ առաջին անգամ կիրառվեց նաև ծխախոտի մեքենայական սածիլման և մշակության եղանակը:

Արդյունավետ են գործում նաև Այգեհովտի սովխոզի կոմունիստական աշխատանքի ութ դպրոցները, որոնցում ընդգրկված են 256 բանվորներ: Այստեղ, պարապմունքների ընթացքում, առանձնակի ուշադրություն է նվիրվում նորի ու առաջավորի ուսումնասիրությանն ու արմատավորմանը: Արտադրության առաջամարտիկներ, օղակավարուհի Ջինա Ալավերդյանի և օղակավար Սերյոժա Մելքումյանի փորձին ծանոթացել են կոմունիստական աշխատանքի գրեթե բոլոր դպրոցների ունկնդիրները: Զեկուցումներով անմիջականորեն հանդես են եկել իրենք՝ արտադրության այդ առաջամարտիկները: Նրանք պատմել են բարձր արդյունքների հասնելու ուղիների ու մեթոդների մասին: Օղակավարուհի Ջինա Ալավերդյանը արդեն մի քանի տարի է, ինչ ստանում է ծխախոտի ռեկորդային բերք: Բավական է նշել, որ 1972 թ. 5,5 հեկտարից, նախատեսված 33 հազարի դիմաց, ապահովել է 48 հազար, իսկ 1973 թ.՝ 47,4 հազար ռուբլու դրամական եկամուտ, իսկ Սերյոժա Մելքումյանի օղակը՝ նույնքան տարածությունից տնտեսությանը բերել է 54 հազար ռուբլի:

Արտադրության ինտենսիվ վարման ուշագրավ օրինակ է տալիս Սևքարի սովխոզը: Դրան նպաստում են նաև կոմունիստական աշխատանքի դպրոցները: Ի տարբերություն Այգեհովտի սովխոզի, որտեղ դպրոցները ստեղծված են ըստ բրիգադների, այստեղ դրանք կոմպլեկտավորվել են ըստ բնագավառների՝ անասնապահական, ծխախոտագործական, այգեգործական, մեխանիզատորների: Հինգ դպրոցներում էլ ուսուցումը շաղկապվում է արտադրության կոնկրետ խնդիրներին: Տեսական հարցերը պարզաբանելու համար պրոպագանդիստներն օգտվում են սովխոզի էկոնոմիկայից վերցրած օրինակներից: Ունկնդիրները ո՛չ միայն յուրացնում են տնտեսագիտական պրոբլեմները, ձեռք բերում տեսական ու քաղաքական գիտելիքներ, այլև նպաստում սովխոզի առջև ծառացած խնդիրների լուծմանը, դրանք ծառայեցնում տնտեսության առաջընթացին: Անասնապահական մթերքների արտադրության և վաճառքի ասպարեզում բարձր արդյունքների հասնելու համար սովխոզը 1972 թ. չորրորդ եռամսյակում և 1973 թ. առաջին կիսամյակում հաղթող ճանաչվեց համամիութենական սոցմրցությունում, նվաճեց ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրության ու ճյուղային արհմիության Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշը և պարգևատրվեց «Ժիգուլի» ավտոմեքենայով, 1973 թ. արդյունքների համար՝ ՀԿԿ շրջկոմի և շրջսովետի գործկոմի փոխանցիկ դրոշը: 1973 թ. որոշակի հաջողությունների հասան նաև ծխախոտագործները: Արտադրության արդյունավետության չափանիշ է, մասնավորապես , հումքի բարձր որակը. մեկ կգ ծխախոտի եկամուտը կազմեց 2 ռուբլի 78 կոպեկ, որը շրջանում ամենաբարձր ցուցանիշն է: Այս հաջողություններում իրենց արժանի ներդրումն ունեն կոմունիստական աշխատանքի դպրոցների ունկնդիրները, որոնք առաջավոր անասնապահներ են, ծխախոտագործներ ու տրակտորիստ-մեքենավարներ:

Կուսշրջկոմը և սկզբնական կուսակցական, կոմերիտական, արհմիութենական կազմակերպությունները այսուհետև ևս ամեն ինչ կանեն՝ արտադրության մարդկանց աշխատանքային դաստիարակության, ակտիվության ու նախաձեռնության զարգացման կարևոր օղակի՝ կոմունիստական աշխատանքի դպրոցների, գործունեությունն արմատապես բարելավելու համար:

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ՉԱՓԱՆԻՇԻ ՇՈՒՐՋ*

Արտադրական այս կամ այն պրոցեսի արդյունավետությունը գնահատելիս անհրաժեշտ է սահմանել այն չափանիշը, որը հանդիսանար արտադրության արդյունավետության բարձրացումը որոշող վերարտադրական փոխադարձ կապերի ամփոփիչ արտահայտությունը: Ընդ որում, քանակական արտահայտություն ստանալու համար արդյունավետության չափանիշը պետք է բավականաչափ կոնկրետ լինի:

Աշխատանքի հասարակական արտադրողականության բարձրացումն առավել ընդհանուր չափով է արտահայտում արդյունավետության աճը: Այն խարսխվում է տեխնիկական պրոգրեսի վրա, պրոգրես, որը, այսպես կոչված, մենուղղությամբ չէ: Դրա համար բնորոշը բազմատարբերակայնությունն է, որի հետևանքով աշխատանքի ֆոնդահագեցվածության և դրա արտադրողականության աճի միջև ամենատարբեր հարաբերակցություններ են առաջանում ժողովրդական տնտեսության մեջ: Սակայն, տեխնիկական պրոգրեսի ամբողջ բազմատարբերակայնությամբ հանդերձ, էկոնոմիկան վերջին հաշվով այնպիսի ընթացք է ընդունում, որը հանգում է ֆոնդատարողության իջեցման և խթանում ընդլայնված վերարտադրության առավել արդյունավետ տիպի զարգացմանը:

Տեխնիկական պրոգրեսը մեծ մասամբ զուգորդվում է ձեռնարկության արտադրակարողության մեծացմամբ: Սակայն պրակտիկան ցույց է տալիս, որ ձեռնարկությունների արտադրակարողությունները մեծացնել հարկավոր է լոկ մինչև տնտեսապես հիմնավորված որոշակի չափերով: Հետևաբար, գնահատելով այս կամ այն արտադրության արդյունավետությունը, հարկավոր է միշտ նկատի ունենալ արտադրակարողությունների լավագույն պայմանների ամբողջության կողմնորոշիչը, որի որոնման առթիվ ամենատարբեր կարծիքներ են արտահայտվում:

Արտադրության կապիտալիստական եղանակի պայմաններում ձեռնարկությունների արտադրակարողության աճը՝ տեխնիկայի զարգացման առնչությամբ, մեծ մասամբ որոշվում է առավելագույն շահույթի ստացումով, տվյալ արտադրանքի վաճառահանման շուկայում մեծ բաժին զավթելով, մրցակցային ունակության աճով, սոցիալական և քաղաքական ասպարեզներում ֆիրմայի դիրքավորման ուժեղացումով (տե՛ս, օրինակ, Reboud Louis, Dimension des entreprises, concenrationet cencurrence, «Actual Economic» (Canada), 1966, № 3, p. 429-457):

Նման պայմաններում արտադրածախքերի շարժման այնպիսի մի օրինաչափություն է նկատվում, որի առկայությամբ, արտադրածավալի մեծացման հետ միաժամանակ հարաբերականորեն իջնում են արտադրածախքերը, այնուհետև այդ իջեցումը դադարում է, իսկ հետո արտադրածախքերը սկսում են աճել:

Արտադրածախքերի փոփոխման օրինաչափության այդպիսի մեկնաբանումը՝ ելնելով արտադրածավալից, բավականաչափ հիմնավորված չէ: Այստեղ

* Տպագրվում է հարցադրման կարգով: Խմբ.:

ծախքերի աճի օրինաչափության հիմքում ընկած է նվազող արտադրողականության օրենքը, ըստ որի, արտադրության մի որոշ ծավալի հասնելուց հետո արտադրանքի միավորի վրա կատարվող ծախքերն սկսում են մեծանալ արտադրության հետագա աճին համեմատ։ Մաթեմատիկական առումով, իհարկե, կարելի է վերցնել արտադրածախքերի կախումը դրա չափերից։ Բայց դա տեղի կունենա, եթե արտադրաքանակը և դրա մյուս գործոնների ազդեցությունը մնում են անփոփոխ։ Իրականում այդպիսի դրություն շատ հազվադեպ է լինում պրակտիկայում։ Ահա թե այդ առթիվ ինչ է գրել Ի. Բլյումինը. «Նվազող արտադրողականության օրենքը ոչ մի գիտական հիմք չունի...։ Այդ օրենքի կողմնակիցները որպես ելակետ են ընդունում այն մտացածին դեպքը, երբ ձեռնարկությունում՝ արտադրական ապարատի անփոփոխ մեծության պայմաններում, միակողմանի է մեծանում աշխատուժը, այսինքն՝ երբ, վերջին հաշվով, աշխատուժը ռացիոնալ չի օգտագործվում։ Միանգամայն ակնհայտ է, որ նման դեպքը ոչ նորմալ է, ոչ էլ տիպական (И. Г. Блюмин. «О современной буржуазной политической экономии», М., 1958, стр. 36—37)։

Նվազող արտադրողականության օրենքն ընդհանուր բնույթ կրել չի կարող։ Ուստի, արտադրության չափերից դրա ծախքերի կախման օրենքը նշված ձևով դուրս բերելու հիմք չկա։ Արտադրանքի միավորի վրա կատարված ծախքերի կախումը արտադրաչափերից, որպես կանոն, դրսևորվում է հիպերբոլակերպ։ Վերջինս, արտադրածավալի աճի ինչ-որ մի հատվածում ցույց է տալիս արտադրածախքերի նվազում, իսկ այնուհետև դանդաղեցում, և, թերևս, նույնիսկ նվազման դադարեցում՝ արտադրաչափերի է՛լ ավելի աճի պայմաններում։

Լեհ տնտեսագետ Բ. Մինցն այդ առթիվ գրում է. «Կապիտալիստական ձեռնարկություններում արտադրության ընդլայնումը սահմանափակված է շահույթի ստացումն ապահովող մակարդակով։ Եթե արտադրածավալի մեծացումը հարուցում է ապրանքների գների իջեցում, որն իր հերթին նվազեցնում է ձեռնարկության շահույթի զանգվածը, ապա արտադրության ընդլայնումը դադարում է» (Б. Минц. «Политическая экономия социализма», Изд. II, М., 1965, стр. 107)։ Այդ պնդումը, որը սկզբունքորեն ճիշտ է, էական ճշգրտում է պահանջում։ Բանն այն է, որ բուրժուական տնտեսագետները կարողությունների բարելավման պրոցեսը դիտում են ավելի տարբերակված, քան դա անում է Բ. Մինցը։ Նրանցից շատերն այն կարծիքին են, թե առավել բարենպաստ պայմանների ամբողջության պրոբլեմի լուծումը նկատի ունի որոնել և գտնել այնպիսի տեխնիկական բարենպաստ պայմանների ամբողջություն, այսինքն՝ ձեռնարկության այնպիսի չափ, որի առկայությամբ կարող են ստացվել արտադրության առավել նվազ ծախքեր. այնպիսի դիրքային խթան, որը առավելագույն շահույթ ստանալու համար ֆիրմային նպաստում է գավթել տվյալ արտադրանքի շուկայի զգալի մասը. և, վերջապես, կարողությունների բարենպաստ պայմանների ամբողջության (այսինքն՝ ֆիրման, ձգտելով ուժեղ դիրքեր ապահովել տնտեսական և քաղաքական ասպարեզներում, հնարավոր է համարում արտադրանքի ինքնարժեքի բարձրացումը, որպիսի հանգամանքը բխում է կարողությունների տեխնիկական և դիրքային բարենպաստ պայմանների ամբողջությունը գերազանցելուց) („Actual Economic„ (Canada), 1966, № 3. p. 429)։

Ուրիշ տնտեսագետներ էլ, վկայակոչելով ԱՄՆ-ի փորձը, պնդում են, թե կարողությունների օպտիմալայնությունը որոշվում է ո՛չ թե մեքենաների, նյութերի և այլ միջոցների օգտագործմամբ, այլ կառավարչական հանգամանքներով (տե՛ս В. И. Терещенко. «Организация и управление (опыт США)», М., 1965, стр. 13)։ Չի կարելի լիովին համաձայնել նաև այդ տեսակետին։ Մեր կարծիքով, ավելի ճիշտ է Ս. Ե. Կամենիցերի դիրքավորումը. նա գրում է, թե ձեռնարկության ղեկավարման բարեհարմարությունը նրա չափի վրա ազդող կարևոր, բայց ոչ վճռական գործոններից մեկն է (տե՛ս С. Е. Каменицер. «Хозяйственное руководство промышленным предприятием в СССР», М., 1961, стр. 134)։

Վերջապես, գտնում էին, թե օպտիմալ հզորություն ասելով պետք է նկա-



տի ունենալ սարքավորման առավելագույն բեռնվածությունը (տե՛ս «Вопросы экономики», 1961, № 6, стр. 35—36)։ Սակայն պրակտիկան ցույց է տալիս, որ զուտ ինժեներա-տեխնիկական դիրքերից ելնելով, այդպիսի ապահովումը, առանց հաշվի առնելու արտադրության տնտեսական արդյունավետությունը, օրինաչափ չէ։ Այսպես, թեթև արդյունաբերության ոլորտում արտադրածավալի նույնիսկ տասնապատիկ մեծացումը հնարավորություն է ընձեռում արտադրանքի ինքնարժեքն իջեցնել առավելագույնը 2—3 տոկոսով, բայց միաժամանակ աճում են տրանսպորտային ծախսերը և, վերջին հաշվով, նվազում է արտադրության շահավետությունը։

Երբեմն ենթադրում են, թե մի շարք գործոնների հաշվառմամբ կարելի է որոշել ձեռնարկության կարողության բարենպաստ պայմանների ամբողջությունը՝ ելնելով արտադրության ինքնարժեքի գործողության նվազագույնից (տե՛ս «Экономика социалистической промышленности», М., 1966, стр. 240)։ Սակայն, գործնականում, հաճախ, ձեռնարկության արտադրակարողությունների նպաստավոր պայմանների ամբողջության մեծությունը որոնվում է արտադրանքի նվազագույն ինքնարժեք ունեցող համասեռ ձեռնարկությունների խմբում կատարված համեմատական վերլուծությունից ելնելով (տե՛ս «Химическая промышленность», 1967, № 3, стр. 1—4. «Химия и технология топлив и масел», 1967, №4, стр. 23—27 և այլն)։

Ձեռնարկության արտադրական հզորության օպտիմումի ամբողջության սահմանումը սոսկ հասարակական արդյունքի նվազագույնով, ըստ երևույթին, մասամբ սխալ է։ Բանն այն է, որ արտադրանքի ինքնարժեքը չի առնչվում կենդանի աշխատանքի ծախքերի այն բաժնին, որն ստեղծում է ձեռնարկության տնտեսական արդյունավետության բնորոշ հավելյալ արդյունք։ Ուստի, արտադրանքի ինքնարժեքի հետ միասին պետք է հաշվի առնել նաև կապիտալ ներդրումները կամ արտադրաֆոնդերի արժեքի միջին տարեկան մեծությունը և դրանց ազդեցությունը հավելյալ արդյունքի մեծացման վրա։ Բայց այստեղ ինքնարժեքին (C-ին) պետք է ավելացնել հավելյալ արդյունքի այն մասը, որը համապատասխանում է տվյալ արդյունքի ստեղծման համար հիմնական և շրջանառու ֆոնդերի մեջ կապիտալ ներդրումների ձևով կատարված հասարակության ծախքերին։ Հետևաբար, կարելի է օգտվել բերված ծախքերի, այսպես կոչված, հանրահայտ ֆորմացիայից (З)՝ $З = C + (Е_н \times К)$։ Արտադրության հարաճունությունը հաշվի առնելով, մատնանշված ծախքերի ցուցանիշներից հենց հարկավոր է օգտվել ձեռնարկության կարողությունների բարենպաստ պայմանների ամբողջությունը սահմանելիս։

Միանգամայն բնական է, որ արտադրաարդյունավետության բարձրացումը քննության առնելով արտադրակարողությունների բարելավման պրոցեսում, մենք մերձուստ առնչվում ենք կապիտալ ներդրումների արդյունավետության պրոբլեմին, հատկապես կապիտալ ներդրումների համեմատական արդյունավետության հարցերին։

Կապիտալ ներդրումների արդյունավետության չափանիշ ընտրելու հարցը ծագել է դեռևս առաջին հնգամյակի տարիներին։ Բայց այն զուրկ էր բավարար պարզությունից։ Որպես արդյունավետության բարձրագույն չափանիշ առաջ էր մղվում ժողովրդական հարստության աճը, ընդ որում, ժողովրդական հարստության աճ ասելով հասկացվում էր գործող աշխատանքի զանգվածի քանակական աճը, գումարած դրա որակական փոփոխությունները։ Արդյունավետությունը դիտվում էր որպես ժողովրդական աշխատանքի ամբողջ զանգվածի արտադրաուժի աճ։ Խոսքը վերաբերում էր էֆեկտի (տնտեսված աշխատանքի) հարաբերությանը գործող արտադրակապիտալի գումարին, այսինքն՝ արտադրաեղանակի արդյունավետությանը։

Այդ հարցերի լուծման գործում առավել հիմնականը **Կապիտալ ներդրումների և նոր տեխնիկայի տնտեսական արդյունավետությունը** (1959 թ.) աշխատությունն էր, որի մեջ կապիտալ ներդրումների շահավետության մակարդակի գնահատման համար Տ. Ս. Խաչատուրովը, որպես գործնական չափանիշներ, առաջարկում է երկու ցուցանիշ. առաջինն՝ ազգային եկամտի ֆիզիկական ծա-

Արտադրանքի արդյունավետությունը չափելու պրոբլեմն ունի զանազան ասպեկտներ, որոնք վերաբերում են պլանավորման և տնտեսական ղեկավարման (ձեռնարկության, ճյուղի, ամբողջությամբ վերցրած ժողովրդական տնտեսության) տարբեր մակարդակների։ Ամբողջ էկոնոմիկայի արդյունավետության ամփոփող ցուցանիշների հարցում առավել չափով կարևոր են արտադրության վերլուծության այնպիսի մեթոդներ, որոնք հնարավորություն են ընձեռում չափելու ընթացիկ և միանվագ, կենդանի աշխատանքի և արտադրամիջոցների (հիմնական ու շրջանառու ֆոնդերի) ծախսերը՝ միասնական արտահայտությամբ։ Կանգ առնենք այն մի քանի մեթոդների վրա, որոնք առաջադրված խնդրի լուծման որոշակի հնարավորություններ են պարունակում։

Այդպիսի մեթոդներից մեկը աշխատանքի արտադրողականության աճի ցուցանիշների սահմանումն է՝ հաշվի առնելով անցյալ աշխատանքի ծախսերը։ Աշխատանքի արտադրողականության հաշվարկման պրակտիկայի անհրաժեշտությունը՝ աշխատանքի բոլոր ծախսերի, ներառյալ առարկայացած աշխատանքի, հաշվառմամբ հանդերձ, ցույց է տրված ակադեմիկ Ս. Գ. Ստրումիլինի աշխատություններում (С. Г. Струмилин. «Общественная производительность труда и методы ее измерения», «Вопросы экономики», № 5. 1960)։

Երկար ժամանակ նրա առաջարկությունները դժվար էր գործնականորեն կիրառել այն պատճառով, որ դրա համար տնտեսական վերլուծության անհրաժեշտ սարքավորում չկար։ Արտադրության և արտադրանքի բաշխման միջճյուղային հաշվեկշռի մշակումը հնարավորություն է տալիս այդ գաղափարը զարգացնել կոնկրետ թվական տվյալների հիման վրա։ Վերջնական արդյունքի 1 ռուբլուն ընկնող կենդանի և առարկայացած աշխատանքի ծախսերի մակարդակն ու շարժումը, որոնք անմիջականորեն արտահայտված են աշխատաժամանակի մեջ, կարող են քննության առնվել որպես արտադրության ժողովրդատնտեսական ամփոփիչ ցուցանիշի տարբերակներից մեկը։

Հարցի լուծմանը խոչընդոտում է գլխավորապես անցյալ տարվա աշխատանքի հաշվարկը։ Դրա համար հարկավոր է բազմաճյուղային հաշվեկշռի հիման վրա աշխատաժամանակի մեջ արտահայտել սպառված արտադրամիջոցների փոխանցված արժեքը (առանձին ճյուղերի համախառն արտադրանքի աշխատատարության գործակիցների և համապատասխան ճյուղի վերջնական արդյունքի միավորին ընկնող շրջանառու ֆոնդերի ծախսերի հակադարձ մատրիցայի օգնությամբ)։

Քննարկվող կոնցեպցիաների գլխավոր սխալականությունն այն է, որ դրանցում արտադրությունը գտնվում է անշարժ վիճակում, թեև դրան օրգանապես հատուկ է հարաշարժունության սկզբունքը։ Սակայն, արտադրության արդյունավետության բարձրացման հարցերը երբեմն ավելի են մանրատվում և առանձին օղակների մասշտաբով առաջանում են տեխնոլոգիական շղթաներ։ Այդպիսի դեպքերում, որպես արդյունավետության չափանիշ, մեծ մասամբ առավել օգտավետ է արտադրանքի տեխնոլոգիական ինքնարժեքը։ Հենց այդ ցուցանիշն է լայնորեն օգտագործվում արտադրապրոցեսների ընդհանուր կարգավորման ու կառավարման վերաբերյալ աշխատություններում։

Արտադրության արդյունավետության առաջարկված չափանիշներից և ոչ մեկը լիովին չէ, որ համապատասխանում է առաջադրված պահանջներին և, հետևաբար, ոչ մեկին չի կարելի ակնհայտ նախապատվություն տալ։ Այդ կապակցությամբ, արտադրության տնտեսական արդյունավետությունը սահմանելու ուղղությամբ գործնական հետազոտություններ անցկացնելիս իմաստալից կլինի օգտվել տեղական չափանիշներից, որոնց ընտրությունը հիմնականում պայմանավորված է ուսումնասիրվող արտադրության առանձնահատկությամբ։

**Վ. Ա. ՄԱԼԽԱՍՅԱՆ**

# ԻՆՏԵՆՍԻՎԱՑՆԵԼ ՊՏՂԱԲՈՒԾՈՒԹՅՈՒՆԸ

Խաղողագործության, բանջարաբուծության, ծխախոտագործության և անասնապահության հետ վերջին քսանամյակում պտղաբուծությունը ևս հանրապետության գյուղատնտեսության մասնագիտացման գլխավոր ուղղություններից մեկն է դարձել։ 1972 թ. տվյալներով, զբաղեցնելով օգտակար հողատարածքի 4 տոկոսը, այն ապահովեց գյուղատնտեսական համախառն արտադրանքի մոտ 5, իսկ միայն բուսաբուծության՝ 10 տոկոսը։ Նույն թվականին հանրապետության սովխոզների և կոլտնտեսությունների շահույթի 30 տոկոսը բաժին էր ընկնում պտղաբուծությանը։ Ահա թե ինչու ՀԿԿ Կենտկոմը և ՀՍՍՀ Մինիստրների սովետը խաղողագործության զարգացմանը զուգընթաց մեծ ուշադրություն են նվիրում պտղաբուծությանը։

Հաշվարկները ցույց են տալիս, որ պտուղների արտադրության անհրաժեշտ մակարդակն ապահովելու համար մեր երկրի բոլոր այգիների (մոտ 3,8 մլն հեկտար) բերքատվությունը պետք է հասցվի միջինը հեկտարից 60 ցենտների (1970 թ. փաստացի ստացվել է 31,6 ցենտներ)։ Դրանով լիովին կլուծվի բնակչությանը և ժողտնտեսությանը պտուղներով ապահովելու խնդիրը, միաժամանակ կտնտեսվեն այգիների հիմնման համար պահանջվող դրամական և նյութական խոշոր միջոցներ։ Հետևաբար, ժամանակակից պտղաբուծության զարգացման գլխավոր պայմանը այգիների բերքատվության բարձրացումն ու արտադրության ինտենսիվացումն է։

ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերում նշված է, որ առաջիկայում գյուղատնտեսական մթերքների արտադրության ծավալը հիմնականում կմեծանա ոչ թե գյուղատնտեսական կուլտուրաների տարածությունների ընդարձակման, այլ աշխատանքի արտադրողականության, բերքատվության բարձրացման հաշվին։ Այս առումով որոշակի անելիքներ ունեն մեր հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզները, որոնք ընթացիկ հնգամյակում արագ տեմպերով կզարգացնեն պտղաբուծությունը և խաղողագործությունը։ Ընդ որում, մեզ մոտ, ի տարբերություն անցյալի, պտղատու նոր այգիներ հիմնելիս առաջին հերթին օգտագործվելու են հանրապետության լեռնային և նախալեռնային շրջանների հողային ռեսուրսները՝ թեք լանջերը, քարքարոտ և այլ տարածություններ։ Դա հնարավորություն կտա հարթավայրային հողակտորները ծառայեցնել տեխնիկական և միամյա այլ կուլտուրաներ աճեցնելու, ինչպես նաև հողմահարման դեմ հողերն ամրացնելու նպատակին։ Հայաստանում լեռնային պտղաբուծության զարգացմանը նպաստում են խոշոր և մանր ջրհան կայանների շինարարությունը, հողերի մելիորացումը։ Որոշակի նշանակություն ունեն նաև ցրտադիմացկուն սորտերի մշակումը, տնկանյութի ավելացումը և որակի բարելավումը։

Հանրապետության լեռնային շատ շրջաններում, հատկապես 60-ական թվականներին, արագորեն սկսեց զարգանալ պտղաբուծությունը։ Այսպես, 1965 թ. պտղատու այգիների տարածքը եղել է 36,2 հազար, 1969 թ.՝ 42,8 հազար, իսկ 1972-ին՝ 52,6 հազար հեկտար։ Ընդարձակումը հիմնականում նախալեռնային շրջաններում ջրերի յուրացման արդյունքն է։ Նախալեռնային և լեռնային պտղաբուծության զարգացումը, ընդհանուր առմամբ, դրական երևույթ է։ Սակայն, լեռնային պտղաբուծության բարելավումը և ինտենսիվացումը մեզանում դեռևս թերի է։

Պտղաբուծության ինտենսիվացման գլխավոր պայմանը տնկարկների խտության պահպանումն է։ Իհարկե, կարևոր են նաև խնամքը, ոռոգումը, քիմիացումը, մեքենայացումը, սորտերի սելեկցիան։ ՀԿԿ Կենտկոմի այս տար-

վա ապրիլյան պլենումը նշեց, որ մեր հանրապետության «կոլտնտեսություններում ու սովխոզներում խաղողի ու պտղատու այգիներից ցածր բերք ստանալու հիմնական պատճառները այգիների խնամքի ու մշակության անմխիթար վիճակն է, մեծ չափերի հասնող նոսրությունը»: Այսպես, սովխոզներում, 1970 թ. տվյալներով, մեկ հեկտարի վրա պտղատու ծառերի քանակը 193 էր, մինչդեռ երաշխավորված նորման է՝ 312—500 ծառ: Ավելին, ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրության 1971 թ. սեպտեմբերի 23-ի՝ «Արդյունաբերական պտղաբուծության ինտենսիվացման ու մասնագիտացման միջոցառումների մասին» հրամանով առաջադրված է հարավային գոտիներում պտղատու այգիների նոր տնկումները կատարել ինտենսիվ եղանակներով (փոքրածավալ սաղարթ, պալմետա և այլն), հեկտարի վրա տեղադրելով 600—800, իսկ ջենակային սիստեմի այգում՝ նույնիսկ 1.000—1.600 ծառ: Մի շարք շրջաններում, հատկապես Զանգեզուրում, անտեսվել է պտղատու այգիների մշակությունը, որի հետևանքով էլ կրճատվել է դրանց տարածությունը:

Ճիշտ է, վերջին տարիներին այգիների համալրման ուղղությամբ մեր հանրապետությունում որոշ գործ արված է. 1964 թ. համեմատությամբ նոսրության տոկոսն իջել է մինչև 15,3-ի, սակայն տնկարկները շարունակում են մնալ նոսր. հանրապետության կոլտնտեսություններում միջին նոսրությունը 20,6 տոկոս է, իսկ կորիզավոր կուլտուրաներինը՝ նույնիսկ 23,8: Արտաշատում, Կամոյում, Ստեփանավանում, Ախուրյանում, Գուգարքում և այլուր հնդավոր և կորիզավոր այգիների նոսրությունը հասնում է 25—35 տոկոսի: Զարմանալի չէ, որ այս շրջանների մեծ մասում ստացվում է ցածր բերք՝ հեկտարից 13—18 ցենտներ պտուղ:

Բոլորովին այլ է պատկերն այն տնտեսություններում, ուր պտղատու այգիները պակաս նոսր են: Այսպես, Հոկտեմբերյանի շրջանի «Նաիրի», Ձերժինսկու անվան սովխոզներում հեկտարից ստանում են 70—90 ցենտներ բերք: Պտղաբուծական բարձր կուլտուրայի փորձ է կուտակված Նոյեմբերյանի շրջանի «Ձեյթուն» սովխոզում: Այստեղ հնդավոր տեսակների նոսրությունը կազմում է ընդամենը 2,1, իսկ կորիզավորներինը՝ 4,4 տոկոս: Սովխոզը 1968—1970 թթ. մեկ հեկտարից, միջին հաշվով, ստացել է 82 ցենտներ պտուղ: Գրեթե նույնքան միրգ է ստացվել նաև 1972 թվականին:

Ավելորդ է, թերևս, խոսել այգիների խտության պահպանության և այդ միջոցառման արդյունավետության մասին: Նշենք միայն, որ նոսրության հետևանքով հանրապետությունը կրկնակի վնաս է կրում՝ ստացվում է ցածր բերք, աշխատանքի և միջոցների զգալի մասը ծախսվում է անարտադրողաբար (ամբողջ հողատարածությունը մշակվում է հավասարաչափ):

Առաջավոր տնտեսությունների փորձը ցույց է տալիս, որ լեռնային պտղաբուծության ինտենսիվացման գլխավոր ուղղությունը տնկարկների խտության ավելացումն է, դրանց տնկման և աճեցման ժամանակակից, նոր, պալմետային եղանակի* կիրառումը, որը լայնորեն տարածվել է համաշխարհային պտղաբուծության մեջ: Հատկանշական է, որ այդ եղանակի ժամանակակից սկզբունքները մշակվել են հիմնականում Իտալիայում և Բուլղարիայում, որոնց տերիտորիան համեմատաբար փոքր է և լեռնոտ: Մեր երկրում պալմետային առաջին այգիներ հիմնվեցին Ղրիմում (մոտ 4.000 հեկտար), Մոլդավիայում (մոտ 8.000 հեկտար), իսկ Ուկրաինան մինչև 1980 թ. կունենա 54 հազար հեկտար: Հայաստանում առաջինը Երասխահունի փորձակայանն էր, որին հաջորդեցին լեռնային շրջաններից Գորիսը, Եղեգնաձորը և այլն: Այդ եղանակով տնկված է մոտ 200 հեկտար:

Բարձր է պալմետային այգիների բերքատվությունը: Ղրիմի մարզի «Ժեմչուժնիյ» սովխոզի չորսամյա այգում հեկտարից ստացան 200, իսկ հնգամյա այգում՝ 340 ցենտներ պտուղ, պտղաբուծության փորձակայանում բերքատվությունը կազմեց 400—600 ցենտներ:

* Պալմետան՝ պտղատու այգու տնկման, ձևավորման և շահագործման նոր եղանակ է, որի էությունը միջին հաստությամբ, միահյուսված ճյուղերով, ցածրահասակ, պտղատու պատերի ստեղծումն է:



Պալմետան զգալիորեն թեթևացնում է սաղարթի խնամքի, ինչպես և բերքահավաքի աշխատանքները, որի ընթացքում արտադրողականությունը սովորաբար բարձրանում է 2,5—3 անգամ, իսկ դանդաղորեն շարժվող հենահարթակի և հատուկ բեռնարկղի օգնությամբ՝ 5—8, նույնիսկ 10 անգամ. բանվորը մեկ հերթափոխում հավաքում է 2,4—4 տոննա պտուղ:

Պալմետային պտղաբուծության առավելություններն անվիճելի են: Սակայն, չի կարելի անտեսել այս պրոգրեսիվ եղանակի կիրառման ճանապարհին առաջացած խոչընդոտները: Դժվարություններից գլխավորը համապատասխան տնկանյութի պակասը կամ բացակայությունն է: Հանրապետության տնկարկներում դեռևս անբավարար է պատվաստակալների վեգետատիվ բազմացման աշխատանքը: Այս գործում մեծ անելիքներ ունեն հանրապետության գյուղատնտեսության մինիստրության պտղաբուծության և խաղողագործության գլխավոր վարչությունը, ինչպես և խաղողագործության, գինեգործության, պտղաբուծության գիտա-հետազոտական ինստիտուտը: Պատահական չէր նաև, որ ՀԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումը կուսկազմակերպությունների, սովետական մարմինների ուշադրությունը հրավիրեց տնկարանային տնտեսությունների գործունեության բարելավման վրա:

Մասնագետների կարծիքով, պալմետային այգու ձևավորման համար լավագույն պայմաններ է ստեղծում թերաճ կամ միջակ աճ ունեցող պատվաստակալը: Սակայն, հատկապես սկզբնական շրջանում, կարելի է օգտագործել ուժեղ աճ ունեցող սովորական պատվաստակալները:

Կարևոր հարց է և պալմետային պտղաբուծության մասնագետներ ունենալը: Բանն այն է, որ պալմետային տարբեր տեսակների (թեք իտալական, հորիզոնական, հովհարաձև, տարբեր ձևի կորդոններ և այլն) ձևավորման համար հատկապես առաջին երեք-չորս տարում որակյալ աշխատողներ են պահանջվում: Ուստի, անհրաժեշտ է գիտական հիմնարկություններին կից կազմակերպել դասընթացներ, լայնորեն պրոպագանդել առաջավոր փորձը:

ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրության վերոհիշյալ հրամանի համաձայն նախատեսված է անցկացնել միջոցառումներ, որոնք կնպաստեն մասնագետ պտղաբույծների որակավորման բարձրացմանը: Հիմնվելու են մասնագիտացված սովխոզներ, բուհերի և տեխնիկումների ուսումնա-փորձնական տնտեսություններում կանցկացվեն սեմինարներ ու այլ միջոցառումներ:

Պալմետային պտղաբուծության հաջող զարգացման համար կարևոր նշանակություն ունի պտղատու կուլտուրաների տեսակների և, հատկապես, սորտերի ճիշտ ընտրությունը: Առանձնապես ուշադրության արժանի են սպուր տեսակի սորտերը, որոնք բնութագրվում են թույլ աճով և ունեն մի քանի առավելություններ՝ ամփոփ սաղարթ, թույլ ճյուղավորում, որը թեթևացնում է ձևավորման աշխատանքները, ապահովում պտուղների վաղ և ինտենսիվ գունավորում: Այսուհանդերձ, պալմետային այգիներում նպատակահարմար չէ տնկարկների բազմասորտայնությունը, բայց փոշոտիչ սորտերի առկայությունն անհրաժեշտ է: Բարձր բերքատվության ապահովման համար կարևոր է ծառերի պարարտացումը և խնամքը: Պետք է հիշել, որ այգիների պալմետային ձևավորումը բացառիկ լայն հնարավորություններ է ընձեռում բերքատվության բարձրացման համար, բայց պահանջվում է ժամանակին և որակով կատարել անհրաժեշտ ագրոտեխնիկական բոլոր միջոցառումները:

Ժամանակակից լեռնային պտղաբուծության զարգացման, նրա տնտեսական արդյունավետության բարձրացման հարցերը տվյալ հոդվածով չեն սահմանափակվում: Պակաս հրատապ նշանակություն չունեն պտուղների իրացման պայմանների բարելավման, դրանց վերամշակման, երկարատև պահպանման, ինքնարժեքի իջեցման, ինչպես նաև գաճաճ պտղաբուծության զարգացման հարցերը:

Հանրապետության պտղաբույծների, տնտեսագետների և գյուղատնտեսության այլ աշխատողների մասնակցությունը շոշափված հարցերի լուծմանը կնպաստի մեր կոլտնտեսությունների և սովխոզների էկոնոմիկայի առաջատար ճյուղերից մեկի՝ լեռնային պտղաբուծության հաջող զարգացմանը:

Մ. Ս. ԲԱԲԱՋԱՆՅԱՆ, Հ. Հ. ՍԱՐԳՍՅԱՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ԴԱՐՁՆԵՆՔ ՄԵՂՎԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԵՐԿԻՐ

*Արդի պայմաններում ժողտնտեսության համար մեղվաբուծության նշանակությունը մեծ է։ Անփոխարինելի է նրա դերը և միջատների միջոցով փոշոտվող կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու գործում։ Գիտափորձերով ապացուցված է, որ մեղուների գործուն մասնակցության դեպքում գյուղատնտեսական շատ կուլտուրաների բերքատվությունը բարձրանում է, միջին հաշվով, 30—50 տոկոսով, իսկ առանձին խոտաբույսերի սերմնադաշտերինը՝ կրկնապատկվում և եռապատկվում է։ Բարելավվում է և պտղի, հատապտղի, բանջարեղենի ու սերմերի որակը։*

*Հաշվարկները ցույց են տվել, որ մեղվաբուծության անուղղակի արտադրանքը (գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման շնորհիվ ստացված եկամուտները) մի քանի անգամ ավելի շատ է, քան ուղղակին (մեղրի և մեղրամոմի տված օգուտները)։ Հետևաբար, մեղվաբուծությունը ժողտնտեսության հետագա զարգացման համար նույնքան կարևոր է, որքան տնտեսության մյուս ճյուղերը։*

*Ելնելով մեղվաբուծության հետագա զարգացման անհրաժեշտությունից, այն առավել եկամտաբեր և մասսայական դարձնելու անհետաձգելի պահանջներից, ՀԿԿ Կենտկոմի բյուրոն և ՀՍՍՀ Մինիստրների սովետը դեռևս 1971 թ. մայիսի 26-ին որոշում ընդունեցին «Հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում մեղվաբուծության վիճակի և այն բարելավելու միջոցառումների մասին», որը նոր բնագծեր է նախատեսում գյուղատնտեսության այդ կարևոր ճյուղը մեր հանրապետությունում հիմնովին բարելավելու, ժողովրդական տնտեսության արդի պահանջների մակարդակին բարձրացնելու վերաբերյալ։ Որոշման մեջ ըստ ամենայնի գնահատված է մեղվաբուծության տեղն ու դերը, նշված են հանրային մեղվաբուծության մեջ նկատվող հիմնական թերությունները, ցույց են տրված դրանց վերացման ուղիները և այլն։ Անցած երեք տարիներին կատարվել է որոշ տեղաշարժ։ Շրջաններում վերականգնվել է լուծարքի ենթարկված մեղվանոցների մի մասը, համալրվել փոքր, անշահութաբեր մեղվանոցները, ավելի բարձր հիմքերի վրա է դրվել մասնագետների պատրաստման և վերապատրաստման գործը և այլն։ Սակայն հանրապետությունում տակավին ցածր է մեղվաբուծության վարման կուլտուրան։ Գյուղատնտեսության այդ ճյուղը, մասնակի բացառություններով, մեր կոլտնտեսություններում և սովխոզներում վարում են հնացած, պարզունակ եղանակով։ Չեն կատարվում մեղվի խնամքի, ցեղի բարելավման, մայրափոխության, կլոր տարին մեղվանոցում միայն լիարժեք մեղվաընտանիքներ պահելու, ծաղկի մեղրի առատ կերապաշարով ընտանիքները ձմեռեցնելու սահմանված կանոնները։ Շատ մեղվանոցներում անուշադրության են մատնված նաև անասնաբուժական-սանիտարական պարտադիր տարրական կանոնները։ Այժմ մեզ մոտ մեղվաբուծության զարգացման և բարձր մթերատվության հիմնական խոչընդոտներից են մեղուների հիվանդությունները, մասնավորապես, թրթուրների «եվրոպական փտախտը»։ Առանց այդ հիվանդությունների դեմ լուրջ և վճռական միջոցներ ձեռնարկելու, չենք ունենա զարգացած, առավել ևս՝ ապրանքային մեղվաբուծություն, որի ստեղծմանը հաճախ վնասում են անփույթ և գործին անտեղյակ մեղվապահները։*

*Մեզանում մեղվաբուծության վերելքին և մթերատվության բարձրացմանը արգելակում է մեղվանոցներում ոչ լիարժեք, սահմանված նորմայից պակաս կերապաշարով մեղվաընտանիքներ պահելը։ Սա կարևոր հարց է։ Սովետական*



*Միությունում և արտասահմանում (հատկապես ԱՄՆ-ում ու Կանադայում) լայնորեն պրոպագանդվում է մեղվանոցներում կլոր տարին միայն լիարժեք և ծաղկի առատ կերապաշարով ապահովված մեղվաընտանիքների պահելը։ Արդեն կան շատ մեղվանոցներ, ուր մեղվաընտանիքները ձմեռելուն են նախապատրաստվում 2—3 առանձնամասով (կորպուսով) և 30—40 կգ ծաղկի լավորակ մեղրի կերապաշարով։ Մեր հանրապետությունում կատարվում է ճիշտ հակառակը. մեկ մեղվաընտանիքը նորմալ պայմաններում ձմեռելիս սպառում է ոչ ավելի, քան 5—6 կգ մեղր. բազմաթիվ մեղվապահների և նույնիսկ մեղվաբույծ-մասնագետների մոտ ստեղծվել է միանգամայն սխալ ու վնասակար մտայնություն, թե իբր բավական է ձմեռը մեղվաընտանիքներին թողնել թեկուզ 7—8 կգ կերապաշար, իսկ այնուհետև կերապաշարը կարելի է լրացնել մի քանի կիլոգրամ շաքարով։ Ցավոք, այդ թյուր մտայնությունն առայժմ մեզանում տիրապետող է։*

*Մեղվաբուծության հաջողության հիմնական գրավականներից մեկն էլ կադրերի ճիշտ ընտրությունն է։ Թե որքանով է դա ճիշտ՝ երևում է Պսկովի մարզի առաջավոր մեղվաբույծների օրինակով։ Պսկովի մարզը բնավ էլ աչքի չի ընկնում իր կերաբազայով, սակայն, քանի որ տնտեսությունները լուրջ ուշադրություն են նվիրում մեղվաբուծությանը, մեղվանոցներում աշխատում են բարձրորակ և գործին նվիրված մեղվաբույծներ, հաջողություններն ակնբախ են։ Օրինակ, Սվերդլովի անվան կոլտնտեսությունում Անտոնինա Գեորգիևնայի խնամած մեղվանոցում վերջին մի քանի տարիներին ապրանքային մեղրի միջին բերքը կազմել է 35 կգ։ Իսկ «Կրասնույե զնամյա» կոլտնտեսության մեղվաբույծ Ի. Սմիռնովը ապրանքային մեղրի բերքը հասցրել է 37 կգ։ Մարզում առաջավոր մեղվաբույծները շատ են։ Նրանք բոլորն էլ լավ աշխատանքով են հասել բարձր արդյունքների. մեղվանոցներում, որպես կանոն, պահել են միայն լիարժեք մեղվաընտանիքներ, որոնք ձմեռանոցից դուրս են եկել բնական մեղրի 10—12 կգ կերապաշարով։ Նրանց մեղվանոցները գրեթե զերծ են վարակիչ հիվանդություններից։ Մեղվաբույծների զգալի մասը մեղուների ձմեռումը անց են կացնում բացօթյա։ Ակամայից հարց է ծագում՝ ինչո՞ւ մեր հանրապետությունում բոլորովին այլ է պատկերը։ Ամենուրեք թույլ, անկենսունակ և պաշարազուրկ մեղվաընտանիքներ են պահվում։ Եվ զարմանալի չէ, որ 1972 թ. հանրապետության կոլտնտեսություններում ու սովխոզներում մեղվաընտանիքների ավելացման պլանը կատարվել է միայն 85, իսկ ապրանքային մեղրի ստացմանը՝ 53 տոկոսով։ Մի շարք շրջաններ ոչ միայն թերակատարել են մեղվաընտանիքների ավելացման առաջադրանքները, այլ ետընթաց են քայլել 1971 թ. համեմատությամբ։ Այսպես, Սիսիանի շրջանը՝ 411, Հոկտեմբերյանը՝ 362, Արարատը՝ 150, Նոյեմբերյանը՝ 110, Մեղրին՝ 106 ընտանիքներով կրճատել են ունեցածը։ Վիճակն անմխիթար է նույնիսկ մասնագիտացված մեղվաբուծական սովխոզներում։ Օրինակ, Անիի շրջանի Անի և Ղափանի շրջանի Ծավի սովխոզները, չնայած եղած հնարավորություններին և մեղվաբուծական վարչության օգնությանը, 1972 թ. չկատարեցին մեղվաընտանիքների ավելացման և ապրանքային մեղրի ստացման պլանները։ Ընդհակառակը, առաջինում 1.290-ից տարեվերջին մնաց 1.026, իսկ երկրորդում՝ 1.575-ից ընդամենը 1.020 ընտանիք…*

*Մեզ մոտ մեղվաբուծության բնագավառում անտեսված է գիտական և առաջավոր փորձի փոխանակումը։ Գյուղմինիստրության մեղվաբուծական վարչությունը պետք է արմատավորի Միության առաջավոր մեղվաբուծական սովխոզներում և ֆերմաներում կիրառվող տնտեսական և ներտնտեսական հաշվարկը, ինչպես նաև մեղվաբուծական խոշոր ֆերմաների օղակային սիստեմը։*

*Այժմ, երբ մեղվաբուծական գիտահետազոտական ինստիտուտների և փորձակայանների առջև խնդիր է դրված երկրի յուրաքանչյուր բնակլիմայական գոտու համար մշակել գիտականորեն հիմնավորված մեղվաբուծության վարման սիստեմ, հանրապետության մեղվաբուծական փորձակայանը կարող է և պետք է լայն օգնություն ցույց տա գյուղատնտեսության այդ ճյուղին։ Մինչդեռ, մինչև այժմ չեն մշակված բնակլիմայական առանձին գոտիների (Ա-*

ձություններով ստուգված: Լեհաստանն այն երկիրն է, ուր բազմիցս ապաստանել են ռուսական հեղափոխության տարագիր ղեկավարներն ու մասնակիցները: Պորոնինի, Կրակովի շատ փողոցներ կրում են համաշխարհային պրոլետարիատի մեծագույն առաջնորդի ոտնահետքերը: 1905 թվականի, ապա Հոկտեմբերյան մեծ հեղափոխության բարիկադներում թափվել է և լեհ հեղափոխականների արյունը: Վլադիմիր Իլյիչի մերձավորագույն զինակիցներն էին նորաստեղծ սովետական հանրապետության Համառուսաստանյան արտակարգ հանձնաժողովի նախագահ Ֆելիքս Ձերժինսկին, սովետական դիվանագիտության հիմնադիրներից մեկը՝ Յուլիան Մարխլևսկին, Կոմինտերնի գործադիր կոմիտեի ինտերնացիոնալ վերահսկիչ հանձնաժողովի անդամ Ֆելիքս Կոնը... Լեհեր կային Ձմեռային պալատը գրոհողների, Կրեմլի պարիսպների տակ կռվողների շարքերում, «Ավրորա» հածանավի անձնակազմում. Իգնացի Գինտովն էր Ձմեռային պալատի առաջին պարետը:

Ազատության, մարդկության երջանկության համար մղած համատեղ պայքարի, սովետների երկրի և Լեհաստանի կոմունիստների՝ այդ նպատակով գործադրած համառ ջանքերի ծնունդն է այդ բարեկամությունը: Որքա՜ն պատկերավոր է ասել Լ. Ի. Բրեժնևը ԼՄԲԿ VI համագումարում. «...երկու երկրների կոմունիստներն իրենց հեղափոխական համոզմունքների հուրը տվեցին, որ մեր բարեկամության բոցը բռնկի չտեսնված պայծառ լույսով»: Բռնկեց այդ բոցը, լուսավորելով մեր բարեկամական երկրների զարգացման ողջ ընթացքը:

Լեհ ականավոր հրապարակախոս Ռիշարդ Վոյնան այս տարվա փետրվարին գրել է. «Իր սոցիալիստական պոտենցիալով Լեհաստանը Սովետական Միությունից հետո երկրորդն է, որի հետ հաշվի են նստում Եվրոպայում. մեր դարաշրջանի մեծագույն իրադարձությունների մասնակիցն է նա, որ հետևողականորեն վարում է խաղաղասիրական արտաքին քաղաքականություն»:

Զինված մարքսիզմ-լենինիզմի ուսմունքով, իր կազմավորման օրվանից ԼՄԲԿ-ն միջազգային խնդիրների լուծման հարցերում մշտապես գործել է ՍՄԿԿ հետ համաձայնեցված: Սոցիալիստական բոլոր պետությունների, խաղաղասեր բոլոր մարդկանց շահերն արտահայտող Սովետական Միության քաղաքականությունը ԼՄԲԿ-ն համարում է և իր քաղաքականությունը, որի կենսագործմանը նա մշտապես պատրաստ է մասնակցելու: Լեհական Ժողովրդական Հանրապետության կազմավորումից հետո երկրում ամեն մի ձեռնարկման, տնտեսության կազմակերպման ամեն մի նոր քայլի նպատակը դարձավ աշխատավոր մարդու բարօրության ապահովումը: Այդ ընդհանուր նպատակն էլ հենց նորաստեղծ սոցիալիստական երկրներին միավորեց Տնտեսական Փոխօգնության Խորհրդում, որը խթանում է մասնակից երկրների արագաթափ զարգացումը, նորանոր նվաճումներով նպաստում մարդու կենսամակարդակի բարձրացմանը, ապահովում համագործակցությունը նաև այլ, զարգացող երկրների հետ: Բուռն զարգանում է քսանհինգամյա այս կազմակերպության անդամ երկրների՝ Բուլղարիայի, Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Ռումինիայի, Հունգարիայի, ԳԴՀ-ի, ՍՍՀՄ-ի, ՄԺՀ-ի և Կուբայի տնտեսությունը առանձին-առանձին և միասին վերցրած: Երկրագնդի մակերեսի 18,5 տոկոսը գրավող, բնակչության 9,6 տոկոսը միավորող այս Խորհրդի անդամ երկրները տալիս են աշխարհի ազգային եկամտի 29, արդյունաբերության համախառն արտադրանքի 33, էլեկտրաէներգիայի՝ 20,4, քարածխի՝ 26,8, երկաթի՝ 26,4, ցեմենտի՝ 24,2 տոկոսը*:

Տնտեսական փոխօգնության երկրների համագործակցության ծնունդն է «Բարեկամություն» նավթամուղը, որով գործարկման առաջին տարում՝ 1964 թ., մղվեց 8,3 մլն տոննա նավթ. 1975 թ. եղբայրական երկրները ստացան 50 մլն տոննա նավթ: Կառուցվում է նաև հսկա մի գազամուղ, որը Սիբիրից կհասնի մեր երկրի եվրոպական մասը, հնարավորություն ընձեռելով ավելացնելու գազի մատակարարումը Չեխոսլովակիային ու Լեհաստանին, ինչպես նաև գազ մատակարարելու ԳԴՀ-ին, Բուլղարիային ու Հունգարիային: Այդ երկրների զարգացման գործում մեծ դեր կխաղա նաև «Խաղաղություն» միացյալ էներգասիստեմը:

Տնտեսական բուռն վերելքի շնորհիվ զարգացման նոր փուլ թևակոխեց այդ երկրների արտաքին ու ներքին առևտուրը: Այսպես՝ Լեհաստանն սկսեց արտահանել ավելի շատ մեքենաներ ու սարքավորում, վառելիք, հումք և այլ նյութեր, գյուղատնտեսական մթերքներ, արդյունաբերական զանազան ապրանքներ, դեղորայք, դրանց փոխարեն ներմուծելով այն ամենը, ինչ անհրաժեշտ է իրեն: Մեքենաների ու սարքավորումների փոխանակման գլխավոր պարտնյորը Լեհաստանի համար եղել և մնում է ՍՍՀՄ-ը:

Առավել ծավալվում են ՏՓԽ-ի երկրների ներքին կապերն ու համագործակցությունը:

* *Այս և հետագա թվական տվյալների մեծ մասը վերցված է լեհական մամուլի գործակալության՝ «Ժամանակակից Լեհաստանը» շաբաթական հաղորդագրություններից:*



«1974—1975 թվականներին,— Լեհական միացյալ բանվորական կուսակցության համալեհական առաջին կոնֆերանսում ասաց ԼԺՀ Մինիստրների սովետի նախագահ Պյոտր Յարոշևիչը,— մենք կշարունակենք այդ ակտիվ քաղաքականությունը... մենք ձգտում ենք խորացնել կոոպերատիվ կապերը և արտադրության մասնագիտացումը, ներդնել նորանոր միջոցներ, ինչպես և իրականացնել նորանոր միջոցառումներ հումքային տնտեսության, արդյունաբերական արտադրության, գիտության ու տեխնիկայի բնագավառում»: Այդ նպատակին են ծառայում Լեհաստանի և Սովետական Միության միջև վերջին ժամանակներս կնքված մի շարք երկարաժամկետ պայմանագրերն ու համաձայնագրերը կոոպերացիայի և մասնագիտացման վերաբերյալ, որոնք երկուստեք կնպաստեն սոցիալ-տնտեսական պլանների կենսագործմանը:

Ազատագրված Լեհաստանի վոևոդությունները մեր երկրի անմիջական օգնությամբ ձեռնարկեցին հայրենիքի արդյունաբերական զարգացմանը: Այս մարզում վճռական դեր խաղաց Լենինի անվան մետալուրգիական կոմբինատի կառուցումը՝ Նովայա Գուտայում: 1948 թ. կնքված տնտեսական պայմանագրի համաձայն Սովետական Միությունն ապառիկ հիմունքներով Լեհաստանին տրամադրեց կոմբինատի նախագծերն ու սարքավորումը, պարտավորվելով նաև օգնել ապագա մասնագետների պատրաստմանը: 700 օբյեկտանոց կոմբինատը 1954 թ. թողարկեց մետաղի առաջին տոննաները: Այժմ նրա տարեկան արտադրանքը գերազանցում է Լեհաստանի մետալուրգիական գործարանների նախապատերազմյան ողջ մակարդակը: Լեհական բարձրորակ երկաթն առաքվում է աշխարհի 45 երկրներ:

Լեհաստանը և Սովետական Միությունը համատեղ կառուցում են մի քանի տասնյակ արդյունաբերական ձեռնարկություններ. այսպես՝ լեհական մետալուրգիական «Բիպրոգուտե» նախագծային բյուրոյում պատրաստվում են «Կատովիցե» մետալուրգիական գործարանի նախագծերը. 90 հազար տոննա կկշռեն այս գործարանի կառուցման համար մեր երկրի հատկացրած սարքավորումները:

Սովետական սարքավորումներով, մեր մասնագետների օգնությամբ են կառուցվել նաև Բոլեսլավ Բերուտի անվան, ապա՝ «Վարշավա» մետալուրգիական գործարանները: Դառնալով աշխարհի առաջավոր երկրներից մեկը՝ Ժողովրդական Լեհաստանն այժմ աչքի է ընկնում ժամանակակից զարգացած արդյունաբերությամբ, էներգետիկայով, նավաշինությամբ, ռադիոտեխնիկայով, էլեկտրոնիկայով, մետաղամշակմամբ, հանքարդյունաբերությամբ:

Լեհաստանի էներգետիկ տնտեսությունը հումքի պաշարներով ապահովելու գործում կարևոր նշանակություն ունի ածխարդյունաբերությունը: Քարածխի հանույթով ԼԺՀ-ն այժմ գրավում է աշխարհում չորրորդ տեղը՝ ԱՄՆ-ից, ՍՍՀՄ-ից, Չինաստանից հետո, իսկ արտահանմամբ՝ II տեղը. նախատեսված է՝ 1990 թ., 1970 թ. համեմատությամբ, ածխի արտահանումն ավելացնել 50 տոկոսով, հասցնելով մեկ մլրդ տոննայի: Արդյունաբերական Լեհաստանում մեկը մյուս հետևից գործարկվեցին Օսվենցիմի քիմիական կոմբինատը, արհեստական թելերի գործարանը՝ Վելկոպոլյան Գովժեում, ազոտի կոմբինատը՝ Կենձեժինեում, ալյումինի գործարանը՝ Սկավինում: Թողարկվեցին լեհական առաջին ավտոմեքենաները՝ «Վոլգայի» լիցենզիայով: Կոնինում և Տուրովում կառուցված էլեկտրակայանները էլեկտրաէներգիա են մատակարարում ողջ Լեհաստանին: Երկրում վերակառուցվել են ավելի քան 300 արդյունաբերական ձեռնարկություններ ու էլեկտրակայաններ, որոնք տալիս են հանրապետության արդյունաբերական համախառն արտադրանքի 30, էլեկտրաէներգիայի 20 տոկոսը, աշխատանքով ապահովում հարյուր հազարավոր մարդկանց:

Աշխարհի արդյունաբերական արտադրանքի 2,2—2,5, գյուղատնտեսական արտադրանքի 2 տոկոսը թողարկում է Լեհաստանը: Էլեկտրաէներգիայի արտադրությամբ այն գրավում է աշխարհում 11-րդ, նավաշինությամբ՝ 11-րդ, պլաստմասսաների արտադրությամբ՝ 14-րդ տեղերը: Եվ այս ամենը լեհ-սովետական, սոցիալիստական մյուս երկրների փոխշահավետ համագործակցությամբ ու օգնությամբ:

Լեհաստանում մեծ շուքով տոնվեց ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակը: Այդ օրերին, նշելով լեհ հեղափոխականների ծառայությունները մեծ Հոկտեմբերի հաղթանակի, սովետների երկրի բարգավաճման մարզում, ԼՄԲԿ-ն մի անգամ ևս անդրադարձավ այն կենսական, անշահախնդիր օգնությանը, որ սոցիալիստական երկրներին ցույց է տվել և ցույց է տալիս սովետների առաջին պետությունը:

Լեհաստանը, իր հերթին, օգնել և օգնում է իր հետ տնտեսական-քաղաքական դաշն կնքած երկրներին: Սովետական Միության առևտրական նավատորմիղի յուրաքանչյուր հինգերորդ նավը պատրաստված է լեհական նավաշինարանում, ուր մեր երկրի պատվերով կառուցվել է տարբեր տիպի ու չափերի ավելի քան 700 նավ՝ երեք մլն տոննա ընդհանուր

բեռնատարողությամբ: Այժմ Գդանսկի նավաշինարանում պատրաստվում է լեհական նավաշինության հսկան՝ «105 հազարանոցը», որին կհաջորդի «250 հազարանոցը»:

«Տնտեսավարության բարձրագույն նպատակը,— նշեց Լեհական միացյալ բանվորական կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար Էդվարդ Գերեկը ԼՄԲԿ VI համագումարում,— աշխատավորների կենսամակարդակի սիստեմատիկ բարձրացման, անհատի բազմակողմանի զարգացման պայմանների ընտեղծումն է, հասարակության մեջ սոցիալիստական հարաբերությունների ամրապնդումը»: Այդ նպատակի կենսագործմանն են ուղղված ԼՄԲԿ-ի և լեհական կառավարության ողջ գործունեությունը, աշխատավորության բոլոր ջանքերը. գոհացուցիչ են, հատկապես, վերջին երեք տարվա հասույթներն ու արդյունքները: 1973 թ. ազգային եկամուտը ԼԺՀ-ում ավելացել է 10, արդյունաբերական արտադրանքի թողարկումը՝ 33 (նախատեսված 24-ի փոխարեն), գյուղատնտեսական արտադրանքինը՝ 22 տոկոսով (նախատեսված 12-ի փոխարեն) (տե՛ս «Պրավդա», 1974 թ., 6 հունիսի): Մոտ 250 մլրդ զլոտիով (1971 թ. համեմատությամբ՝ 12 տոկոսով) աճել են բնակչության դրամական եկամուտները: «Զարգացման այս բարձր դինամիկան,— ասաց Էդ. Գերեկը կուսակցության Կենտկոմի XII պլենումում,— արդյունք է լեհ աշխատավորների, գյուղացիների ու ինտելիգենցիայի բարեխիղճ, անձնվեր աշխատանքի, մեր կուսակցության քաղաքական կուրսի, որը հաջողությամբ ծառայում է սոցիալիզմի կառուցման գործին և ստուգվում պրակտիկայում»:

1975 թ. մայիսին կլրանա Վարշավյան պայմանագրի 20-ամյակը. պայմանագիր, որը կրնքող պետությունների հզորությամբ է պայմանավորված սոցիալիստական երկրների սահմանների անձեռնմխելիությունը: Վարշավայի այդ դաշինքը կնքվեց՝ միացյալ ուժերով դիմագրավելու համար իմպերիալիզմին, կանխելու համար նոր պատերազմների բռնկումը, ի պատասխան ՆԱՏՕ-ի ագրեսիվ նախապատրաստությունների: Լեհաստանը, ԼՄԲԿ ղեկավարությամբ, հետպատերազմյան ողջ ժամանակաշրջանում ակտիվ մասնակցում է Եվրոպայի անվտանգության ամրապնդման, պատերազմի օջախների վերացման, զինաթափման, ժողովուրդների խաղաղ գոյակցության զարգացման գործին. դրանով իսկ վերածնված Լեհաստանն իր ծանրակշիռ տեղն է գրավում համաշխարհային քաղաքականության ասպարեզում: ԼԺՀ-ի սահմանների անձեռնմխելիությունը վավերացված է ՍՍՀՄ-ի և Լեհաստանի՝ ԳՖՀ-ի հետ կնքած համաձայնագրերով, այն ապահովված է Վարշավայի պայմանագրի մասնակից երկրների ողջ հզորությամբ:

Քսանյոթ տարի առաջ, Մոսկվայում, կնքվեց սովետա-լեհական գիտա-տեխնիկական համագործակցության համաձայնագիրը, որը հնարավորություն ընձեռեց Լեհաստանին՝ արագ վերականգնելու, վերակառուցելու, կառուցելու գիտական նոր հաստատություններ, ձեռնարկություններ: Այդ համագործակցությունն արգասաբեր եղավ երկու երկրների համար: «Լեհաստանի և Սովետական Միության պլաններով նախատեսվում է մինչև 1975 թվականն սկսել մոտ 300 թեմաների համատեղ ուսումնասիրությունն ու գործնական աշխատանքները... Դրանք կվերաբերեն հաշվիչ տեխնիկայի, քիմիայի, բիոքիմիայի և գիտական այլ հարցերի»,— ասել է ՍՍՀՄ ԳԱ գիտնական քարտուղար Գեորգի Սկրյաբինը: Վերջերս լեհ և սովետական գիտնականների համատեղ պատրաստած «Կոպեռնիկոս—500» արբանյակը «Ինտերկոսմոս» հրթիռով սովետական տիեզերակայանից արձակվեց տիեզերք՝ ուսումնասիրելու արեգակը:

Լեհաստանը, որ անցյալ տարի, առաջադեմ ողջ մարդկության հետ մեկտեղ, տոնեց աշխարհահռչակ աստղագետ, արեգակնակենտրոն համակարգության տեսության հիմնադիր Նիկոլայ Կոպեռնիկոսի ծննդյան 500-ամյակը, այժմ ընտեղծել է բոլոր պայմանները նորանոր հանճարների վերհանման համար: Արտադրաուժերի զարգացումը, պետության հոգատարությունը ժողովրդական կրթության, գիտության ծաղկման, գեղարվեստական մեծարժեք գործերի ստեղծման նկատմամբ հնարավորություն են ընձեռում յուրաքանչյուր անհատի՝ դրսևորելու իր ունակությունները, ձիրքը, բոլորանվեր ծառայելու հայրենիքի բարգավաճման, սոցիալիստական վերելքի գործին:

ԼՄԲԿ VI համագումարի որոշումները կենսագործող լեհ ժողովուրդը մեծ եռանդով ջանում է հարստացնել իր գիտելիքները: Տորունում այսօր, 80 հեկտար տարածության վրա, կառուցվում է համալսարանական մի խոշոր քաղաք: Արդեն պատրաստի 13 մասնաշենքերում ուսանում են 7 հազար երիտասարդներ: Համալսարանը կունենա հանրակացարաններ, ճաշարաններ, պոլիկլինիկա, պրոֆիլակտորիում: Լեհական կառավարությունը 900 մլն զլոտի է հատկացրել այդ համալսարանի կառուցմանը, որը կավարտվի 1980 թվականին: Հիրավի, այս քաղաքը կհանդիսանա այն արժանի հուշարձանը, որը կանգնեցնում է ականավոր գիտնականների՝ Անջեյ Մոջեսկու, Ստանիսլավ Ստաշիցի, Մարիա Սկլադովսկա Կյուրիի երկիրը՝ հավերժացնելու համար համամարդկային գիտական մտքի մեծագույն երախտավորներից մեկի՝ Նիկոլայ Կոպեռնիկոսի հիշատակը:



Լեհաստանում այժմ գործում են 10 համալսարան, պոլիտեխնիկական 10 ինստիտուտ, բժշկական 10, գյուղատնտեսական 7 ակադեմիա, այլ կարգի 51 բուհեր: Ավելի քան 360 հազար ապագա մասնագետների կրթությամբ ու դաստիարակությամբ այժմ զբաղվում են 38 հազար դասախոսներ: Երկրում այժմ կան 800 հազար բարձրագույն, 3,5 մլն միջնակարգ կրթություն ունեցողներ: ԼԺՀ-ի գիտությունների ակադեմիայի կազմում կան 277 իսկական, 130 թղթակից անդամներ: Լեհական գիտության խոշոր ներկայացուցիչները հարստացնում են համաշխարհային գիտության գանձարանը. գրեթե չկա գիտության որևէ բնագավառ, որում իրենց ավանդը չունենան լեհ գիտնականները:

Լեհական Ժողովրդական Հանրապետության փառապանծ երեսնամյակը նորանոր հաջողություններով ու նվաճումներով են դիմավորում մշակույթի, արվեստի գործիչները: Համաշխարհային կուլտուրային ճանաչված շատ գործիչներ է տվել Լեհաստանը: Բայց լեհ ազգի ամենաուժգին ու հնչեղ նոտան մինչև օրս էլ մնում է Ֆրիդերիկ Շոպենը— համաշխարհային մշակույթի գանձարանը սքանչելի ստեղծագործություններով հարստացրած այդ մեծագույն հանճարներից մեկը:

Յոթանասունչորս տարեկան է Լեհաստանի Երաժշտության ազգային տունը (ֆիլհարմոնիան), որի նվագախումբը 292 համերգ է տվել աշխարհի բոլոր մայրցամաքներում, ամենուր արժանանալով երաժշտասեր հասարակայնության ջերմ ընդունելությանը:

Երաժշտական արվեստի զարգացման գործում մեծ դեր են խաղացել լեհական օպերայի և բալետի թատրոնը, Վարշավայի բարձրագույն երաժշտական դպրոցը (ռեկտորն է ականավոր դաշնակահարուհի, հմուտ մանկավարժ Ռեգինա Սմենձանկան): Քսանհինգամյա «Մազովշե» անսամբլը, Միրա Զիմինսկայայի ղեկավարությամբ, ավելի քան հազար ելույթ է ունեցել տարբեր երկրներում:

Լեհաստանի հանրահայտ թատերական կոլեկտիվներից են Վրոցլավի «Մնջախաղ» թատրոնը (ղեկ.՝ Հենրիկ Տոմաշևսկի), Ստանիսլավ Մոնյուշկոյի անվան, ինչպես և Վլադիսլավ Կրասնովեցկու բանակային թատրոնները: Եկող տարի կլրանա վարշավյան Մեծ թատրոնի 215-ամյակը, որի ականավոր երախտավորներից է լեհական թատրոնի հայր Վ. Բոգուսլավսկին:

Նորոգ Լեհաստանի երեսնամյակին նվիրված վարշավյան հավաքները, այս տարվա ապրիլի 15-ից հունիսի 1-ը կայացած՝ երիտասարդության «Մշակույթի գարունը», հանդիպումները գրողների հետ, ասմունքողների մրցույթները ներկայացրին բարգավաճող լեհ ժողովրդի ծաղկած կուլտուրան: Հետաքրքրական, բովանդակալից անցան նաև լեհական օրերը Մոսկվայում: Բարեկամության ամրապնդման առաքելությամբ մեր երկիրը եկած արվեստի վարպետների՝ նման ջերմ ընդունելությունները մեր եղբայրական երկրների անքակտելի դաշինքի, միասնության դրսևորումն են:

Լեհական նոր, ծաղկող գրականության փայլուն ներկայացուցիչներն են այնպիսի ականավոր բանաստեղծներ, ինչպիսիք են՝ Յուլիան Տուվիմը, Իլդեֆոնս Գալչինսկին, Թադեուշ Կոնվիցկին, Յոզեֆ Օլգա-Միխալսկին, Լեհաստանի գրողների միության գլխավոր վարչության նախագահ Յարոսլավ Իվաշկևիչը և ուրիշներ:

Ավելի ու ավելի են ընդլայնվում լեհ-սովետական գրական կապերը: Տարեցտարի ավելի շատ լեհ գրողներ են հրատարակվում ու վերահրատարակվում ՍՍՀՄ-ում, սովետականները՝ Լեհաստանում:

Լեհաստանի պանծալի երեսնամյակը ըստ արժանվույն կնշեն նաև երկրի 20 հրատարակչությունները, լույս ընծայելով այդ տարեդարձին նվիրված հարյուրավոր գրքեր, որոնք կարտացոլեն երիտասարդ հանրապետության նվաճումները:

Մեծ է շնորհաշատ լեհ ժողովրդի ավանդը համամարդկային գիտության, արվեստի, կուլտուրայի ամենատարբեր բնագավառներում: Նրա շատ երախտավորներ, ինչպես՝ Նիկոլայ Կոպեռնիկոսը, Ֆրիդերիկ Շոպենը, Ադամ Միցկևիչը և ուրիշներ դուրս են եկել ազգային շրջանակներից՝ լրացնելով համաշխարհային մշակույթի, գիտության պայծառ համաստեղությունը:

Անցյալ տարի հազարավոր լեհ աշխատավորներ հավաքվել էին կրակովյան Նովի Գուտայում (ուր ապրել է Վ. Ի. Լենինը 1912—1914 թթ.)՝ բացելու սոցիալիստական հեղափոխության առաջնորդի, Ռուսաստանի մեծագույն զավակի հուշարձանը: Ինտերնացիոնալիզմի խորհրդանիշն է նա ինչպես ողջ աշխարհի ազատատենչ մարդկության, այնպես էլ լեհ ժողովրդի համար: Պրոլետարիատի մեծ առաջնորդի նկատմամբ ջերմ սիրո արտահայտությունն է նաև Պորոնինում կազմակերպված Լենինի թանգարանը, ուր այցելել են ավելի քան 35 մլն մարդ:

ԼԺՀ-ի միացյալ բանվորական կուսակցությու-

նը և ժողովրդական կառավարությունը իրենց գործունեության ընթացքում, նորանոր ձեռնարկումներում միշտ էլ հաշվի են առնում մեր երկրի փորձը, խորապես գիտակցելով ՍՍՀՄ ստեղծման ու զարգացման պատմական կարևորությունը, հաստատ համոզված, որ ապագան ավելի կբացահայտի այդ իրադրության նշանակությունը ողջ մարդկության համար և նրա վիթխարի ազդեցությունը համաշխարհային պատմության վրա:

Սովետական Միությունը խաղաղասեր ուժերի հուսալի, հզոր պատվարն է. ահա ինչու ԼՄԲԿ-ն իր հիմնական խնդիրն է համարում համակողմանի կապերի ամրապնդումը ՍՄԿԿ-ի հետ, մասսայականացնում նրա պատմական փորձը, մշտապես հավատարիմ մարքսիզմ-լենինիզմին՝ ջանում է ավելի հաստատուն դարձնել ու կայունացնել համագործակցությունն ու փոխօգնությունը սոցիալիստական երկրների, Եվրոպայի առաջադեմ ուժերի հետ:

Զարգանում է սոցիալիստական երկրների գաղափարական համագործակցությունը: Լեհական միացյալ բանվորական կուսակցությունը գաղափարական անհաշտ պայքար է ծավալում ընդդեմ հակակոմունիզմի, մաոիզմի, հակասովետական տրամադրությունների, հանուն ողջ աշխարհում խաղաղության պահպանման: Գաղափարական այդ հետևողական պայքարում Լեհական միացյալ բանվորական կուսակցության լավագույն օգնականներն են երկրում լույս տեսնող 40 խոշոր լրագրերը և ավելի քան 376 շաբաթաթերթերն ու ամսագրերը, ռադիոն, հեռուստատեսությունը:

1973 թ. մայիսին Լեհաստանը սրտաբուխ ջերմությամբ ընդունեց ՍՄԿԿ ԿԿ գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևին: ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի և ԼՄԲԿ ԿԿ առաջին քարտուղար Էդ. Գերեկի ինչպես այս, նույնպես և դեկտեմբերին Մոսկվայում կայացած հանդիպումները առանձնահատուկ նշանակություն ունեցան երկու երկրների համագործակցության խորացման ու ընդլայնման, նոր հեռանկարների մշակման համար: Այդ համագործակցությունը, նպատակների ու ձգտումների միասնությունը մեր ժողովուրդների բարեկամության երաշխիքն են, միջազգային ասպարեզում արդյունավետ գործունեության զորավիգը:

80—90-ական թվականների հեռանկարային պլանները մշակող նոր, երկրորդ Լեհաստանը կառուցող ժողովուրդն անշեղ ընթանում է սոցիալիզմի ուղիով: Մարդկության ազատության, առաջադիմության համար մղված համատեղ պայքարի վառ էջերով լի է լեհ և սովետական ժողովուրդների պատմությունը: Այսօր նս նրանք, ուս-ուսի, դարբնում, ստեղծում են պայծառ ապագայի նախադրյալները:

«Լեհաստանի հետագա զարգացման հեռանկարները,— ասել է Էդվարդ Գերեկը ԼՄԲԿ VI համագումարում,— մեր ժողովրդի, հատկապես երիտասարդ սերնդի, հիմնական նկրտումները, տենչերը լիովին կիրականանան միայն Սովետական Միության սերտ համագործակցությամբ ու օգնությամբ: Այդ է մեր ազգային քաղաքականության հիմնական սկզբունքը, որը մենք իրականացնում ենք լեհ, ռուս և սովետների երկրի բոլոր ժողովուրդների հետ բարեկամության, եղբայրության մթնոլորտում»:

# ՆՇԱՆԱԿԱԼԻ ՀՈԲԵԼՅԱՆ

*Բելոռուսական հողում մեծ տոն է: Հանրապետության աշխատավորները, իսկ նրանց հետ միասին նաև սովետական բոլոր մարդիկ, հանդիսավորապես նշում են գերմանա-ֆաշիստական զավթիչներից Սովետական Բելոռուսիայի ազատագրման փառապանծ 30-ամյա հոբելյանը: Այս օրերին բելոռուս ժողովուրդն իր խոր հարգանքը, անսահման երախտագիտությունն ու շնորհակալությունն է հայտնում սովետական բանակին, Սովետական Միության բոլոր ժողովուրդներին, բոլոր նրանց, ովքեր իրենց կյանքով ու արյամբ, իրենց անձնուրաց մարտական ու աշխատանքային սխրանքներով ապահովեցին հաղթանակը դաժան ու նենգ թշնամու՝ գերմանական ֆաշիզմի նկատմամբ, ովքեր օգնեցին փլատակներից վերածնել Սովետական Բելոռուսիան և այժմ էլ օգնում են նրան ավելի գեղեցիկ դառնալու:*

*Բելոռուսիայի համար մղվող գոտեմարտը, որտեղ ստեղծագործաբար օգտագործվեց պատերազմի նախորդ էտապներում, առանձնապես Մոսկվայի մոտ, Ստալինգրադում, Կուրսկի աղեղի շրջանում մղված ճակատամարտերի ընթացքում սովետական զինված ուժերի կուտակած հարուստ փորձը, սկսվեց 700 կիլոմետր լայնատարած հատվածով և ավարտվեց 1000 կիլոմետրանոց ռազմաճակատով:*

*Կարմիր բանակի այդ հաղթանակը ողջ սովետական ժողովրդի հաղթանակն էր: Նրանում վառ կերպով արտահայտվեց սովետական զինված ուժերի հարաճուն հզորությունը, մեր ռազմական արվեստի անտարակուսելի գերազանցությունը թշնամու ստրատեգիայի և տակտիկայի նկատմամբ:*

*Բելոռուսական հողում մղված մարտերում երկու կողմերից մասնակցում էին գրեթե 4 միլիոն մարդ, ավելի քան 60 հազար հրանոթ և ականանետ, 7,5 հազար տանկ և ավելի քան 9 հազար ինքնաթիռ: Հարձակվող կարմիր բանակը զինված էր աշխարհում լավագույն տանկերով, ինքնաթիռներով, ռեակտիվ հրետանիով: Մեր զորքերը տեխնիկական ու թվական վճռական գերակշռություն ունեին հակառակորդի նկատմամբ: Գործողությունների ընթացքում նրանք ստեղծագործաբար լուծեցին ռազմական արվեստի այնպիսի բարդ պրոբլեմներ, ինչպիսիք են հակառակորդի հզոր, խորը էշելոնացված պաշտպանության ճեղքումը, թշնամու խմբավորումները շրջապատելու և ոչնչացնելու նպատակով օպերացիաների անցկացումը, խոշոր ջրարգելանքների՝ Արևմտյան Դվինայի, Բերեզինի, Նեմանի և այլ գետերի սրընթաց անցումը, մեծ խորության վրա և բարձր տեմպով հակառակորդին հետապնդելը:*

*Բելոռուսական գործողությունները կարմիր բանակի և պարտիզանական միավորումների համաձայնեցված հարվածների դասական նմուշ են: «Բագրատիոն» օպերացիայում պարտիզանների մասնակցությունը քաղաքական և օպերատիվ-ստրատեգիական նշանակության հսկայական գործոն է: Ամառային կամպանիայի նախօրեին, փորձելով վերացնել թիկունքից եկող սպառնալիքը, գերմանա-ֆաշիստական հրամանատարությունը մի շարք խոշոր պատժիչ արշավներ կազմակերպեց՝ նպատակ ունենալով ոչնչացնել բելոռուսական պարտիզանների հիմնական ուժերը: Պատժիչների դեմ մղած մարտերում բելոռու-*

սական պարտիզանները հսկայական կորուստներ պատճառեցին հակառակորդին։ Իրենց վրա գրավելով թշնամու զորքերի ուշադրությունը և հյուծելով նրանց, պարտիզանները դրանով իսկ մեծ ավանդ մտցրին կարմիր բանակի հարձակումը նախապատրաստելու գործում։

Գործողություններն սկսվելուց երեք օր առաջ բելոռուսական պարտիզանները, որոնք գործում էին միասնական պլանով, հզոր հարվածներ հասցրին հակառակորդի երկաթուղիներին, հաղորդակցության մյուս ճանապարհներին ու կապի գծերին։ Միայն հունիսի 20-ի գիշերը նրանք պայթեցրին 40 հազար ռելսեր։ Կարմիր բանակի ծավալած հարձակման ընթացքում պայթեցվեցին ևս 20 հազարից ավելի ռելսեր։ Հարձակումից առաջ պարտիզանական հետախուզությունը սովետական հրամանատարությանը հաղորդում էր արժեքավոր տեղեկություններ թշնամու զորամասերի տեղակայման ու տեղաշարժերի մասին և տալիս այլ տվյալներ հակառակորդի վերաբերյալ։

Իրենց գործողությունները համաձայնեցնելով հարձակվող զորամասերի հետ, պարտիզանները կարմիր բանակին օգնում էին նաև մարտերին իրենց անմիջական մասնակցությամբ։ Տեղանքը լավ իմանալով, նրանք սովետական ստորաբաժանումներն ու ամբողջ զորամասերը ծածուկ արահետներով դուրս էին բերում թշնամու խոր թիկունքը, մասնակցում տանկային զորամասերի դեսանտային գործողություններին, բնակչությանը կազմակերպում էին ճանապարհներն ու կամուրջները վերանորոգելու, գետանցումները հաջող կատարելու համար։ Բելոռուսական օպերացիայում պարտիզանների մասնակցությանը բարձր գնահատական է տվել Սովետական Միության մարշալ Ա. Մ. Վասիլևսկին. «Ամբողջ գործողության ընթացքում պարտիզաններն ամեն կերպ օգնում էին մեր հրամանատարությանն ու զորքերին, նրանք անընդհատ հավաստի և շատ արժեքավոր տեղեկություններ էին հաղորդում հակառակորդի խմբավորումների մասին, ջախջախում էին նրա շտաբները, խախտում կապը, իսկ երբեմն էլ կարմիր բանակի զորամասերի հետ անմիջականորեն մարտի մեջ մտնում թշնամու դեմ։ Մեր զորքերի առաջընթացի հետ պարտիզանական շատ ջոկատներ ձուլվում էին գործող բանակի շարքերին»։

Բեռլինյան ստրատեգիական ուղղության վրա թշնամու ամենաուժեղ խմբավորման ջախջախումը ռազմական և քաղաքական մեծ նշանակություն ունեցավ։ Սովետական զորքերի սրընթաց հարձակման հետևանքով բելոռուսական հողը լիովին մաքրվեց հիտլերյան զավթիչներից։ 1.133 օր ու գիշեր այդ հողն այրվում էր ատելի օկուպանտների ոտքերի տակ, որոնք այստեղ սահմանել էին այսպես կոչված «Նոր կարգ»՝ անօրինականության, բռնության, կողոպուտի ու արյունալի տեռորի դաժան գաղութային ռեժիմ։

Զավթիչներն իրենցից հետո թողեցին կողոպտված, ամայացված, խանձված հող։ Համատարած փլատակներում թաղված էին բելոռուսական քաղաքները։ Մինսկում, Վիտեբսկում, Գոմելում ավերվել էին բոլոր արդյունաբերական շինությունները, ոչնչացվել բնակելի տների 80—90 տոկոսը։

Հանրապետության ազատագրման շնորհիվ ձախողվեցին Բելոռուսիայի ազգային պետականությունը վերացնելու, այն իմպերիալիստական Գերմանիայի գաղութ դարձնելու՝ ֆաշիստների բարբարոսական պլանները. հանրապետության ժողովուրդը վերադարձավ ազատ ստեղծագործական աշխատանքի։ Բայց բելոռուսական գործողություններում կարմիր բանակի հաղթանակի նշանակությունը դրանով չի սահմանափակվում։ Սովետական հողը մաքրելով, կարմիր բանակը օգնության ձեռք մեկնեց լեհերին, ազատագրեց Լեհաստանի արևելյան մասը, մոտեցավ Արևելյան Պրուսիայի սահմաններին և Վիսլա գետին։ Սովետական զինված ուժերն սկսեցին իրականացնել ֆաշիստական ժանտախտից Արևմտյան Եվրոպայի ժողովուրդների ազատագրման ազնիվ և մարդասիրական առաքելությունը։ Հիտլերականների կողմից ստրկացված երկրներում կարմիր բանակի հաղթանակների ազդեցության տակ ծավալվեցին ազատագրական պայքարը և դիմադրության շարժումը։

Բելոռուսիայի, Մերձբալթիկայի, Կարելիայի, Արևմտյան Ուկրաինայի հաղթական ճակատամարտերում ավելի ամրապնդվեց սովետական զինված ուժերի



հզորությունը, ավելի խորացավ նրանց զորահրամանատարների հմտությունը, առավել ամրապնդվեց բանակի, ավիացիայի և նավատորմիղի ողջ անձնակազմի մարտական ոգին։ «Ամբողջ աշխարհին ցուցադրվեցին,— ասվում է Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմի՝ «Գերմանա-ֆաշիստական զավթիչներից Բելոռուսական ՍՍՀ-ի ազատագրման 30-ամյակի տոնակատարությունը նախապատրաստելու և անցկացնելու մասին» որոշման մեջ,— սովետական պետության անխորտակելի հզորությունը, սոցիալիստական հասարակարգի գերազանցությունը, սովետական ժողովրդի գաղափարական և քաղաքական միասնությունը, կոմունիստական կուսակցության՝ մեր բոլոր հաղթանակների ոգեշնչողի ու կազմակերպչի խորաթափանցությունն ու իմաստնությունը։ Իրենց ամբողջ վեհությամբ բացահայտվեցին մեր հայրենիքի ժողովուրդների եղբայրական բարեկամության հզոր ուժը, սովետական մարդկանց անձնուրաց նվիրվածությունը հեղափոխական մեծ իդեալներին»։

Բելոռուսիայի համար մղված ճակատամարտը, ամբողջությամբ վերցրած 1944 թվականի ամառային կամպանիան, որոնք ազդարարեցին աշխարհին Հայրենական մեծ պատերազմի ավարտական էտապի սկիզբը, համոզիչ կերպով ցույց տվեցին, որ կարմիր բանակը կարող է միայնակ ավարտել Գերմանիայի ջախջախումը և Եվրոպայի ժողովուրդներին ազատագրել ֆաշիստական լծից։ Դաշնակիցների զորքերի ափհանումը Ֆրանսիայի հյուսիսում և երկրորդ ռազմաճակատի բացումը սոսկ հաստատում են, որ վերոհիշյալ հանգամանքը ակնառու դարձավ նաև դաշնակիցների համար, որոնք շտապեցին մարտական գործողությունների մեջ մտնել արդեն տապալված և դատապարտված թշնամու դեմ։ Հենց Սովետական Միությունն էր, որ բանվորների և գյուղացիների դասակարգային դաշինքի վրա խարսխվող սոցիալիստական պետության հզոր ուժի շնորհիվ հիտլերյան Գերմանիային աղետի առաջ կանգնեցրեց։ Եվ ինչպիսի հնարանքների էլ դիմեն կեղծարարները, որոնք աղճատում են Սովետական Միության իսկական դերն անցյալ պատերազմում, նրանց չի հաջողվի թաքցնել պատմական ճշմարտությունը։

Սովետական պետական և հասարակական կառուցվածքի՝ ժողովրդական զանգվածների անսահման վստահությունն ու աջակցությունը վայելող իսկական ժողովրդական հասարակարգի մեծ առավելություններն արտահայտվեցին նախ և առաջ նրանում, որ պատերազմի ընթացքում, չնայած վիթխարի ավերածություններին և կորուստներին, ՍՍՀՄ ռազմական հզորությունն անշեղորեն մեծանում էր, ընդ որում սովետական զենքի շատ տեսակներ իրենց հավասարը չունեին, մինչդեռ գրեթե ամբողջ Արևմտյան Եվրոպան օկուպացրած հակառակորդի ուժերն արյունաքամ էին լինում։

Սոցիալիստական տերության ուժի ու հզորության կարևորագույն աղբյուրներից մեկը ռազմաճակատի և թիկունքի, զինված ուժերի և ժողովրդի միասնությունն էր։ Թշնամու նկատմամբ հաղթանակ տանելու համար սովետական մարդկանց մարտական և աշխատանքային սխրանքները ցույց տվեցին, թե հիրավի ինչպիսի անսահման ուժեր են թաքնված ժողովրդական զանգվածներում, եթե նրանք կազմակերպված, համախմբված, ոգևորված են վեհ նպատակով։ Սովետական զինված ուժերի մարտական գործողությունները 1944 թվականին, պատերազմը՝ ամբողջությամբ վերցրած, հաստատեցին Վ. Ի. Լենինի մարգարեական խոսքերը. «Երբեք չեն հաղթի այն ժողովրդին, որի մեջ բանվորներն ու գյուղացիները իրենց մեծամասնությամբ իմացել, զգացել և տեսել են, որ իրենք պաշտպանում են իրենց սովետական իշխանությունը՝ աշխատավորների իշխանությունը, որ պաշտպանում են այն գործը, որի հաղթանակը իրենց և իրենց զավակների համար կապահովի կուլտուրայի բոլոր բարիքներից, մարդկային աշխատանքով ստեղծված ամեն ինչից օգտվելու հնարավորություն» (Երկեր, հ. 29, էջ 386)։

Պատերազմը ցույց տվեց, որ սովետական պետական և հասարակական կառուցվածքն իր հայրենիքի պաշտպանության համար ժողովրդի բոլոր ուժերը մոբիլիզացնելու լավագույն ձևն է, որովհետև նրա հոգևոր զենքը մարքսիզմ-լենինիզմի գաղափարախոսությունն է։ Սովետական իշխանության տարիներին

դաստիարակված նոր մարդն իր մեջ մարմնավորում է անձնուրաց սեր սոցիալիստական հայրենիքի նկատմամբ, հավատարմություն իր քաղաքացիական և ինտերնացիոնալ պարտքի, բարձր կոմունիստական իդեալների հանդեպ։ Սովետական մարդկանց բարոյա-քաղաքական լավագույն գծերը ցայտուն կերպով դրսևորվեցին բելոռուսական հողի վրա տեղի ունեցած մարտերում։ Հազարավոր ռազմիկներ ու պարտիզաններ արժանացան կառավարական պարգևների, շատ հայրենասերների շնորհվեց Սովետական Միության հերոսի բարձր կոչում։ Կարմիր բանակի շատ միավորումների, որոնք մասնակցել էին Բելոռուսիայի ազատագրմանը, շնորհվեցին «Մոգիլևյան», «Գրոդնոյան», «Բրեստյան», «Բոբրույսկյան», «Օրշանսկյան», «Պոլոցկյան», «Բարանովիչյան», «Մոլոդեչնենսկյան», «Պինսկյան», «Բորիսովյան» և այլ պատվավոր անուններ։

Բելոռուսիայում, ինչպես և մյուս ճակատամարտերում, հաղթանակների ղեկավար և կազմակերպող ուժը եղել է կոմունիստական կուսակցությունը։ Գաղափարապես զինելով սովետական ժողովրդին, կուսակցությունը նրան ոտքի հանեց Հայրենական պատերազմի, մարդկանց սրտերում հաղթանակի անմարելի հավատ ներարկեց ատելի թշնամու նկատմամբ։ Կոմունիստները միշտ էլ եղել են հիտլերյան օկուպանտների դեմ մղվող պայքարի ավանգարդում։ Նրանք առաջին շարքերում են գտնվել նաև բելոռուսական հողում մղված ճակատամարտում։

Մեր երկրի արևմտյան սահմաններում դեռևս դղրդում էին մարտերը, իսկ կոմունիստական կուսակցությունը և նրա մարտական ջոկատը՝ Բելոռուսիայի կոմկուսակցությունը, մեծ աշխատանք սկսեցին հանրապետության ազատագրված բնակչությանն օգնություն ցույց տալու, ժողովրդական տնտեսությունը և բնակարանային ֆոնդը վերականգնելու, պատերազմի հասցրած ծանր վերքերը բուժելու համար։ Այդ տիտանական աշխատանքը հաջողությամբ պսակվեց բելոռուսական ժողովրդի իսկական հերոսության և ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների եղբայրական օգնության շնորհիվ։

Ամբողջ երկիրը օգնության հասավ քայքայված Բելոռուսիային։ Տարբեր հանրապետություններից ու մարզերից այստեղ էին ուղարկվում մետաղ, սարքավորում, շինանյութեր, գործիքներ։ Հատկացումներ առանձնացվեցին միութենական բյուջեից։ Ֆաշիստական Գերմանիայի նկատմամբ տարած հաղթանակից հետո եղբայրական հանրապետությունների օգնությունն ավելի մեծացավ։ Այդ ամենի շնորհիվ հանրապետությունը, որը 1944 թ. դեկտեմբերին թողարկում էր 1940 թվականի արդյունաբերական արտադրանքի ծավալի մեկ հինգերորդից էլ պակաս մասը, արդեն 1951-ին ոչ միայն հասավ, այլև գերազանցեց արդյունաբերական արտադրության նախապատերազմյան մակարդակը։ Նույնքան կարճ ժամանակում վերականգնվեց գյուղատնտեսության տեխնիկական բազան, ձեռնարկվեցին բոլոր անհրաժեշտ միջոցները աշխատավորների նյութական բարեկեցությունը բարելավելու և կուլտուր-տեխնիկական մակարդակը բարձրացնելու ուղղությամբ։

Ամբողջությամբ վերցրած՝ հետպատերազմյան տարիներին Բելոռուսիայում վիթխարի ստեղծագործական աշխատանք է կատարված։ «Բելոռուսական հողում, որն այրվում էր օկուպանտների ոտքերի տակ,— «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության հիսնամյակի մասին» իր զեկուցման մեջ ասաց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— նորից բարձրացան հիասքանչ քաղաքներն ու գյուղերը, աճեցին արդյունաբերական խոշոր նորակառույցներ։ Բելոռուսական արդյունաբերությունն այսօր արտադրում է հրաշալի էլեկտրոնային-հաշվիչ մեքենաներ, ծանր բեռնատար մեքենաներ, ժամանակակից ռադիոապարատներ, հանքային պարարտանյութեր, սինթետիկ թել։ Հանրապետությունում աշխատում է գիտնականների ու կուլտուրայի գործիչների մի խոշոր ջոկատ» (ՍՍՀՄ կազմավորման 50 տարին, էջ 23)։

Համագործակցելով եղբայրական ժողովուրդների հետ, հնգամյակի չորրորդ տարում բեղմնավոր են աշխատում Բելոռուսիայի աշխատավորները ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կատարման ասպարեզում, համագու-



մար, որը տվեց մեր հայրենիքի տնտեսական ու սոցիալական առաջընթացի ընդարձակ ծրագիրը։ Հանրապետության աշխատավորները խոր գոհունակությամբ ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1973 թ.) պլենումի որոշումները, ջերմորեն արձագանքեցին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի՝ կուսակցությանը, սովետական ժողովրդին ուղղված դիմումին՝ հնգամյակի չորրորդ տարում նոր, ավելի բարձր բնագծերի հասնելու էկոնոմիկայի, գիտության և կուլտուրայի բնագավառներում։ Սերտորեն համախմբված ՍՍՀՄ ժողովուրդների մեծ ընտանիքում, անսահմանորեն նվիրված կոմունիստական կուսակցությանը, կոմունիզմի գործին, հանրապետության աշխատավորները Բելոռուսիայի ազատագրման 30-ամյակը դիմավորում են կոմունիստական շինարարության վիթխարի ծրագրի կենսագործման ասպարեզում ձեռք բերած նոր փառահեղ գործերով։

Հանրապետության էկոնոմիկան հիմնական ցուցանիշներով զարգանում է իններորդ հնգամյակի պլանի դիրեկտիվներին լրիվին համապատասխան, իսկ որոշ կարևորագույն ցուցանիշներով՝ սահմանված առաջադրանքների գերազանցումով։ Արագ և անշեղորեն աճում է Բելոռուսիայի ազգային եկամուտը։ Ընթացիկ հնգամյակի երեք տարում այն ավելացել է 28 տոկոսով՝ պլանով նախատեսված 25,8-ի փոխարեն։

Կուսակցության նախատեսած կուրսին համապատասխան այժմ տեղի է ունենում ժողովրդական տնտեսության հետզհետե ավելի հիմնավոր վերակողմնորոշում աճման այնպիսի գործոնների նկատմամբ, որոնք կապված են աշխատանքի արտադրողականության բարձրացման և գիտատեխնիկական առաջընթացի հետ։

Ուրախություն են պատճառում հնգամյակի չորրորդ, որոշիչ տարվա պետական առաջադրանքների և սոցիալիստական պարտավորությունների կատարման համար հանրապետության աշխատավորների մղած պայքարի առաջին արդյունքները։ Արտադրանքի իրացման հինգ ամիսների պլանը կատարված է ժամկետից շուտ։ Արտադրությունը, աշխատանքի արտադրողականությունն աճում են ավելի արագ տեմպերով, քան նախատեսված է պլանով և որոշված սոցիալիստական պարտավորություններով։

Կուսակցության գիտականորեն հիմնավորված քաղաքականությանը համապատասխան կենսագործվում է մեր ժողովրդական տնտեսության հաստատուն վերելքը։ Կոլտնտեսություններն ու սովխոզները հետզհետե ավելի լավ են հագեցվում տրակտորներով, հացահատիկահավաք և կարտոֆիլահավաք կոմբայններով, ապրանքատար ավտոմեքենաներով և այլ տեխնիկայով։ Մեծ աշխատանք է տարվում հողերի չորացման, թթվուտներ պարունակող հողերի կրայնացման նպատակով։ Այդ ամենը շոշափելի արդյունքներ է տալիս։ Չնայած այս տարվա ձմռան և գարնան օդերևութաբանական բարդ պայմաններին, հանրապետության գյուղական աշխատավորները լի են վճռականությամբ՝ կատարելու ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։

Դրա հետ միասին Բելոռուսիայի ԿԿ Կենտկոմի XIII պլենումը (1974 թ. ապրիլ) հանրապետության կուսակցական, սովետական, տնտեսական մարմիններին կողմնորոշեց ավելի լրիվին օգտագործելու էկոնոմիկայի ինտենսիվ գործոնները, արագացնելու գիտատեխնիկական առաջընթացը, կատարելագործելու ժողովրդական տնտեսության կառավարումը և ամբողջ աշխատանքի կազմակերպումը։ Պլենումում լայն խոսակցություն ծավալվեց արտադրության, տնտեսական խնդիրների կատարման հետ գաղափարա-դաստիարակչական աշխատանքի սերտ կապի, մարդկանց արտադրողական աշխատանքի նկատմամբ նրա ազդեցությունն ամեն կերպ ուժեղացնելու մասին։ Բազմակողմանիորեն և խորապես վերլուծվեց աշխատավորների կոմունիստական դաստիարակության, աշխատավորական կոլեկտիվների արտադրական և հասարակական-քաղաքական ակտիվությունը բարձրացնելու մարզում հանրապետության կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների գործունեությունը։

Հնգամյակի ներկայիս՝ որոշիչ տարվա առաջադրանքներն արտացոլված են արդյունաբերության և գյուղատնտեսության, շինարարության և տրանսպորտի,

գիտության և կուլտուրայի աշխատողների սոցիալիստական այն պարտավորություններում, որոնք ընդունվեցին այս տարվա փետրվարին Մինսկում կայացած կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովում։ 1974 թ. պլանի կատարումը և գերակատարումը որոշիչ նշանակություն կունենան հնգամյակի հաջող ավարտման և երկրի տնտեսական ու հոգևոր կարողությունների հետագա աճն ապահովելու նպատակով նախադրյալների ստեղծման համար։ Կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական մարմինների, տնտեսական ղեկավարների առաջնահերթ պարտքն է, ընդգծեց ԲԿԿ Կենտկոմի պլենումը, կազմակերպորեն և գաղափարապես ապահովել հանրապետության տնտեսական զարգացման պլանների անսլայման կատարումը։ Անհրաժեշտ է լիաչափ օգտագործել աշխատավորական զանգվածների քաղաքական և աշխատանքային այն հսկայական վերելքը, որ առաջացրին ընտրողներին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի դիմումը և ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունները, գերմանա-ֆաշիստական զավթիչներից Բելոռուսիայի ազատագրման 30-րդ տարեդարձի տոնակատարության նախապատրաստությունը։

Բելոռուսիայի ազատագրման փառապանծ հոբելյանը տոնվում է մեր երկրի ժողովուրդների բարեկամությունն ավելի ամրապնդելու նշանաբանով։ Ընթացիկ հնգամյակում հանրապետությունների միջև կապերն արգասաբեր են դարձել այն բանի շնորհիվ, որ արտադրությունը, երկրի տնտեսական կյանքը հետզհետե ավելի ինտերնացիոնալ բնույթ են կրում։ Չէ՞ որ միութենական հանրապետություններից յուրաքանչյուրի տնտեսական դրությունն այսօր կախված է ոչ միայն իր՝ տվյալ հանրապետության տնտեսավարման արդյունքներից, այլև երկրի այլ տնտեսական շրջանների և միութենական մյուս հանրապետությունների ժողովրդական տնտեսության զանազան ճյուղերի աշխատանքից։

Հայրենական մեծ պատերազմի տարիներին կրակով ու արյունով ստուգվեց սովետական ժողովուրդների բարեկամության անսասանությունը, նրանց նվիրվածությունը կոմունիզմի գործին։ Մեր երկրի բոլոր ժողովուրդների ու ազգերի ներկայացուցիչները մասնակցել են Բելոռուսիայի ազատագրման համար մղված ճակատամարտին։ Հենվելով միութենական բոլոր հանրապետությունների եղբայրական օգնության վրա, բելոռուսական ժողովուրդը կատարեց նաև իր աշխատանքային սխրանքը։ Ռուսների, ուկրաինացիների, ղազախների, ուզբեկների, վրացիների և սովետների երկրի մյուս ժողովուրդների հետ ձեռք-ձեռքի տված, բելոռուսներն այսօր բազմապատկում են իրենց հաջողությունները, հասնում հանրապետության էկոնոմիկայի և կուլտուրայի նոր բարգավաճման։

Սովետական իշխանության տարիներին Բելոռուսիայում, ինչպես և մյուս միութենական հանրապետություններում, ձևավորվել են համախմբված ինտերնացիոնալիստական աշխատանքային կոլեկտիվներ։ Գերմանա-ֆաշիստական զավթիչներն իրենց վրա զգացին կարմիր բանակի մարտական ինտերնացիոնալիստական զորամասերի և ստորաբաժանումների ուժը, որոնք թշնամուն ջախջախեցին թե՛ Բելոռուսիայում, թե՛ Ուկրաինայում, ամենուր, որտեղ մարտեր էին տեղի ունենում։ Եվ այսօր էլ, ավերակներից ու մոխրակույտերից ոտքի ելած երկրի մեծ նորացման շարունակվող պրոցեսին բելոռուսների հետ միասին ակտիվորեն մասնակցում են շատ ազգությունների ներկայացուցիչներ։ Նրանք բոլորն էլ որպես եղբայրներ, որպես միասնական ընտանիքի անդամներ աջակցում են միմյանց, և այդ մեծ, անխզելի բարեկամությունը ավելի է ուժեղացնում նրանց բոլորին։

Բելոռուսիայի ազատագրման համաժողովրդական տոնը տեղի է ունենում կուսակցության ու ժողովրդի հեղափոխական, մարտական և աշխատանքային ավանդույթներին խնամքով վերաբերվելու, դրանք ըստ ամենայնի բազմապատկելու, աշխատավորության և մանավանդ երիտասարդության դաստիարակության գործում դրանց դերն ուժեղացնելու դրոշի ներքո։ Այս օրերին ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովխոզներում, հիմնարկներում, ուսումնական հաստատություններում և զորամասերում հանդիպումներ են կազմակերպվում Բելոռուսիայի ազատագրման համար մղվող մարտերի մասնակիցների՝ փառաբանված զորահրամանատարների, ռազմիկ-ճակատայինների և պարտիզանների հետ, անցկացվում են արշավներ ու էքսկուրսիաներ դեպի մարտական փառքի վայրերը, կազմակերպվում Բելոռուսիայի համար մղվող մարտերի ակտիվ մասնակիցների ելույթներ՝ պանծալի գոտեմարտերին մասնակցած անձանց քաջության, հերոսության և տոկունության մասին։ Այդ առումով մեծ նշանակություն է տրվում մասսայական սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, մեր բազմազգ մեծ հայրենիքի բոլոր ժողովուրդների մարտական ու աշխատանքային խոր ակունքներն ուսումնասիրելու ասպարեզում տարվող աշխատանքների ակտիվացմանը։

Կարելի է խորին բավականությամբ նշել, որ հանրապետությունում երիտասարդության ռազմա-հայրենասիրական դաստիարակության բնագավառում տարվող աշխատանքը վերջին տարիներին բովանդակությամբ հարստացել և ձևով բազմազան է դարձել։ Այդ աշխատանքում ակտիվորեն մասնակցում են կուսակցական, սովետական, կոմերիտական, մասսայական-պաշտպանական և այլ կազմակերպություններ։ Պատանիների ու աղջիկների համար պայմաններ են ստեղծված սկզբնական ռազմական գիտելիքներ ստանալու նպատակով, գիտելիքներ, որ անհրաժեշտ են ինչպես բանակում ծառայելու, այնպես էլ քաղաքացիական պաշտպանության համար։

Երեսուն տարի է անցել 1944 թվականի հիշարժան իրադարձություններից։ Սովետական Բելոռուսիայի մայրաքաղաքում, վերածնված Մինսկում, քաղաքի ամենագեղեցիկ հրապարակներից մեկում՝ Հաղթանակի հրապարակում, վեր է խոյանում մի հիասքանչ կոթող՝ Հաղթանակի շքանշանով պսակված։ Նրա պատվանդանին միշտ թարմ ծաղիկներ կան։ Բրեստում, Խատինում, Ուշաչի մոտ, Բելոռուսիայի տասնյակ այլ քաղաքներում ու գյուղերում նույնպես հուշարձաններ ու կոթողներ են խոյացել, որոնք մարմնավորում են հայրենիքի ազատության ու անկախության համար իրենց կյանքը տված կարմիր բանակի մարտիկներին և ժողովրդական վրիժառուներին։ Բելոռուս ժողովուրդը սրբությամբ պահպանում է ընկած հերոսների հիշատակը։

Հանուն նրա, որպեսզի այլևս երբեք չկրկնվեն անցած պատերազմի սարսափները, որպեսզի մեր մոլորակի երկինքը պարզ լինի, որպեսզի հողագնդի վրա չորոտան ատոմային ռումբեր, որպեսզի սովետական մարդիկ, ինչպես և ամբողջ աշխարհի մարդիկ կարողանան վստահ լինել իրենց երեխաների ապագայի հարցում, մեր կուսակցությունը հետևողականորեն կենսագործում է ՍՄԿԿ XXIV համագումարի կողմից ընդունված խաղաղության լենինյան ծրագիրը, ակտիվորեն վարում ագրեսիվ ուժերին վճռականորեն դիմակայելու քաղաքականություն։ Կատարելով ժողովրդի կամքը, կոմունիստական կուսակցությունը մշտապես հոգ է տանում ավելի ամրապնդելու երկրի պաշտպանությունը։

Գերմանա-ֆաշիստական զավթիչներից Բելոռուսիայի ազատագրման հոբելյանը նշելով որպես համաժողովրդական տոնահանդես, մեծարելով իրենց նմանը չունեցող դյուցազնամարտերի բոլոր մասնակիցներին, ատելի թշնամու դեմ մղած պայքարում ընկածների պայծառ հիշատակի առջև գլուխ խոնարհելով՝ հանրապետության աշխատավորներն իրենց հայացքները սևեռում են դեպի ապագան։ Չէ՞ որ յուրաքանչյուր նոր բնագիծ, որ գրավվել է մեծ նպատակի ճանապարհին, Հայրենական մեծ պատերազմի անմահ հերոսների ամենակենդանի վկայությունն է, այն բանի ցայտուն հաստատումը, որ նրանց փոխանցած արիության և հերոսության էստաֆետը հուսալի ձեռքերում է։

«Коммунист Белоруссии», 1974, № 6

## ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ

★

# ԵՐԵՎԵԼԻ ՄԱՐՏԻԿԸ, ԳՐՈՂԸ

(Ա. Ի. ՏՈԴՈՐՍԿՈՒ ԾՆՆԴՅԱՆ 80-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

★



Քաղաքացիական պատերազմի ամենածանր շրջանում, 1918 թ. վերջերին, լույս տեսավ համեստ ու հանրամատչելի մի գրքույկ՝ Մեկ տարի հրացանի ու գութանի հետ, որը հետատես ու խստապահանջ Վ. Ի. Լենինը բարձր գնահատեց: Հեղինակը Տվերի նահանգի (այժմ Կալինինի մարզ) Վեսյեգոնսկի գավառային թերթի խմբագիր Ալեքսանդր Իվանովիչ Տոդորսկին էր:

Արխիվային նյութերի և գավառի ղեկավար աշխատողների զեկուցումների հիման վրա Ա. Տոդորսկին գրքույկում ներկայացրել է Վեսյեգոնսկի էկոնոմիկայի վիճակը և նշել, թե սովետական իշխանության գոյության մոտ մեկ տարվա ընթացքում ինչ է արված արտադրական ձեռնարկությունների վերականգնման ու գործարկման ասպարեզում: Անդրադառնալով գավառում տեղի ունեցած դասակարգային պայքարի հարցերին՝ Տոդորսկին գրում է. «Չամերովոյի[1] իրադարձությունը ձեզ, բոլորիդ, եղբայր չքավորներ, լավագույն դաս են ծառայում՝ ձեռքից բաց չթողնելու իշխանությունը և թույլ չտալ կուլակներին սողոսկելու սովետները: Որքան էլ նրանք ձևացնեն, բայց ձեզ բարեկամ չեն լինի: Միայն այն ժամանակ դուք ճնշվածներից ու ստորացվածներից կարող եք դառնալ ազատ քաղաքացիներ, երբ սերտ կապ պահպանեք ձեր հեղափոխական կազմակերպությունների հետ, սովետների հետ»: Գրքույկում ցույց է տրված, թե ինչպես Վեսյեգոնսկի գավառի աշխատավորները, զբաղված լինելով տնտեսական հարցերի լուծումով, միաժամանակ հրացանը ձեռքերին կռվել են սովետական պետության թշնամիների դեմ, ամրապնդել բանվորների ու գյուղացիների իշխանությունը:

Ինչպես ամեն մի մեծ ու «փոքր» գործ չէր վրիպում Վ. Ի. Լենինի ուշադրությունից, այնպես էլ Մեկ տարի հրացանի ու գութանի հետ գրքույկը հետաքրքրեց նրան: Վլադիմիր Իլյիչը կարդաց ու հանդես եկավ գրախոսականով՝ Փոքրիկ պատկեր մեծ հարցեր պարզելու համար խորագրով: Լենինին ուրախություն էր պատճառել այն երևույթը, որ գավառի կուսակցական ու սովետական կազմակերպությունները մեծ գործ են նախաձեռնել՝ տեղի տնտեսական շինարարությունն առաջ մղելու համար: Ըստ արժանվույն արժեքավորելով գրքույկը՝ առաջնորդն իր գրախոսականում նշել է. «Մի քանի հարյուր, կամ թեկուզ մի քանի տասնյակ լավագույն, առավել ճշմարտացի, առավել անկեղծ, արժեքավոր փաստական բովանդակությամբ առավել հարուստ այդպիսի նկարագրությունների հրատարակությունն անսահման ավելի օգտակար կլիներ սոցիալիզմի գործի համար, քան ամեն քայլափոխում թղթից այն կողմ կյանք չտեսնող գրականագետների լրագրական, ժուռնալային և գրքային շատ աշխատություններ» (Երկեր, հ. 28, էջ 499—500):

Մեկ տարի հրացանի ու գութանի հետ գրքույկի մասին լենինյան գնահատականը ուղեգիր հանդիսացավ Ա. Տոդորսկու համար՝ հետագայում ոտք դնելու գրականության և հրապարակախոսության ասպարեզ:

***

Ալեքսանդր Տոդորսկին ծնվել է 1894 թ. սեպտեմբերին: Փոթորկահույզ են եղել նրա երիտասարդական տարիները:

Հայրենի Տուխան գյուղի ծխական դպրոցն ավարտելուց հետո հայրը՝ քահանա Իվան Տոդորսկին, որդուն սովորելու է ուղարկում Տվերի հոգևոր սեմինարիան: Այնուհետև Ա. Տոդորսկին ուսումը շարունակում է Պետերբուրգի առևտրական բարձրագույն դասընթացներում: Հոգևոր սեմինարիայում նա սրտին մոտ չի համարում աստվածաբանությունը, այլ ավելի շատ հակվում է դեպի առաջադիմական գրականությունը:

Վրա է հասնում առաջին համաշխարհային պատերազմը: Ա. Տոդորսկին զորակոչվում է բանակ՝ որպես շարքային զինվոր: 1914 թ. աշնանը նրան ուղարկում են Օրանիենբաումի ռազմական դպրոցում սովորելու: Դասընթացներն ավարտելուց հետո ստանում է պրապորշչիկի կոչում, մեկնում գործող բանակ: Արևմտյան ռազմաճակատի տարբեր հատվածներում երիտասարդ սպան մասնակցում է կռիվներին, երկու անգամ վիրավորվում, ապաքինվելուց հետո նորից վերադառնում մարտադաշտ: Խիզախությունների համար նա պարգևատրվում է շքանշաններով, ստանում կապիտանի կոչում, նշանակվում գումարտակի հրամանատար:

Ա. Տոդորսկին ամենուրեք զգայուն և հոգատար վերաբերմունք է ցուցաբերում ենթակաների նկատմամբ՝ վայելելով ոչ միայն իր ստորաբաժանման, այլև ողջ զորամասի անձնակազմի համակրանքը: Զարմանալի չէ, որ երբ ինքնակալության տապալման լուրը հասնում է ռազմաճակատ, զորամասի անձնակազմի ժողովում զինվորները միահամուռ ընտրում են նրան գնդային կոմիտեի նախագահ:

1917 թ. հոկտեմբերին «Ավրորայի» համազարկերի արձագանքները հասնում են ցուրտ ու խոնավ դիրքերը, ալեկոծում կապիտան Տոդորսկու հոգին: Երկարատև, արյունալի իմպերիալիստական պատերազմից հոգնած զինվորները ցնծությամբ են ընդունում ազատաբեր Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունը: Մեծ բեկում է առաջանում Ա. Տոդորսկու գաղափարական-քաղաքական հայացքներում: Նա անհեր կանգնում է շահագործողների տիրապետությունը խորտակելու համար մարտնչող աշխատավորների կողմը: Արտահայտելով զինվորների կամքը՝ Ալեքսանդր Իվանովիչը գնդային կոմիտեի անունից պատրաստակամություն է հայտնում պաշտպանել Վ. Ի. Լենինի գլխավորությամբ ստեղծված սովետական կառավարությունը: Բոլշևիկյան դրոշի տակ համախմբված զինվորները հանձին Տոդորսկու տեսնում են այն հրամանատարին, որին կարելի է վստահել իրենց հետագա ճակատագիրը: 1917 թ. նոյեմբերին սիբիրյան 5-րդ կորպուսի ռազմահեղափոխական կոմիտեն ցարական գեներալ Տուրբինին ազատում է կորպուսի հրամանատարի պարտականությունից, նրա փոխարեն նշանակում կապիտան Ա. Տոդորսկուն:

Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո սովետական պետությունը արձակում է ցարական բանակը: Հայրենի Վեսյեգոնսկի գավառ է վերադառնում կապիտան Տոդորսկին: Ներկայանալով գավառային գործադիր կոմիտեի նախագահին՝ նա ասում է.

— Ես համակրում եմ սովետական իշխանությանը, զորացրվելուց հետո վերադարձել եմ ծննդավայրս, խնդրում եմ ինձ աշխատանքի նշանակեք, ցանկանում եմ ծառայել ժողովրդին:

Գործկոմը հանձնարարում է Տոդորսկուն կազմակերպել և հրատարակել «Известия Весьегонского Совета» գավառային թերթը: Նա ջանասիրաբար ձեռնարկում, անբասիր կատարում է իրեն վստահված պատվավոր, միաժամանակ պատասխանատու գործը: Ալեքսանդր Իվանովիչը լրագրում հրապարակած իր ակնարկներում ու հոդվածներում վառ կերպով լուսաբանում է գավառի բանվորների ու աշխատավոր գյուղացիների առօրյան, ցույց տալիս, թե նրանք ինչպես են պայքարում քայքայված տնտեսությունը վերականգնելու համար:

...Խորհրդային իշխանությունն իր հիմնական

[1] Գյուղ Վեսյեգոնսկի գավառում:

խնդիրն է համարում, գրում է նա, ընդլայնել արհեստանոցները, դրանք սարքավորել նոր հաստոցներով: Գործադիր կոմիտեն մեծ եռանդով է սկսել գործը: Ռիբինսկու տեխնիկական ուսումնարանից բերվել է շրջատաշիչ, իսկ Մոսկվայից՝ ֆրեզերային, գայլիկոնող և ռանդող հաստոցներ...

Ա. Տողորսկին, ստեղծագործելուց բացի, պայքարում է. նա վայր չի դնում հրացանը: Գավառի հակահեղափոխականների դեմ պայքարելու համար 1918 թ. հուլիսին ստեղծում է ռազմական կոլեգիա, որի կազմում հաստատվում է նաև նա: Կուսակցության կոմիտեի որոշմամբ կազմակերպվում է կարմիր ջոկատ: Համատեղության կարգով նրա հրամանատար է նշանակվում Ա. Տողորսկին: Ջոկատին մարտական առաջադրանք է տրվում՝ ջախջախել խռովարար կուլակների և սպիտակգվարդիական սպաների դիմադրությունը: 1918 թ. կեսերին Ա. Ի. Տողորսկին զինվորագրվում է Լենինի կուսակցությանը և մինչև իր կյանքի վերջը հավատարիմ մնում նրա դրոշին:

Սովետական իշխանության թշնամիների դեմ մղվող պայքարում Ա. Տողորսկին օր-օրի դրսևորում է իր հրամանատարական ունակությունը և անհուն նվիրվածությունը՝ բոլշևիկյան կուսակցության վեհ գործին: Նա նշանակվում է գնդի, ապա՝ բրիգադի հրամանատար: Նրա հրամանատարությամբ գործող զորագնդերը մասնակցում են Ցարիցինի պաշտպանությանը: Նրանք իրենց սրընթաց գրոհներով ջախջախիչ հարված են հասցնում սպիտակգվարդիականներին, ապահովում հաղթանակը թշնամու դեմ: Հյուսիսային Կովկասում, Դենիկինի բանակի դեմ մղված կռիվների ժամանակ, Տողորսկին դիվիզիայի պետ էր: Դեպի հարավ արշավող նրա զորամիավորումը, ջախջախելով սպիտակգվարդիական զորամասերը, հասնում է Դերբենտի մատույցները:

Ցարիցինում և Հյուսիսային Կովկասում տեղի ունեցած քաղաքացիական կռիվներում ցուցաբերած քաջության ու հերոսության համար Ա. Տողորսկին պարգևատրվում է ՌՍՖՍՀ Կարմիր դրոշի երկու շքանշանով:

***

Քսան թվականի գարուն: Ադրբեջանի աշխատավորները ապստամբության դրոշ են բարձրացնում ընդդեմ մուսավաթական կարգերի և այդ պայքարում հաղթանակն ապահովելու համար դիմում կարմիր բանակի օգնությանը: Տասնմեկերորդ կարմիր բանակի կազմում Տողորսկու դիվիզիան աջակցում է Ադրբեջանի աշխատավորներին՝ հաստատելու սովետական կարգեր:

Եղբայրական այդ պարտքը կատարելուց հետո, Տողորսկին մտահոգվում է իր դիվիզիան համալրելու, գնդերն է՛լ ավելի մարտունակ դարձնելու հարցով: Այդ ժամանակ Դաղստանի հետադիմական ուժերը գլուխ են բարձրացնում սովետական իշխանության դեմ: Տասնմեկերորդ կարմիր բանակի ռազմական խորհուրդը հանձնարարում է Տողորսկու դիվիզիային՝ ջախջախել հակահեղափոխական բանդաները, ամրապնդել տեղական սովետները: Լեռնային դժվարին պայմաններում դիվիզիան վճռական գրոհներով ոչնչացնում է սովետական իշխանության թշնամիներին և նորից վերադառնում Սովետական Ադրբեջանի տերիտորիան: Այդ կռիվներում դիվիզիայի պետը դրսևորում է մեծ մասշտաբների մարտեր վարելու ռազմական տաղանդ ու ձիրք: Նա նշանակվում է կովկասյան առաջին կորպուսի հրամանատար:

***

Հայաստանում սովետական կարգերը նոր էին սկսել ամրապնդվել, երբ 1921 թ. փետրվարին դաշնակցականները կազմակերպում են ավանտյուրա՝ ընդդեմ բանվորների ու գյուղացիների իշխանության: Զանգեզուրում իր դաժան դիկտատուրան էր հռչակել Նժդեհը: Սյունիքի աշխատավորների համար սկսվել էին տանջալի և արյունալի օրեր: Քայքայվում էր գավառի առանց այն էլ աղքատիկ տնտեսությունը, փակվում էին Ղափանի պղնձահանքերն ու ձուլարանները, իշխում էր դաժան տեռորը: «...Զանգեզուրը դարձել էր ոչ միայն ավանտյուրիստների բնակավայրը,— ասում է Ալ. Մյասնիկյանը,— այլև համակովկասյան հակահեղափոխության որջ»:

ՀԿ(բ)Կ Կենտկոմը և Հայաստանի հեղափոխական կոմիտեն աշխատավորական զանգվածներին պայքարի են հանում ընդդեմ հակահեղափոխական ուժերի, որոնք, գործարքի մեջ մտնելով թուրք փաշաների, պարսիկ խաների և Անտանտի գործակալների հետ, ձգտում էին նորից վերականգնել հին կարգերը: Հայկական կարմիր բանակի զորամասերի, տեղերի պարտիզանական ջոկատների հետ, աշխատավորության կամքով, հակահեղափոխական ուժերի դեմ մարտնչում էին նաև ՌՍՖՍՀ կարմիր բանակի զորամասերը:

Փետրվարյան ավանտյուրան պարտության է մատնվում: Արկածախնդիրների պարագլուխներից ոմանք ճողոպրում են Զանգեզուր, միանում Նժդեհի զորամասերին՝ նպատակ ունենալով «հարձակվել Խորհրդային Հայաստանի վրա», մաքրել «Երևանը մեծամասնականներից» («Խ. Հ.», 1921, № 125): Նժդեհի տիրակալության դեմ ապստամբության դրոշ բարձրացրած Զանգեզուրի աշխատավորները դիմում են կարմիր բանակի զորամասերին՝ իրենց ուսերից թոթափելու ծանր լուծը: Սովետական ռազմիկներն իրենց ինտերնացիոնալ պարտքն են համարում եղբայրական օգնության ձեռք մեկնել Սյունիքի բանվորներին ու գյուղացիներին:

Կովկասյան առաջին կորպուսի շտաբը այդ օրերին հրատարակում է Զանգեզուրի գործողության գաղափարական նպատակը տեղեկագիրը, ուր վերլուծված է դաշնակցականների ու մուսավաթականների կործանարար քաղաքականությունը, որը տեղիք է տալիս ազգամիջյան կռիվների և ավերածությունների: Այնտեղ ընդգծված է այդ վիճակից դուրս գալու ելքը:

...Համաշխարհային դասակարգային պայքարը իր արձագանքը գտավ Զանգեզուրի և Ղարաբաղի լեռներում: Համարյա ամեն մի գյուղում կան չքավորներ, որոնք համակրում են սովետական իշխանությանը և սպասում նրա գալուն: Աշխատավորական հոծ զանգվածները գիտակցում են եվրոպական կապիտալի կեղտոտ ձեռքերով պահպանվող հակահեղափոխության իսկական նպատակը...[1]:

Կարմիր բանակի կովկասյան առաջին կորպուսին (հրամանատար՝ Ա. Տողորսկի, կոմիսար՝ Ի. Սվիրիդով) առաջադրանք է տրվում Ղարաբաղից առաջ շարժվել և, Լաչինն անցնելուց հետո, հարձակման անցնել Գորիսի ուղղությամբ:

Հարձակման նախօրյակին կորպուսի հրամանատարությունը, ճիշտ գնահատելով իրավիճակը, հրապարակում է կարմիր բանակայիններին ուղղված դիմում. ...Պարսկաստանի վրայով Նժդեհը կապված է Անտանտի հետ... Նա խափանել է Զանգեզուրի պղնձաձուլարանները, յուղի, մրգի գործարանները, բրուտագործությունը և անխղճորեն շռայլում է աշխատավորության ունեցվածքը...

...Հառա՜ջ կապիտալիստներից ազատագրելու Ղափանի պղնձաձուլարանները, որոնք խիստ անհրաժեշտ են աշխատավորներին... Զանգեզուրի լեռնաշղթայի վրայով հառա՜ջ գեներալի իշխանությունից ազատագրելու բանվորներին ու գյուղացիներին:

...Կեցցե՜ գյուղացիների, բանվորների և կարմիրբանակայինների դեպուտատների իշխանությունը...[2]:

Այս դիմումը մարտական բուռն խանդավառություն է առաջ բերում զորամասերի անձնակազմի մեջ: Զինվորներն ու հրամանատարները, հաղթահարելով լեռնային դժվարին պայմանները, կիրճերով ու կածաններով, զառիթափերը մագլցելով, առաջ են շարժվում, ձգտում որքան հնարավոր է շուտ ազատագրել Սյունիքը: Կարմիր բանակի զորամասերի հարձակողական գործողություններին օժանդակում էին Զանգեզուրի բանվորներն ու գյուղացիները՝ կոմունիստական բջիջների ղեկավարությամբ: Տողորսկու զորամասերը հուլիսի 2-ին ազատագրում են Գորիսը, չորս օր հետո հասնում Մալդիշ, Տանձատափ, Արծվանիկ գյուղերը, հուլիսի 7-ին մտնում Ղափան: Երբ մարտական գործողությունների շահերը պահանջում են Ա. Տողորսկու անձնական մասնակցությունը, նա աներկյուղ, սառնարյուն հասնում է վաշտերն ու դասակները, ապահովում հաղթանակը հակառակորդի դեմ: Նրա ջերմ հայրենասիրական խոսքերը ոգևորում են կարմիրբանակայիններին՝ սրբությամբ կատարելու իրենց պարտքը աշխատավորների հանդեպ:

Մի փաստաթղթում Տողորսկին գրում է. «...դիմազուրկ արված, ճնշված, քայքայված Զանգեզուրի ազգաբնակչությունը, անիծելով երեկվա օրը և դաշնակցականների տիրապետությունը, այժմ ստեղծում է... խորհրդային իշխանություն և ջերմորեն խնդրում պաշտպանել իրենց դաշնակցականների, մուսավաթականների և այլ հակահեղափոխականների վայրենի կատաղությունից...» (տե՛ս «Խ. Հ.», 1921, № 131):

Զանգեզուրի ազատագրման համար մղված կռիվներում իրեն ենթակա զորագնդերի մարտական գործողությունները հմտորեն վարելու, անձնական քաջություն ցուցաբերելու համար Ա. Տողորսկին պարգևատրվում է ՀՍԽՀ Կարմիր դրոշի շքանշանով: Հայ ժողովուրդն իր սրտում հավերժ է պահում հիշատակն այն ռազմիկների, որոնք իրենց կյանքը զոհաբերեցին Հայաստանի ազատագրման համար մղված մարտերում: Նրանց պայծառ անունները հավիտյան կմնան մեր պատմության մեջ:

Վ. Ի. Լենինը Վեսյեգոնսկի գավառի ղեկավար աշխատողներից մեկի՝ Ա. Վինոգրադովի հետ զրուցելիս, իր հիացմունքն արտահայտելով Մեկ տարի հրացանի ու գութանի հետ գրքի մասին, հարցնում է.

— Իսկ որտե՞ղ է այժմ Ա. Տողորսկին:

— Անդրկովկասյան ռազմաճակատում,— պատասխանում է Վինոգրադովը:

— Ինձանից ողջույն հաղորդեցեք նրան,— ասում է Վլադիմիր Իլյիչը:

Անդրկովկասում քաղաքացիական կռիվներն ավարտվելուց հետո Ա. Տողորսկին հրամանատարական պատասխանատու պաշտոն է վա-

[1] Տե՛ս ՄԼԻ Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 4005, ց. 1, գ. 58ա, թ. 6:

[2] Տե՛ս նույն տեղը, թ. 1—2:

րում կովկասյան առանձին բանակի ռազմական խորհրդում: Նա Ս. Կիրովի, Ս. Օրջոնիկիձեի, Ալ. Մյասնիկյանի հետ իր բոլոր ջանքերն ու եռանդը գործադրում է՝ երկրամասում ստեղծված ազգային զորամիավորումներում ռազմական ու քաղաքական ուսուցումն օրինակելիորեն կազմակերպելու, անձնակազմի մարտական ոգին բարձր պահելու համար:

Սովետական Անդրկովկասի աշխատավորները բարձր են գնահատել անձնվեր ու քաջ զորապետի մատուցած ծառայությունները: Նա պարգևատրվել է ԱՍԽՀ և ՀՍԽՀ Կարմիր դրոշի շքանշաններով: Սովետների անդրկովկասյան առաջին համագումարը (1922 թ. դեկտեմբերի 13-ին) նրան ընտրել է Անդրկենտգործկոմի անդամ և սովետների համամիութենական առաջին համագումարի պատգամավոր: Ադրբեջանի կուսակցական կազմակերպությունը նրան ընտրել է ԱԿ(բ)Կ Կենտկոմի անդամ: Այժմ Բաքվում փողոց կա Ա. Տոդորսկու անունով:

***

Քսաներկու-քսաներեք թվականներին Միջին Ասիայի առանձին վայրերում բեկերի ու մոլլաների գլխավորած բասմաչական բանդաները կատաղի պայքարում են սովետների իշխանության դեմ: Այդ ավանտյուրայի պարագլուխներից մեկը պանթուրքիզմի մոլի ջատագով, հայ ժողովրդի դահիճ Էնվեր փաշան էր: Վերադաս հրամանատարությունը Անդրկովկասից Թուրքեստանի ռազմաճակատ (Միջին Ասիա) է փոխադրում Ա. Տոդորսկուն և նշանակում զորքերի Ֆերգանայի խմբավորման հրամանատար:

Սովետական Միության մարշալ Վ. Սոկոլովսկին, անդրադառնալով Ա. Տոդորսկու այդ ժամանակաշրջանի գործունեությանը, գրում է.

...Նա լավ գիտեր ռազմական գործը, ուներ պատշաճ մարտական հմտություն և, որ շատ կարևոր է, ուշադիր ու կուլտուրական էր վերաբերվում շրջապատի նկատմամբ: Ալեքսանդր Իվանովիչի այդ հատկությունները ինձ հայտնի էին դեռևս Անդրկովկասում համատեղ ծառայելիս... Ս. Ս. Կամենևից[1] ստանալով համապատասխան ցուցումներ, Ա. Տոդորսկին սրտով գործի կպավ: Նա սերտ կապեր հաստատեց կուսակցության մարզկոմի և աշխատավորների դեպուտատների մարզգործկոմի հետ, կարողացավ համախմբել զորքերի ու բնակչության ուժերը և պայքարի դուրս բերել բասմաչների դեմ: Դրա շնորհիվ 1923—1924 թթ. ձմռանը հակահեղափոխական ուժերը հիմնականում ջախջախվեցին... (տե՛ս «Военно-исторический журнал», 1964, № 9):

Կարմիր զորագնդերի հուժկու հարվածներից չկարողացավ իր գլուխն ազատել նաև Էնվեր փաշան: Նա ոչնչացվեց սևհարյուրյակային բասմաչների հետ միասին: Միջին Ասիայում դավադիրների դեմ մղված մարտերը հաջողությամբ ավարտելուց հետո Ա. Տոդորսկին նշանակվում է Թուրքեստանյան ռազմաճակատի հրամանատարի օգնական:

***

Քաղաքացիական կռիվների տարիներին Տոդորսկին գործել է այնպիսի բանակներում ու ռազմաճակատներում, որոնց հրամանատարները եղել են տաղանդավոր զորավարներ, կարմիր բանակի ականավոր կազմակերպիչներ Կ. Վորոշիլովը, Ս. Կամենևը, Ա. Տուխաչևսկին, Ա. Եգորովը: Տոդորսկին նրանցից ընօրինակեց ճակատամարտ վարելու արվեստը՝ ճիշտ գնահատել ժամանակի և տեղանքի իրավիճակը, հակառակորդ ուժերի քանակական ու որակական հարաբերությունը, որոշել գլխավոր հարվածի ուղղությունը և, մարտի մեջ մտցնելով արագաշարժ ուժեր, ճեղքել թշնամու պաշտպանությունը, մարտերը զարգացնել հակառակորդի թիկունքում. սրանք են հաղթանակի գրավականը:

Քաղաքացիական պատերազմն ավարտվելուց հետո Ա. Տոդորսկին իր ճակատագիրն ընդմիշտ կապում է կարմիր բանակի հետ՝ ձգտելով կատարելագործել ռազմական գիտելիքները, տիրապետել ժամանակակից ռազմական արվեստին: Իր իղձն իրականացնելու նպատակով նա գնում է ԲԳԿԲ ռազմական ակադեմիա՝ սովորելու: Այն ավարտելուց հետո Ա. Տոդորսկին նշանակվում է 5-րդ կորպուսի հրամանատար, ապա՝ Բելոռուսական ռազմական օկրուգի հրամանատարի օգնական:

Հավատարիմ լենինյան սկզբունքներին՝ Ա. Տոդորսկին իր ողջ եռանդն ու ջանքերը գործադրում է՝ իրականացնելու կոմունիստական կուսակցության որոշումները ռազմական շինարարության, սոցիալիստական հայրենիքի պաշտպանության ամրապնդման մասին: Զուգորդելով քաղաքացիական կռիվներում ձեռք բերած փորձն ու ռազմական ակադեմիայում ստացած գիտելիքները՝ նա արտասովոր կազմակերպչական ունակություններ և հրամանատարական հմտություն է դրսևորում զորամասերի վարժեցման, անձնակազմի մարտական ու քաղաքական պատրաստության և գաղափարական դաստիարակության գործում: Կարճ

[1] Կուսակցության Կենտկոմի հանձնարարությամբ Ս. Ս. Կամենևը այդ ժամանակ գտնվում էր Թուրքեստանի ռազմաճակատում:



ժամանակամիջոցում Ա. Տոդորսկին վայելում է ոչ միայն կարմիրբանակայինների, հրամանատարների ու քաղաշխատողների, այլև Բելոռուսիայի կոմունիստների, ողջ աշխատավորների սերն ու համակրանքը: Նա ընտրվում է ԲԿ(բ)Կ Կենտկոմի կազմում:

Ա. Տոդորսկու արժանիքները նկատի առնելով՝ կուսակցությունը նրան փոխադրում է Մոսկվա, ԽՍՀՄ պաշտպանության ժողովրդական կոմիսարիատի ապարատում պատասխանատու աշխատանքի: Սկզբում նշանակվում է կարմիր բանակի ռազմական ուսումնական հաստատությունների պետ, ապա՝ ԲԳԿԲ գլխավոր վարչության պետի տեղակալ: Ալեքսանդր Իվանովիչը երկու և կես տարի եղել է Ն. Ե. Ժուկովսկու անվան ռազմա-օդային ակադեմիայի պետ, իսկ հետո գլխավորել է կարմիր բանակի բարձրագույն ռազմական հաստատությունների վարչությունը, եղել ԽՍՀՄ պաշտպանության ժողկոմատին կից ռազմական խորհրդի անդամ: 1935 թ. Ա. Տոդորսկուն շնորհվել է կորպուսի հրամանատարի, հետագայում՝ գեներալ-լեյտենանտի կոչում: Խաղաղ շինարարության տարիներին սովետական զինված ուժերի ամրապնդմանը մատուցած ծառայությունների համար նա պարգևատրվել է Կարմիր աստղի շքանշանով:

Պաշտոնաթող լինելուց հետո մինչև իր սխրանքներով լի կյանքի վերջը (1965 թ.) Ա. Տոդորսկին մեծ եռանդով զբաղվում է գրականությամբ և հրապարակախոսությամբ, ակտիվորեն մասնակցում սովետական մարդկանց, մասնավորապես երիտասարդությանը ռազմահայրենասիրական ոգով դաստիարակելու գործին: Նա գրել է՝ Մարշալ Տուխաչևսկի և Սերգեյ Կամենև ակնարկաշարը: Այդ ակնարկներում Տոդորսկին նկարագրում է, թե ինչպես ցարական բանակի այդ սպաները պրոլետարական հեղափոխության առաջին իսկ օրվանից անցան բոլշևիկների կողմը և իրենց նվիրեցին աշխատավորներին կեղեքիչների լծից ազատագրելու վեհ գործին: Նա համոզիչ օրինակներով ցույց է տալիս, որ օտարերկրյա ինտերվենցիայի ու քաղաքացիական պատերազմի ծանր տարիներին, երբ երիտասարդ Սովետական Ռուսաստանն առնված էր կրակե օղակի մեջ, զորավարներ Ա. Տուխաչևսկին ու Ս. Կամենևը, ղեկավարվելով ռազմական արվեստի մասին լենինյան դրույթներով, ծուղակի մեջ էին գցում հակառակորդին և նրան ծնկի բերում: Նա ըստ արժանվույն գնահատել է այդ ականավոր զինվորական գործիչների դերը կարմիր բանակի ստեղծման, իսկ հետագայում ամրապնդման գործում:

Ա. Տոդորսկու գրչին է պատկանում Կարմիր բանակը լեռներում. գործողությունները Դաղստանում աշխատությունը, որի առաջաբանը գրել է Ս. Ս. Կամենևը: Վերջինս նշում է. Ա. Տոդորսկին ճշմարտացիորեն շարադրել է քաղաքացիական պատերազմի որոշակի իրադարձությունները: Ընթերցողը նրա աշխատությունում չի գտնում պարծենկոտության հետքեր: Կռվի պատմությունը շարադրված է ժամանակագրական կարգով, ինչպես այն տեղի է ունեցել իրականում: Ընթերցողը, առավելապես պատմաբանը, գրքում կտեսնի այն իրավիճակը, որում գործել է կարմիր բանակը Դաղստանում:

Մեր երկրի գրականագետներն ու պատմաբանները բարձր են գնահատում Ա. Տոդորսկու գրական ժառանգությունը: Սովետական նշանավոր գրող Բ. Պոլևոյը նշում է, որ նրա Մեկ տարի հրացանի ու գութանի հետ գործը «հանդիսանում է սովետական դարաշրջանի առավել հետաքրքրական ակնարկներից մեկը»: Բանասեր Զ. Մինցը գրում է, որ «Ա. Տոդորսկին սովետական ակնարկի նախահայրերից մեկն է»:

Տոդորսկին հաճախակի հանդես է եկել պարբերական մամուլում, գրել ռազմահայրենասիրական հոդվածներ: Նա զեկուցումներ է տվել ու դասախոսություններ կարդացել բանվորների, կոլտնտեսականների ու սովետական բանակի ռազմիկների համար՝ քաղաքացիական պատերազմի լեգենդար հերոսների, մեր հայրենիքի ազատության ու անկախության համար արիաբար մարտնչողների մասին: Այսպիսին է եղել տաղանդավոր զորապետ, անձնվեր կոմունիստ, ջերմ հայրենասեր, գրող Ալեքսանդր Տոդորսկին:

Ս. Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ
ՀՍՍՀ վաստակավոր ժուռնալիստ

որոշիչ տարվա, Կուսակցության ղեկավարությամբ, Ո՛չ մի նահանջ նվաճած բնագծից, Հնգամյակի շնչով խիզախում են շրջանի աշխատավորները, 1974 թվականը՝ աշխատանքային մեծագործությունների տարի և այլ խորագրերի ներքո զետեղված նյութերն ընթերցողին են ներկայացնում գյուղական առանձին կոլեկտիվների արտադրական հաջողությունները, որոնք ձեռք են բերվել տեխնիկայի, եղած ռեզերվների ու միջոցների առավել արդյունավետ օգտագործմամբ։ Միաժամանակ ընդգծվում է, որ սոցմրցության մեջ հիմնականը գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության ավելացումն է, անասնապահական մթերքների արտադրության հետագա աճը, պետությանը գյուղատնտեսական մթերքների վաճառքի պլանների կատարումն ու գերակատարումը, արտադրության բոլոր ցուցանիշների բարելավումը։

«Զանգեզուրը» ստուգայցերի, առանձին տնտեսությունների գործունեության վերլուծությամբ ցույց է տալիս, որ նոր թափով է ծավալվել գյուղատնտեսության աշխատողների մրցությունը՝ հնգամյակի որոշիչ տարվա պարտավորությունների կատարման նպատակով։ Այդ հարցերի լուսաբանմանն են նվիրված Կիսամյակի պլանը երեք ամսում (№ 38), Կթվոր-անասնապահները մրցության դրոշակակիրներ (№ 41), Նրանք լի են վճռականությամբ (№ 14), Պայքարը կպսակվի հաջողությամբ (№ 46), Մեր հարվածային աշխատանքը՝ հնգամյակին (№ 31) և այլ վերնագրերով նյութերը, որոնք ներկայացնում են անասնապահների աշխատանքը։ Ընթերցողին հայտնի է դառնում, որ այժմ շրջանի ավելի քան 50 կթվորներ յուրաքանչյուր կովից ստանում են 2.000 կգ կաթ, իսկ Դեզիկ Բաղդագուլյանը («Ավանգարդ» սովխոզ), Լենինի շքանշանակիր Արամայիս Հայրյանը (Խնձորեսկ) անցյալ տարի կովերի միջին կաթնատվությունը հասցրել են 3.020—3.045 կգ-ի։

Լրագիրը հայտնում է, որ հնգամյակի երրորդ՝ վճռական տարին լավ են եզրափակել նաև Քարահունջի «Ֆեդերացիա», Խնածախի Դիմիտրովի անվան, Կոռնիձորի «Զանգեզուր», Գորիսի «Մայիսմեկյան» և Սվարանցի տնտեսությունների կթվոր-անասնապահները։ Մտնելով համամիութենական սոցմրցության մեջ, նրանք պարտավորվել են նվազագույն ծախսումներով թողարկել ավելի շատ, ավելի որակյալ արտադրանք։ Ահա նրանցից մեկը՝ Հայրենական պատերազմի մասնակից, 60-ամյա Ավիս Սահակյանը, որ մոտ 30 տարի իր ուժերը նվիրել է Սվարանցի սովխոզի անասնապահության պարգացմանը և 1973 թ. արժանացել «Աշխատանքային արիության համար» մեդալի։ Այժմ էլ, մտնելով համամիութենական սոցիալիստական մրցության մեջ, նա որոշել է ապահովել մսուրային շրջանի անկորուստ անցկացումը, հայրենիքին տալ ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ (Շ. Միքայելյան, Երիտասարդական ավյունով, № 22)։

Լրագիրը հաղորդում է, որ Սվարանցի սովխոզը շրջանում առաջինն է զեկուցել հնգամյակի չորրորդ տարվա առաջին եռամսյակում պետությանը միս հանձնելու առաջադրանքները գերակատարելու մասին։ Եռամսյա պլանով նախատեսված 60-ի դիմաց տնտեսությունը հանձնել է 70 ցենտներ միջակ և միջակից բարձր գիրության միս, կամ պլանը կատարել 117 տոկոսով։

Սոցպարտավորությունների կատարման գործում էական դեր ունեն առաջավոր փորձի տարածումն ու արմատավորումը։ Առաջավոր փորձը դարձնել բոլորի սեփականությունը (№ 20) ընդարձակ հոդվածում ներկայացվում է Գորիսի «Ավանգարդ» սովխոզի կուսբյուրոյի (քարտուղար՝ Վ. Հարությունյան) խրախուսելի աշխատանքը, որի նախաձեռնությամբ ոչ միայն մասսայականացվել ու արմատավորվել է առաջավոր կթվորների փորձը, այլև ծավալվել երկուհազարականների շարժումը։ Արդյունքը եղել է այն, որ 1973 թ. սովխոզում կովերի միջին կաթնատվությունը հասել է 2.118 կգ, իսկ առանձին կթվորներ յուրաքանչյուր կովից ստացել են մինչև 3.073 կգ կաթ։

Խրախուսելի է, որ «Զանգեզուր» լրագիրը հետևողականորեն լուսաբանում է, թե յուրաքանչյուր կոլեկտիվ, անհատ ինչպես է իրագործում իր խոստումը։ «Միկրոշարժիչ» գործարանի հավաքման արտադրամասի բանվորուհի Սվետիկ Թանգյանն իր թղթակցության մեջ (№ 31) գրում է, որ մտնելով համամիութենական սոցիալիստական մրցության մեջ՝ պարտավորվում է գործով պատասխանել կուսակցությանը, սովետական ժողովրդին ուղղած ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի դիմումին և որոշիչ տարվա պլանների կատարման մասին զեկուցել Հայաստանում սովետական կարգերի հաստատման 54-րդ տարեդարձի օրը։

Գործի նկատմամբ ունեցած պատասխանատվությամբ աչքի է ընկնում Գորիսի «Միկրոշարժիչ» գործարանի փաթաթման արտադրամասի բանվորուհի Սեանուհի Առաքելյանը։ Նրա մասին է պատմում Էդ. Զոհրաբյանն իր Սեանուհու նվաճած բարձունքը (№ 59) ակնարկում։ Այժմ նա աշխատում է 1976 թ. առաջին եռամսյակի հաշվին։ «Մինչև ավարտվի այս հնգամյակը, ես կնվաճեմ նաև հաջորդ հնգամյակի երեք տարվա բնագծերը»,— ասում է Սեանուհին։

Լրագիրն անդրադարձել է նաև հացահատիկի արտադրության մարզում ծավալված սոցմրցությանը։ Այսպես, անցած երեք տարվա պլանը շրջանում գերակատարվել է մոտ 23 հազար ցենտներով։ Առավել բարձր արդյունքների են հասել Խնձորեսկի, Քարահունջի, Վերիշենի, Շինուհայրի և «Ավանգարդ» տնտեսությունները։

Խնձորեսկի «Լեն-ուղի» կոլտնտեսության աշխատավորները որոշել են հնգամյակի չորրորդ՝ որոշիչ տարում հացահատիկային ցանքերի միջին բերքատվությունը, պլանով նախատեսված 15-ի դիմաց, հասցնել 20 ցենտների։

Նշելով գյուղատնտեսական մթերքների արտադրության ասպարեզում կատարված դրական աշխատանքները, լրագիրը միաժամանակ անդրադառնում է նկատվող թերություններին։ Այսպես, առանձին տնտեսություններ (Վաղատուրի, Սվարանցի, Քարաշենի, Աղբուլաղի, Կուրթկուլաղի) ո՛չ միայն չեն ապահովել շրջանի միջին արդյունքը, այլ տարիներ շարունակ հեկտարից ստացել են 2—7 ցենտներ հացահատիկի բերք։ Նշելով թույլ տված սխալների վերացման ուղիները, լրագիրն անդրադառնում է նաև կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատավորների՝ որոշիչ տարում ստանձնած պարտավորություններին՝ գյուղատնտեսության վերելքի ապահովման, հատկապես անասնապահական ու հողագործական մթերքների արտադրության ու մթերումների այս տարվա բնագծերի նվաճման նպատակով։

Տպագրված նյութերից երևում է, որ Գորիս քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունները հնգամյակի որոշիչ տարվա առաջին եռամսյակում իրացրել են 3 մլն 782 հազար ռուբլու արտադրանք՝ պետական պլանային առաջադրանքները կատարելով 105,1 տոկոսով։

Նոր բնագծեր են նվաճել շինարարները։ Նրանց մրցության նշանաբանն է՝ «Կառուցել արագ, որակով, խնայողաբար, թույլ չտալով շահագործման ժամկետների խախտում»։ Այս տարի մեծ եռանդով են աշխատել նաև ճանապարհաշինարարները։ Անցյալ՝ 1973 թ. երկրորդ եռամսյակում բարեկարգման աշխատանքների հաջող կազմակերպման և պլանների ու սոցպարտավորությունների գերակատարման համար մի շարք քաղաքների, շրջանների ու ավանների հետ ծավալած մրցության մեջ Գորիս քաղաքը հաղթող է ճանաչվել և արժանացել ՀՍՍՀ Մինիստրների սովետի և արհմիության հանրապետական խորհրդի երկրորդ կարգի մրցանակին։ Այժմ կոլեկտիվը համակված է ոչ միայն դրոշն իր ձեռքում ամուր պահելու վճռականությամբ, այլև 1974 թ. համամիութենական սոցմրցությունում ավելի բարձր ցուցանիշների հասնելու բուռն ցանկությամբ։ Առաջին եռամսյակի համար նախատեսված 655 հազար ռուբլու շինմոնտաժային աշխատանքի փոխարեն կատարվել է 736 հազար ռուբլու աշխատանք, որը պլանի 112,4 տոկոսն է կազմում։

«Զանգեզուրն» անդրադառնում է նաև 1974 թ. հանդիպական պլաններին, որպիսիք ընդունել են երկրի հազարավոր ձեռնարկություններ։ Նախաձեռնողը եղել են մոսկվացիները, որոնց արձագանքել են բազմաթիվ արտադրական կոլեկտիվներ, այդ թվում՝ Գորիսի շրջանի աշխատավորները։ Այդ մրցության ընթացքը ևս սիստեմատիկաբար արտացոլվում է լրագրի էջերում։

Գորիսի ավտոնորոգման գործարանի բանվործառայողները, ինժեներա-տեխնիկական աշխատողները մրցության են հրավիրել Կամո քաղաքի ավտոնորոգման գործարանի կոլեկտիվին և կոչ են արել գործարար պայքար ծավալելու հնգամյակի որոշիչ տարվա պետական առաջադրանքներն անթերի ու ժամկետից շուտ կատարելու համար։ Կոռնիձորի Կիրովի անվան կոլտնտեսության բրիգադավար Գ. Սիմոնյանը Կպատասխանենք հայրենանվեր աշխատանքով (№ 27) հոդվածում գրում է, որ իրենց կոլեկտիվը, արձագանքելով Ղազախստանի, Բելոռուսիայի և Ռոստովի մարզի մեխանիզատորների հայրենասիրական նախաձեռնությանը, պարտավորվել է 1974 թ. դարձնել բարձր բերքի ստացման տարի։ «Որոշել ենք արդյունավետ օգտագործել գյուղտեխնիկան, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 10—15 տոկոսով, խսպառ վերացնել պարապուրդները, տնտեսել 700 ռուբլու պահեստամասեր, վառելիք, քսայուղեր»։

Լրագիրը նշում է նաև, որ սոցիալիստական պարտավորությունների և պլանային առաջադրանքների կատարման մարզում կան զգալի թերություններ։ Առանձին տնտեսություններ երբեմն ձևական մոտեցում են հանդես բերում այդ կարևոր հարցին, ժամանակին չեն ամփոփում պարտավորությունների կատարման արդյունքները։

Որոշիչը դարձնել վերելքի տարի (№ 54) հոդվածում կարդում ենք աշխատավորների դեպուտատների 14-րդ գումարման Գորիսի շրջանային սովետի VII սեսիայի մասին։ Սեսիան նշեց, որ Խողնավարի, Քարահունջի, Շինուհայրի, Հարժիսի, Տաթևի, Սվարանցի, Վաղատուրի, Վերիշենի տնտեսությունները ոչ միայն չեն ապահովում խոտհարքներն ընդարձակելու մասին ՀԿԿ շրջկոմի բյուրոյի և շրջսովետի գործկոմի որոշման կատարումը, այլև սիստեմատիկաբար թերակատարում են կորնգանի ենթացանքի պլանները, խիստ ցածր է բնական խոտհարքների բերքատվությունը։ Անդրադառնալով թերություններին, լրագիրը միաժամանակ ընդգծում է, որ վերոհիշյալ տնտեսությունների ետ մնալու պատճառներից մեկն էլ կոլվարչությունների ներողամտությունն է տնտեսությունները չգլխավորող, գործը «մի կերպ յոլա տանող» ղեկավարների նկատմամբ։

## ՄԵՐ ՆՅՈՒԹԵՐԻ ՀԵՏՔԵՐՈՎ

Մեր ամսագրի այս տարվա առաջին համարում հրապարակվել է «Կուսակցական շինարարություն» ձեռնարկը հայերեն գրախոսականը, որին կցված Խմբագրության կողմից-ը «Հայաստան» հրատարակչության, ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի ուշադրությունն էր հրավիրում թարգմանված գրքի գրեթե բոլոր էջերում աչքի զարնող լեզվական սխալների, աղավաղումների, անհաջող բառերի, արտահայտությունների, անճշտությունների վրա:

Քննարկելով սույն գրախոսականը, ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեն որոշել է.

1. Միանգամայն իրավացի ու ճիշտ համարել «Լենինյան ուղիով» ամսագրի քննադատությունը:

2. Հանձնարարել «Հայաստան» հրատարակչությանը՝ լուրջ ուշադրություն նվիրել քաղաքական գրականության թարգմանության որակին և լեզվական կուլտուրային, կատարել թարգմանիչների ճիշտ ընտրություն, այդ գործում ներգրավել հմուտ թարգմանիչների, այսուհետև դրսի խմբագրման ամեն մի գործ պարտադիր կերպով տալ հրատարակչության խմբագրման:

3. Հասարակական-քաղաքական գրականության խմբագրության ուշադրությունը հրավիրել Կուսակցական շինարարություն ձեռնարկը անորակ թարգմանությամբ ու խմբագրմամբ լույս ընծայելու փաստի վրա:

4. Սույն որոշումը քննարկել հրատարակչությունում և պատասխանատվության ենթարկել մեղավորներին:



Адрес редакции: 375033 Ереван-33, Барекамутян, 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

ՎՖ 05953 Պատվեր 1308 Թղթի չափսը $70 \times 108^1/_{16}$: Տիրաժ 13.500 Գինը 20 կոպ.

Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 12/VII-1974 թ.

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան: Ավ. Իսահակյան փող. № 28:

## СОДЕРЖАНИЕ



### СТАТЬИ



### ПАРТИЙНАЯ ЖИЗНЬ



### ВОПРОСЫ ЭКОНОМИКИ



### ЗНАМЕНАТЕЛЬНЫЕ ДАТЫ



### ВЕТЕРАНЫ РЕВОЛЮЦИИ



### ОБЗОР ПЕЧАТИ

Գինը՝ 20 կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## «ՎԵՐԱԴԱՐՁՎՈՂ ԾԱԾԿ»

*Կիսավագոններով փոխադրվող բեռները չխոնավանալու, ինչպես և չփչանալու համար, սովորաբար պատում են տախտակյա, տոլի կամ բիտումային թղթե ծածկով, որը, սակայն, բավականին թանկ է և գործածվում է միայն մեկ անգամ։ Մոսկվայի մարզի Ստուպինո քաղաքի մետալուրգիական կոմբինատում օգտագործել են ունիվերսալ «վերադարձվող ծածկ»։ Կիսավագոնները վերևից ծածկվում են մետաղյա ծալքավորված թիթեղներով, որոնք բոլտերով միացվում են վագոնների կողերին։ Բեռներն ստացողներն այդպիսի ծածկերը վերադարձնում են, որովհետև դրա երաշխիքային գինը որոշ չափով գերազանցում է բուն արժեքից։ Այդ նորույթի կիրառմամբ յուրաքանչյուր կիսավագոնում կխնայվի մեկուկես խորանարդ մետր փայտանյութ կամ 48* քմ *բիտումային թուղթ, ինչպես և՝* 5 կգ *մեխ։*

## ՀԱԿԱԲԱԿՏԵՐԻՈԼՈԳԻԱԿԱՆ ԳՈՒԼՊԱՆԵՐ

*Լոձի (Լեհաստան) տեքստիլ ինստիտուտի մի խումբ գիտնականներ մշակել են հակաբակտերիոլոգիական և հակասնկային գուլպաների պատրաստման տեխնոլոգիա։ Դրանք հիմնականում նախատեսված են կանանց՝ տեքստիլագործների, առևտրի աշխատողների և նույնիսկ տնային տնտեսուհիների, ինչպես և ընդհանրապես կանգնած աշխատանք կատարողների համար։ Այդ գուլպաների բարձրորակությունն ու պիտանիությունը հաստատել են Լոձի բժշկական ակադեմիայի միկրոբիոլոգիայի բաժնի, ինչպես և հիգիենայի և էպիդեմիոլոգիայի ռազմական ինստիտուտի հետազոտությունները։*

## ԷԼԵԿՏՐՈՆԻԿԱՆ ՎԵՐԱՀՍԿՈՒՄ Է ՋՐԻ ՄԱՔՐՈՒԹՅՈՒՆԸ

*Չափումների ու էլեկտրոնային ավտոմատիկայի՝ Վրոցլավի հետազոտական կենտրոնի մի խումբ ինժեներներ նախագծել և պատրաստել են ջրի մաքրությունն ստուգող էլեկտրոնային սարք՝ «Ջրաչափ—5»-ը, որը մշտապես վերահսկելու է ջրի մաքրությունը գետերում, լճերում և արդյունաբերական ջրհոսքերում։ Մեքենան հատուկ ժապավենի վրա գրանցում է ջրի աղիությունը, պղտորման աստիճանը, թթվության ինտենսիվությունը և ջրում եղած ֆենոլի պարունակությունը։ «Ջրաչափ—5»-ը կարող է բանել նաև ինֆորմացիայի հաղորդման հեռուստաչափային սիստեմի հետ միասին։*

*Միջավայրի պահպանման ինստիտուտի բարձր գնահատականին արժանացած այս գյուտը կօգտագործեն արդյունաբերական ձեռնարկությունները, ինչպես և խմելու ջրի որակն ու մաքրությունն ստուգող քաղաքային սանիտարական կազմակերպությունները։*

## ԹՂԹԵ ԽՈՂՈՎԱԿՆԵՐ

*Քիմիական գործարաններում սինթետիկ ձյութով ներծծված թղթից պատրաստված խողովակները կարող են հաջողությամբ փոխարինել չժանգոտվող պողպատից պատրաստված խողովակներին։*

*Նոր արտադրանքը մետաղյինից մի քանի անգամ թեթև է, էժան և երկարակյաց։ Այն չի ենթարկվում թթուների, ալկալիների, յուղերի ու լուծիչների ազդեցությանը։ Այդ խողովակները հարմար են փոխելու և նորոգման համար, քանի որ դրանք ոչ թե զոդվում, այլ սոսնձվում են. հանգամանք, որ շատ կարևոր է պայթուցիկ գազեր օգտագործող արտադրության համար։*

*Անգլիայում թողարկվել են թղթե խողովակների փորձանմուշները։*